վայ տայ. և յորմէ զարհու-
րին՝ երանէ: Վասն որոյ
ասէ,
20 Երանի աղքատաց է
թէ ըստ այ իցէ. զի փոքր
ինչ ժամանակս տաժանեալ՝
անբաւ յաւիտեանս առ այ
թագաւորեսցեն: Եւ վայ
մեծատանց, զի վս դուն
ինչ հանգստեան սնոտի
կենցաղոյս և խաբէութեց
որով ըմբռնեցանն, զյա-
ւիտենականն գանձեն ան-
ձանց զբարկութիւնն:
Որոց զօրինակն՝ իղձա-
րէ և 'ի մեծատանէն ուս-
ցիս: Քանզի զինչ այլ
քան զայս յիմարութիւն
իցէ զանասուն 'ի մեր-
ձակայն եւեթ հայիլ. և որք
զզգայութիւն հեշտացու-
ցանեն՝ ընտրել. և որ յետ
այնորիկ առաջի կայ վիճն
կորստեան ոչ տեսանել:
Ստուգապէս վայ անձանց
նց, որք զյաւիտենականն
և զանասելի բարեկենդա-
նութիւնն ընդ ապակա-
նացուիս այսմիկ փոխա-
նակեն:

21 Երանելիս համարի ըզ
քաղցեալսն և զծարաւիսն.
զի անարգեցին զկերակուր
հեշտացուցիչ որովայնի որ
զդառնութի էհեղ 'ի բնու-
թիւնս. և տակաւին ևս
նուաղ քարշին բազումք
յախտս բազմապատիկս:
Վն որոյ ասէ,
25 Վայ ձեզ որ յագ-
եալ էք այժմ. զի քաղ-
ցիցիք.
Յիրաւի տայ վայ նոցա.
զի հարկաւոր պէտք ըլ-
ցուցիչ բնութես 'ի նոցանէ
ոչ բարձաւ, և վս աւե-
լորդ շռայլութե և արբե-
ցութե՝ թշնամի քի արա-
րին զանձինս իւրեանց:
Որոց ասէ առաքեալն,
լալով ասեմ զթշնամեաց
խաչին քի. որոց կատարածն
կորուստ է. որոց այ որո-
վայնն իւրեանց է և փառք
ամօթն: Ո 'ի խաչն քի,
զնեղութիս և զչարչարանս
ուսուցանէ. և որք որո-
վայնի և հեշտութե շրջին՝
թշնամի առնեն զանձինս
խաչին քի:

21 Երանի՜ և զայնոսիկ որ
՚ի սուգ իցեն և լան զպան
ցանս՝ որով կորուսին ըղ
փառս դրախտին։
Երանելիք են, զի ունին
արտասուօք ստանալ զնա․
և սգով և տրտմութե
դարձեալ ժառանգել
զնա։
25 Վա՜յ ձեզ որ ծիծա
ղիք դուք այժմ, զի սգայ
ցէք և լայցէք։
Երգարև վա՜յ յիմարուե
նոցա՝ որոց կորուստն
առաջի՛ կայ, և անմտութե
ծիծաղին։ զի չարչարանքն
քո վն նց վայրապար եղև
և մահն նր զնա ոչ փրկեաց։
Որդ զայս օրինակ պար
սաւանաց ծաղու՝ յամ
ուստեք յածայնոց բանից
խրատիմք։
22 Երանի՜ և ըղ հալա
ծեալսն վն անուան նր․
և որ հայհոյիցեն և նախա
տինս կրիցեն․ և որ բանս
անբարիս լսիցեն․ և սուտ
լինիցին ատացեալքն և վն
անուան տն, մի՛ վշտանալ
և մի՛ տրտմիլ․ այլ ցնծալ

Գ՛ր Զ

և ուրախ լինիլ վն մեծի
վարձուցն հատուցման զոր
ընդունելոց են յորժմ այս
վճարիցի։ Թեթևացու
ցանէ՛ զվշտին ծանրութի
մարգարէիցն անուամբ․
քանզի և նոքա զնմ վիշտս
կրեցին և տարան համբե
րութե․ և աչօ դադարեալ
են տրտմականքն և ուրա
խութին անսահման կայ
յաւիտեան։
26 Վա՜յ ձեզ ուէ յորժմ
բարի ասիցեն զձէնջ ամ
մարդիկ․ զի այդպէս առ
նէին սուտ մարգարէիցն
հարքն նց։
Որք ուղիղ ըստ այ ու
նիցին զվարս բարեպաշ
տութեան, նոցա ամ ոք
չէ ճար թէ բարի ասիցէ․
քանզի չարք յանդիմանե
՚ի բարի արանց՝ բազում
ինչ վն նց չարախօսեն։
Զի ըստ որում բարիքն
՚ի բարեացն բարեգանին,
ըստ նմին և ՚ի չարացն պար
սաւեալ լինին։ Զի ա
ճաւիկ ամենակատար բա
րին յա՛ առաւելագոյն քան

ձեզ զա

զամենայն ոք նախատինս և
պարսաւանս կրեաց յամ
բարշտաց անտի ։ Իսկ որ
ամենեցուն հաճոյանալ
սիրեն զի յամենեցունց
բարեբանեսցին՝ կեղծա
ւորք են և կախարդք։
Որոց՝ վասն ածային իրա
ւանցն չէ ինչ փոյթ ․ զի
ոչ ես ցաւ է նց ․ այլ ան
ձանց են ծառայք և ոչ այ ․
և զանձանց խնդրեն և ոչ
զայ քի։ Վորոյ յիրաւի
տայ նց վայ յորժամ ամ
ոք բարի ասասցէ․ քանզի
նոքա են որ սիրեցին ըզ
փառս մարդկան առաւել
քան զփառսն այ ։
Արդ այսպ ընդդէմ վա
րի բնութեն կենցաղոյս
բերմանն, և՚ի հակառակացն
կազմէ ուղղել զամ։
Այ սկիզբն առնէ զկա
տարեալ բարիսն սերմա
նել՚ի լսօղսն որով ամ ար
մատք չարին խլեալ կո
րընչին ։
27 Եւ զինչ քան զայս
առաքինութիւն կատարե
լագոյն, մինչ զի և զթշնա
միս սիրել և բարերար ա
տելեացն լինել ․ և որք անի
ծանեն՝ օրհնութբ վճարել։
և յորոց նեղութ և չարչա
րանս կրեցաք՝ աղօթս առ
նել զի կեցցեն և մի՛ կո
րիցեն։
29 Դարձեալ առ այս՝ զի
և որոց ապտակեն՝ ոչ
զայրանալ ․ այլ հեզութբ
զմիւսն առաջի ունել զի
յագեսցի լցեալն չարու
թբ․ մանաւանդ թէ զըղ
ջասցի։ Եւ որք մերկենն՝
կրկին տալ՚ի ձեռս նոցա,
զի առցեն և երկիցեն ։
Եւ խնդրողին՝ սիրով և
առատ հարկաւորութբ հա
տուցանել։ Եւ որ բռնա
նայ հանել, մի՛ հակառակ
պահանջել։ Եւ չափով
յօժարութեն որով զամե
նեսեան անձին հայցէ ու
նիլ բանիւ և գործով, նո
վին կամօք յանձնէ՝ ամցն
՚ի ներքս բերել։
32 Խօսէ առ այս զբնա
կանաբարն․ զի մի՛ ոք վըս
տահասցի այնպիսի ունիլ
ինչ․ զի մեղաւորաց չափէ

և ոչ արդարոց. զի և նոքա
յայսպիսեաց աստի անբաժ
ոչ են. այլ ունին յօժարու
թեամբ հատուցանել բա
րեկամի և սիրելւոյ և փո
խատուի։ Իսկ որք թշնա
մեաց և ատելեաց՝ և որ ոչն
ունին հատուցանել՝ չբա
ժանեն զշնորհին առատու
թիւն, երանելիք են. զի
նմանօղք եղեն ամենառատ
բնութեն, որ առ չարս և
ապերախտս ոչ զլացաւ ըզ
պարգևս իւր սահմանաւ
բնութեն։ Զարհուրե
ցուցանէ բանիւն՝ թէ՝ որ
ունիցին կալցին. ապա թէ
ոչ, յոյսն մխիթարել ոչ ու
նի. և կարծելն՝ էացուցա
նել ոչ զօրէ։
37 Խրատէ այնուհետև՝
զի մի՛ ոք նոր ընդ պարտեօք
իցէ օտարացն պարտեաց
դառն դատից լինել. զի մի՛
զերանացի ատեանն ան
ձինն ամբաստան կալցի։
Այլ որ ընտրեցաւ կար
գեցաւ՝ օրինօք հոգւոյն
պատուեցի ուղղել սիրով.
և մի՛ զօրութբ վնասել։
Պւ՛՛ Ւ

Իսկ վայրապար ձաղել՝
կարի անտեղի է և չարութե
անձին ցուցիչ։
38 Դարձեալ 'ի հակառա
կէն՝ տայ և բարեացն կը
ցորդութբ հաւասար չա
փով և առաւելութբ հա
ղորդել շնորհին. զի այսպ
յաղագս անձին բառնալ
և ունել՝ յօժարամիտ
լեցի։
39 Եցոյց օրինակաւ բա
նին՝ եթէ՝ իմաստնոյց է
վերակացու լինելն։
Ըստ այնմ, որ հանճարեղն
իցէ՝ զառաջնորդութիւն
ստասցի։ Ապա եթէ ան
միտն զօրանայ տիրել, ունի
նա զանձն իւր և զբազմաց
դահավէժ առնել։
40 Եւ մի՛ ոք ամբարձցի
քան զառաջինսն առաջին ու
նել զպատիւ. զի թէ 'ի
չափին հասանել բաւէ, 'ի
գովելեացն և 'ի կատարե
լագունիցն է։
41 Ամբարտաւանութիւն
մեծ է այնոցիկ որ ստո
րագոյն ախտիւ մեղացն
խառնարեալք իցեն և ոչ
Ձեր իմա

խմանան. և ո՛չ մի ինչ ընտա
նեաց գրեն զայն։ Իսկ
օտարացն և նորեգունեցն
հաւատոյ քննիչս և վերծ
անողս գոլ։
43 Նաև որ ասէ՝ ո՛վ յիմար
դու, զհայրդ այլոց մաք
րիչ և ոչ անձին. զի ո՛չ փո
փոխեն կարգք արարածոց.
և ո՛չ շղթայն որ կապեցան 'ի
բնութենէ. և ո՛չ կեղծաւո
րեալ բարին միշտ ձևանայ
խաբել և բանիւ զառա
ջինն տալ։ Որ զգործս
ո՛չ ունի՝ արդարանալ
ո՛չ զօրէ։
43 Նորդ որք ուսանին աս
տի զշինուածս բարեաց
իմաստութե՛ 'ի վերոյ հաստա
տագոյն հիման հաւատոյն
դնել զգուշութե՛, թէպէտ
և կարի՛ սաստկանայ մրրիկ
փորձութեանն, վնասել
ո՛չ կարէ։
49 Նաև եթէ անմտանայ
առ բանս և վերիվերոյ և
շարժուն զյարկ առաջի
նութեն կանգնէ անդիտա
ցեալ զձմերայնոյն բռնու
թի՛, 'ի փոքունց արկածից
Գի՛՛ Զ

բռնութենէց յանժոյժ բա
րուցն վնասեալ լինի վս
թերակատար կամացն։
Նորդ՝ յորժամ էլից ըղ
պէտս խորատու որովու
նէր զփոյթ պնդութե՛ բա
րեաց դնել 'ի միտս նոցա՝
ապա փութայ 'ի նշանս.
զի 'ի ձեռն նշանաց՝ առա
ջեալքն հաւատարիմք
լիցին։

* Գիրք Ընաբանին
Ն.



Եղև և իբրև
կատարեաց զամ
զբանս իւր 'ի ըն
սելիս ժողովրդեանն, ե
մուտ 'ի կափառնայում։
Հարիւրապետն նախ ըղ
ծերսն առաքէ աղաչել
զի տացէ առողջութի՛ ախտա
ցելոյ մանկանն։ Իսկ յտ
զի ամցուն ցուցցէ զհա
ւատս նր՝ գնաց ընդ նմ։
Իբրև եւես հարիւրապետն
թէ գայ 'ի տուն նր, եր
կեաւ 'ի մեծութէ պատուոյ
նորա։ վս զի ծանեաւ և
ձծթ հա

հաւատաց թէ տրէ մահու
և կենաց. և իշխանութեն
և հրամանաւ զորս կամի՝
ածէ. և զոր ոչ՝ ՚ի բաց վա
րէ: Սա որոյ փութացաւ
անկաւ առ ոտս տն և ըն
ծայեաց նմա հաւատս կա
տարեալս ընդ որս սքան
չացեալ հիանայ փրկիչն.
զի և ամենեքեն ծանիցեն
և նախանձաւոր լինիցին
այնպիսի ունիլ հաւատս:
Յաղագս որոյ նախ գովէ՛
զնա և ցուցանէ արժանա
ւոր այնմ շնորհին, և ապա
տայ զառողջութի ախտա
ցելոյ մանկանն:
11 Եւ եղև ՚ի վաղիւ
անդր՝ երթայր աշա
կերտօքն ՚ի քաղաքմի՝ որում
անուն էր Նային:
Ո՛չ կամէր նա ՚ի միում
տեղւոջ լինիլ. զի ոչ եկն
նա ՚ի հօրէ բնակութիւն
իւր խնդրել յերկրի, այլ
շրջիլ և ուսուցանել. և
առ ինքն ժողովել և ըն
ծայել հօր: Ըստ որում
՚ի խուռնիլ զնովաւ ժողովը
դոցն և յարգելուլ՝ անց,
Գւլ է

և այլոց քաղաքաց պարտէ
ինձ աւետարանել զի յայն
իսկ առաքեցայ:
Էին տէ ընդ նմա և ժողո
վուրդք բազումք:
Զի վասն նշանացն զոր
տեսանէին և վարդապե
տութեն յորս վայելէին՝
ոչ կամէին բնաւ մեկնիլ
՚ի նմանէ. վասն զի ոչ էին
յայնցանէ որ նախանձու
չարութեն հեղձեալք էին,
այլ մարդք պարզք և ա
ռանց նենգութե:
12 Իբրև մերձ եղև տէ
՚ի դուռն քաղաքին, և
ահա՛ ելանէր պատանի մի
մեռեալ որդի միամօր մօր
իւրոյ. և նա էր այրի:
Արդ՝ մերձ եղեալ աստ՝
պատահէ մեծագոյնն սքան
չելեաց քան որ ՚ի կափառ
նայումն եղև: Զի աստ
ոչ կին ոք տապացեալ ա
զատի յախտէն, և ոչ մա
նուկ մերձ ՚ի մահ բժշկի,
այլ՝ պատանի մեռեալ որ
և մերձ էր ՚ի գերեզման դը
նել և հողով ծածկել:
Բարձեալ տէ տանէին
ձի և

և էր միամօր. և մայր մե-
ռելոյն՝ էր այրի։
Արժանի ողբոց էր մանկն
վս առոյգութեն հասա-
կին. և զի նա միայն էր
մօրն և ոչ գոյր այլ ոք նը-
մա մխիթար։ ոչ փոխան
մեռելոյն և ոչ յորս որ-
դեծնուե. զի այրի էր և
պակասեալ ՚ի զօրութենէ
ծննդելոյ։ Պառնացեալ
էր սրտով, և ամենայն բաղ-
մութիւն քաղաքին զհետ
ելեալ աշխարհէին զնա։
13 Իբրև ետես զնա տր՝
գթացաւ ՚ի նա և ասէ,
մի՛ լար։ Եւ մերձեցաւ ՚ի
դագաղն։ Եւ որ բարձ-
տանէին՝ զտեղի առին։
Ետես ասէ տր՝ և գթա-
ցաւ ՚ի նա։ Եւ զիա՞րդ
ոչ գթայր որ ամենաբարին
էր բնութե։ Զի թէ որ
հարք էին՝ ողբային զնա,
որչափ ևս առաւել որ ա-
ռատն էր պարգևօք՝ տայր
նմա զխնամս գթութե։
Ոչ ողբալով ընդ նմա, այլ՝
կենդանութե պատանւոյն
լուծանէ զտրտմութին և
Գ.Լ" Է

դադարեցուցանէ զարտա-
սուսն։ Վորոյ ոչ յան-
կարծադէպ ինչ իրս առնէ
զի մի՛ արհաւիրս արկանի-
ցէ տեսողացն. այլ նախ
խօսի ընդ մեռելոյն մօր,
և ապա ձգեալ զձեռն դա-
դարեցոյց ՚ի դնալոյ. զի
այնպ ամենեքեան ուշ ու-
նիցին տեսանել թէ զինչ
կամիցի առնել։
14 Եւ ասէ, պատանի դու
քեզ ասեմ արի։ Կանգնե-
ցաւ նստաւ մեռեալն և
սկսաւ խօսել։
Զոյգ ընդ հրամանին և
գործն վճարեալ լինէր.
զի նա է վս որոյ ասացէ,
ասաց և եղև, հրամայեաց
և հաստատեցաւ։
Արդ նստաւ հեզ և հան-
դարտ. սկսաւ խօսել զգօն
և մեղմ և ընտելական
ձայնիւ. զի մի՛ ամբոխեսցին
վս նորանշան գործոյն։
Կամեցաւ զի զյոյս յարու-
թեն հաստատեսցէ և ըզ
սադուկեցւոցն խցցէ ըզ
բերանն, ասաց՝ եկեսցէ
ժամանակ յորում ամքն
Ձին որ

որ 'ի գերեզմանս կայցեն՝
լուիցեն ձայնի որդւոյն այ
և ելիցեն արտաքս։
Մորդ զի հաւատարիմ լի
ցին ասացեալքն նր, տայ
զառհաւատչեայն ատ յա
րութեամբ պատանւոյն։
Եւ ղազար այր կատարեալ
չորեքօրեայ լցեալ ժահա
հոտութբ 'ի գերեզմանէն
յառնէ։ և զայս զոր յա
րոյց։ և զնորին յարութն։
զի ուսեալք՝ մի՛ անհաւա
տասցուք մերում յարու
թեն։ Ինջուցանէ 'ի դագա
ղացն զոր բարձեալ տա
նէին թաղել, և տայ մօրն
կենդանի. զի ինքն ոտիւքն
դարձցի զհետ բազմուեն
'ի քաղաք անդր։
16 Զայս տեսեալ բազ
մութեն՝ ահ կալաւ զնս
վս ոչ ևս այլ տեսանելոյն
այսպիսի զօրութն։ երկեան
և սկսան փառաւոր առ
նել զած։
Այսպիսի բնաւորեալ
են նշանք, զի զամ միտս
ըմբռնեալ ձգէ յինքն. և
'ի հիացմանէն չունին այլ
Գ.ւլ՛ է

ինչ խօսիլ, բայց միայն
փառս տալ այ, և իմանալ
թէ այցելութիւն ածե
ղէն է։
Ասեն՝ մարգարէ ոմն մեծ
յարուցեալ է 'ի միջի
մերում։
Թէպէտ զպատշաճ կար
ծիսն վս նր ոչ ծանեան,
սակայն 'ի դպրաց և 'ի փա
րիսեցւոց չարաչար կար
ծեացն ազատք էին։
Յաղագս որոյ ասէին, այց
արար ած ժողովրդեան
իւրում 'ի բարութի։
Քանզի ծանեան եթէ նը
շան բարեաց է զմեռեալս
յարուցանել։ Զի են բա
զում նշանք որ կորստեան
նշանակիչք են։ Որպէս
մրգրէին տուեալ 'ի կալն
Ռոբովամու. և զոհելն 'ի
վր բագնին. զպատառիլ
սեղանոյն, և հեղուլ զար
գանակ զոհիցն։ 3 Թագ 13։
Եւ որ աներածոյն եէմի
նշան երևեալ առ չարչա
րանօքն. և յետ այսորիկ
կառք և երիվարք 'ի վերոյ
քան զնս յօդն խաղացեալ
ձիւ     նշան

նշան չարի նցա։ և որ ըստ
այսմ կարգի։ Մրոյ դա
ւիթ մաղթէ այ առնել
առնա նշան բարութեան
և մի՛ չարեաց ինձ։
Բայց՝ ծանեաւ ժղվուրդն
թէ բարեացն է նշանս այս՝
և մեծ ոմն է որ երևեցաւ
՚ի մէջի նոցա փրկիչ լինել
նոցա։
17 Եւ ել [illegible] զրոյցս այս
յամ հրէաստան վասն
նորա. և յամ կողմանս աշ
խարհին։
Մ զի մեծ էին սքանչե
լիքն՝ զի զմեռեալս յարու
ցանել՝ կարի իմն զարմա
նալի և մեծ թուի յաչս
մարդկան. և զայս տեսել
առաւել համբաւեցին
զայն ընդ ամ աշխարհն։
Եւ այնքան զօրացաւ տի
րել այս համբաւ, մինչև
աշակերտքն յովհաննու որ
նախանձընդդէմ էին՝ ըմ
բռնեալ ՚ի զօրութենէ
գործոյն՝ եկեալ պատմեցին
յովհաննու՝ ՚ի բանտի անդ։
Իսկ յօհաննու աւետրանին
յորժամ եկեալ աշակեր
Գւ՛՛ Է

տացն յովհաննու ասեն,
ռաբբի որում վկայեցերն՝
աւանիկ նա մկրտէ և բա
զումք գան առնա։ յօհ 3,
Նա բազում բարձրագոյն
և ածավայելուչ վկայու
թիւն վս տն մերոյ խօսե
ցաւ և եդ առաջի նցա։
Իսկ աստ զնոսին առաքէ
գնալ տեսանել և լսել ՚ի
նմանէ՝ հաւատալ և յա
րել ՚ի նա։ ՚Ի դէպ իսկ է
և զայն ասել թէ՝ յետ հար
ցանելոյն և դառնալոյն
առնա՝ բազումս ունէր
նա տալ վկայութիւն նցա,
զի մի՛ բաժանեսցին ՚ի նո
ցանէ։ Բայց առաքէ հար
ցանել, այն որ յառաջ քան
զտեսանելն գիտէր զնա.
և ետես և վկայեաց եթէ
նա՛ է գառն այ որ բառնայ
զմեղս աշխարհի։
20 Եւ եկեալ ասեն բա
նիւն յովհաննու,
դու ես որ գալոցդ ես, եթէ
այլում ակն կալցուք։
Իսկ յս ո՛չ ասաց թէ՝ ես
եմ. զի անպատշա՛ճ էր.
այլ և ո՛չ հրաժարեցոյց
ձիգ զանձն

զանձն առնել թէ ոչ իցէ. բայց 'ի զօրութեցն հաւատարիմ առնէ գիտել թէ նա իցէ: Զի լցեալ է մարգարէութիւն եսայեայ որ ասէ, յայնժամ աչք կուրաց բացցին. և ականջք խլից լուիցեն: յայնժամ վազեսցէ կաղն իբրև զեղջերու, և պարզեսցին լեզուք ծանրախօսից:

Զայս յուշ արար, և ապա դարձուցանէ զբանն ցուցնել եթէ ինքն իսկ է՝ յասելն, Երանի որ ոչ գայթակղեսցի յիս:

Եւ 'ի գնալն հրեշտակացն յովհաննու՝ սկսանի մեծացուցանել զպատիւն յովհաննու և յայտնել զհաստատուն միտս նր:

24 Զինչ ասէ ելէք տեսանել. եղէգն դիւրաշարժ 'ի հողմոյ որ այսր անդր բերիցի: երբեմն վըկայել՝ և դարձեալ երկբայաբար ունել զկարծիսն: կամ թէ փափկութե զհետ գնաց և հաստատութիւն նր լուծաւ: Եւ իբրև

այս ոչ իցէ՝ զինչ ունիմք տալ վկայութիւն նմա: մարգարէ: Նա և ես մեծ ք զմարգարէ: Զի ինք մարգարէացան և ոչ տեսին. այլ յովհաննէս ետես և մկրտեաց: Եւ վս նորա գրեցաւ թէ՝ սպասաւոր է առաջի երեսաց նր. պատրաստել զհոգիս մարդկան ճանապարհ նմա: Որդ այսպիսի մերձաւորութի մեծացոյց զնա քան զամ ծնունդս կանանց: Բայց այն՝ զոր կարծէք դուք թէ փոքրիկ իցէ վս յովսեփայ, նա մեծ է քան զնա Թերևս աշակերտք նր. զի ասացի ոչ է յարուցեալ. և ոչ թէ ոչ յարիցէ:

29 Զայս լուեալ ժողովրդոցն՝ գոհացան զայ. և վկայեցին արդարացուցին զաւաքիչն նորա. զի հաւատացին և մկրտեցան 'ի նմանէ:

30 Բայց օրինաց դպիրքն արհամարհեալ անարգեցին զայս մեծ և երկնային խորհուրդ տուեալ նմա 'ի

վերուստ, և ո՛չ միրտեցան 'ի նմանէ: և զարմացեալ ընդ անհաւատութիւն նոցա ասէ, Ո՞ւմ են նման սք նմանեն մանկանց ոչանմեղաց' այլ չիմարաց. այնոցիկ' որոց ո՛չ տրտմակիցքն կարեն շարժել զնոսա հաղորդել որոց ողբան, և ո՛չ որոց ցնծութիւն իցէ' ուրախակից լինել նց:

Արդ զայս 'ի դէմս առակի առեալ եցոյց:

Զի յովհաննէս անկերակուր և սգատեսակ հանդերձիւն կոչեաց զնոսա յողբս ապաշաւել' և արտասուօք ապաշխարել ըզմեղս իւրեանց: Ակն յն փեսայ առագաստի' ձրի թողութիւն շնորհել զյանցանս. և իբրև զմանկունս նքս ժողովել զնս յառագաստ ուրախութեան' անտրտմական ունել կեանս:

Այլ նոքա իբրև մոլեգնեալք ընդ երկոսեանն պատերազմէին:

35 Իսկ իմաստութիւն արդարացաւ յորդւոց իւրոց:

Զի որ հաւատան և ծնազանդին, ուղիղ ցուցանեն և արդարացին զօրէնսդիրն. զի կրելի են օրէնք նր, և ճշմարիտ է տրութիւն նր:

36 Աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոյն զի կերիցէ հաց ընդ նմա: Փարիսեցի էր, այլ ո՛չ չարութեամբ լցեալ իբրև զփարիսեցիսն. զի գոյր և 'ի նմա գտանել զոմանս բարիս. ըստ որում և այրս այս: Զի թէպէտ ոչ պարտն էր դիտել ո՛չ դիտէր, բայց իբրև 'ի մարգարէ հայէր 'ի նա. և մատուցեալ աղաչէր շնորհ առնել նմա և մտանել 'ի տուն նորա: Իսկ նա որ յամի խոնարհութեամբ եցոյց զգալուստն իւր յաշխարհ, մտեալ 'ի տուն փարիսեցւոյն բազմեցաւ:

37 Եւ ահա էր կին մի 'ի քաղաքին մեղաւոր. իբրև լուաւ եթէ բազմեալ է 'ի տան փարիսեցւոյն, առեալ շիշ իւղոյ ազնուի' կայր

յետոյ առ ոտսն յի․ լայր
և արտասուօքն թանայր
զոտս նր և հերովն սրբէր
և համբուրէր զոտսն և
օծանէր իւղովն։
Յայտնի կատարեալ հաւատս
եցոյց կինս այս․ զի ոչ
ունէր նա խեղութիւն կամ
ցաւս ինչ մարմնականս․ ոպ
այլք բազումք որ վն հաշ
մութեն մարմնոյ մատեան
գտանել փրկութի։ Այլ չէին
ինչ կատարեալ հաւատոյ
և երկիւղածութեան՝ որ
վն ցաւոց մարմնոյ մատ֊
չէին գտանել առողջութի․
զի մարմնոյ նեղութիւնն
բռնադատէ և առ ամ ոք
ձգէ և յուսայ հանդիպիլ
բժշկութեան։ Բայց հո
գւոցն ախտք ոչ այսպէս
կարի ստիպեն խնդրել ըզ
բժիշկն․ այլ զայն ատել․
զի սիրեն փախչիլ իբրև 'ի
պատերազմողէ որ ձեռն
արկեն բժշկել։ Իսկ կինս
այս՝ կատարեալ հաւատով
և երկիւղիւ մատեաւ գը
տանել զմեղացն լուծումն։
Զ՝ի իբրև ետես ըզ զօ
րութի նորա 'ի մարմինս
մարդկան, զոր յարոյց 'ի մե
ռելոց, և բժշկեաց յախ֊
տից, հաւատաց թէ նովին
զօրութբն կարող է նա բառ֊
նալ զմեղս։ Այս մատու֊
ցեալ անկաւ առ ոտսն և
սկսաւ լալ․ և այնքան ա֊
ռատանալ արտասուացն,
մինչ զի լուանալ զոտսն
տն։ և ոչ միայն լուանայր,
այլ և մաքրէր հերով գըլ
խոյն և համբուրէր․ սաստ֊
կացեալ 'ի նա ածային սի
րոյն ջերմութե։
Մրդ՝ յօհաննու սրբոյ՝
վն զի չորեքեան աւե֊
տարանիչքն պատմեն զայս․
և յովհաննէս յանուանէ՝
ասէ զմարիամ քոյրն ղա
զարու։ առ այս հայեցեալ
զգուշացաւ զի մի՝ պոռնիկ
զքոյրն ղազարու համա֊
րեսցին։ Ասրոյ որոշեաց
անտի զերից աւետրնչացն
և զյովհաննուն առանձին
եդ․ այլ լինիլ զերիցն և
այլ զյովհաննուն․ զի մա
րիամ կին պարկեշտ՝ և ամ
մեղաւոր։

Որդ՝ առ այս ինձ ը̄դդէմ
դնել նո̄ր ընտրութեանն
անտեղի է և յանդգնու̄թ
մեծ․ բայց ընդ այս կարի՛
զարմացեալ եմ, զի պարտ
էր զմեղաւորս զայս որո
չել յերից անտի։ Ս̄ զի
տեղի մի և զնոյն ցուցանեն
երեքեան նք̄ զբեթանիա։
և բանքն զոր խօսեցան ա-
շակերտքն վ̄ս իւղոյն թէ
պարտ էր վաճառել երեք
հարիւր դենարի և տալ
աղքատաց։ և պ̄տասխանին
տ̄ն նոյն, թէ զաղքատս
յ̄ամ ժամ ը̄ ձեզ ունիք։
և թէ՝ առ'ի թաղելոյ զիս
նշանակեաց։ և ժամանակն
նոյն՝ մերձ 'ի չարչարանսն։
և վասն պոռնիկ լինելոյ
չգրեն ինչ։ և զայլ ևս 'ի
միմեանս յարել զբանս նց̄՝
յ̄ամ հաւասարք միմեանց
հանդիպին և անսխալ պա
հեն զկարգն։ Որդ այսու
ա̄մբ մատթէոս և մարկոս
և յօհաննէս հաւասարք
գտանին։ Իսկ ղուկասու
ա̄մբ օտա՛ր է։ բայց միայն
յայնմանէ՝ զի զտանն տէր



սիմոն կոչէ։ Եւ այս չէն
ինչ տարակուսանք եթէ
երկոքեան նոքա պատահե
ցին սիմոն լինել։ Ս̄րոյ
ասեմք՝ ա՛յլ լինել զայս կին
մեղաւոր, որ այս քան զօրա
ցաւ հաւատովք և եցոյց
զջերմու̄թ սիրոյն և եա-
ցոյց զարտասուս բնու̄թն
ալբեր։ զի հեղեալ 'ի վ̄ր
ոտից բարձողին մեղաց՝
լուանայր, և լուացեալ լի
նէր 'ի գարշու̄թէ ախտիցն։
Որդ զայս նշանակէ ա-
սելն, կայր յետոյ ամօթով
և լայր՝ և լուանայր ար-
տասուօքն, ջնջէր հերօքն
և համբուրէր։ Իսկ փարի
սեցին սակաւ հաւատովն
զոր ունէր՝ սկսաւ տկարա
նալ։ զի մարգարէ հաւա
տաց թէ իցէ, իսկ յորժամ
զպոռնիկն թոյլ ետ մերձե
նալ յոտսն, յայնմանէ ևս
վրիպեալ անկաւ յասելն
'ի միտս իւր,
39 Սա՛ թէ մրգրէ ոք էր՝
ապա գիտէր թէ ո՛րպիսի
ոք կին մերձենայ 'ի սա․
քանզի մեղաւոր է։

Ըյապիսիք են ամբեան
որ ոչ կատարեալ են 'ի հա
ւատս. 'ի փոքր ինչ պատ
ճառէ վաղվաղակի ձեռասին
Ապ̃ այրս այս զի միայն հա
ւատաց թէ մարգարէ է,
բայց արդ և յայնմանէ վը
րիպեցաւ և ոչ բնաւ թէ
մարգարէ իցէ հաւատայր
նա: ահա չէ յայտ նմա թէ
մեղաւորէ ասէր փարիսե
ցին. Իսկ յս̃ ած̃ային ծա
ծուկ տեսութ̃ն իւրով որ
քննէ զսիրտս մարդկան՝
եցոյց նմա եթէ ոչ միայն
զյայտնի գործս կնոջն գի
տէ նա, այլ և զծածուկս
մտաց նորա տեսանէ:

Ապ̃ ասէ:

40 Սիմոն, ունիմ ինչ ա
սել քեզ. և նա ասէ՝ ասա
վարդպ̃տ: և ասէ, Երկու
պարտապանք էին ուրում̃ն
փոխատուի. մինն պարտէր
հինգհարիւր դահեկան,
և միւսն յիսուն. և իբրև
ոչ գոյր հատուցանել՝ եր
կոցունցն շնորհեաց: արդ
ասա՛ ո՞ առաւել սիրեսցէ
զնա: ասէ սիմոն, ինձ այսպ̃

Թուի թէ որում ըղ̃ բա
զում̃ն շնորհեաց:

Զկարծիսն սիմոնի կա
մեցաւ ցուցանել թէ ոչ
ծածկեցաւ 'ի նմանէ. զի
առողջացի հիւանդութ̃ի
մտաց նր̃. և գիտասցէ թէ
ոչ միայն մարգարէ է նա,
այլ և կարի առաւել քան
զմրգ̃րէ: և մտաց և խորհր
դոց է քննիչ որ ա̃յ միայն է
յատուկ: Ըստայնմ որ ա
սէ, քննես զսիրտս և զե
րիկամունս ած̃: առք:

Ըրդ սկսեալ ոչ առ 'ի նա
ձդէ յանդիմանութե̃ ըղ̃
բաննն, այլ նախ օրինակաւ
վարի բանիւք: ըստորում
և նաթան: և ապա մերկա
ցուցանէ զբանն առակաւ
ասացեալ: Նաև տիպք
կերպարանաց բնութե̃ բա
նին յայտ առնեն զնա տր̃
օրինացն գոլ: Զի թէ
որք մեղան և յանցաւորք
օրինացն եղեն՝ պարտէնք
նր̃ իցեն, յայտ է թէ նա
եդ զօրէնս և խնդրէ ըղ̃
պարտսն կատարել զնա:
Զի որք ընկալան զօրէնս
Ը ձեռ̃ փոխ

փոխ է այն նց՟. և 'ի ներքս
բերել զնա՝ տուողին ան-
ախտ հատուցումն է փո-
խորդացն: Արդ՝ եդ նա
զօրէնսն ստուգութե՟ և
խնդրեաց զպահպանութի՟
նորա անվրէպ: Այլ իբրև
չգոյր ումեք հատուցանել
եկն շնորհել ողորմութե՟:
Ըստ այնմ, ամ՟քեան մեղան
և նուազեցան 'ի փառացն
Այ՟. և արդարանան ձրի:
Արդ եդ և հաւասարեաց
զբազմամեղս և զսակաւա-
մեղս. և չափեաց առ այս
զյօժարութի՟ կամացն և
զջերմութի՟ սիրոյն. և ըստ
արժանեացն համարի ըղ
Թողութի՟ պարտեացն:
Իսկ վասն զի դահեկանս
եդ զպարտսն՝ և ոչ յայլմէ
ինչ նիւթոյ, այս ոչ վայրա-
պար և ոչ անխորհուրդ ինչ.
այլ վն՟ զի նիւթ նր՟ է ոսկի
և դրոշմ Թագաւորական
պատկերի: Այն ոսկին ա-
ռեալ է ամ՟ ուրեք օրինակ
ած՟ային անախտ և անարտ՟
բնութե՟ն: Նաև բնութի՟ս
մեր ըստ նմանութե՟ և ըստ

Գ՛՛լ է

պատկերի Այ՟ ար՟րաւ իբրև
զդահեկան՝ Թագաւորի
պատկեր. և ետ մեզ օրէնս
որ կազմեալ պահէ զայս
պատկերս անախտ և անա-
պական: Զի որ ինչ ինքն
բնութե՟ է՝ զայն ուղղեմք
մեք պատուիրանացն պահ-
պանութե՟. և յորում մասին
պակաս գտաք, անդ ժան-
տացաւ պատկերն և այլայլե-
ցաւ ոսկին: Զի որք պա-
հեն զկերպարանս սրբու-
Թե՟՝ սրբութե՟ն Այ՟ նմանին.
և մարդասիրութե՟՝ մարդա-
սիրին. և հեզութե՟՝ հեզոյն.
և որ այլ ևս 'ի սոյն յարին:
որում պարտական եմք հա-
տուցանել ոտ՟ ընկալաք 'ի
նմանէ օրինակօք. զորօրի-
նակ և զքանքարսն: Արդ
զորս պահեցաք 'ի պատուի-
րանաց նր՟, հատուցաք ըղ
պարտս պատկերին. և յորս
հեղգացաք և զլացաք,
պարտական պատկերին
գտաք:

41 Իսկ՝ 'ի հինգ հարիւր
և յիսուն բովանդակել
զպարտս երկոցունց, ունի

զհինգ զգայարանացս հափ։
Եւ հարիւրն՝ զկատարումն
ա͞ն մեղաց։ զի ա͞ն զգայա
րանօքն յա͞մն յանցաւոր
գտաւ. 'ի կատարումն ամե
նայն մեղացն հասեալ։
Իսկ յիսունն՝ ըստ նմին տա
սամեքք զզգայութիս հափէ
հինգ լինիլ. և մեղաց սա
կաւագոյն հաղորդ լեալ
քան զառաջինն։ Զ՝ի սա
տասն հափով և զգայարա
նօքն շաղեալ. իսկ նա տաս
նիցս տասն առաւելեալ
մեղօք։ Աստորումն և կինս
այս. զի զա͞մ էլէք զօրի
նացն պատւէր։ Եւ իբրև
ետես զօրինացն զա͞րն զի
եկն իբրև զաւարերար, և
փոխանակ ստուգութեան
զոր պահանջէր օրինօքն՝
խնդրէ զհաւատս և զսէր,
և տայ զարդարութի ձրի։
Արդ թէպա և 'ի գործոց
բարեաց նուազեալ էր,
այլ ունէր նա մեծաւ ա
ռաւելութե զհաւատս սի
րով զօրացեալ. զոր ըն
ծայեաց ա͞ն նորոյ և ընկա
լաւ զթողութի պարտեացն։

Իսկ սիմոն յայնպիսեաց
ինչ ոչ եցոյց. և ոչ զկնոջն
իմանալ կարող էր զոր ըն
ծայեաց նմա զհաւատս։
Ապ ասէ ցսիմոն։
44 Մտի 'ի տուն քո, ջուր
ոտից իմոց ոչ ետուր. իսկ
սա արտասուօք եթաց
զոտս իմ։
Թէպէտ և աղաչէր զի
կերիցէ ճաշ ընդ նմա,
սակայն զպատշաճ սիրոյ
զպատասաւորութիւնն ոչ
էլից։ Մտի ասէ 'ի տուն
քո։ Այսինքն դիւրաւ
մերձենալի քեզ, և այնպէս
համարձակելի յա͞մ իրս։
Այլ կնոջն ոչ ինչ այս
պիսի. զի և ոչ 'ի տուն նր
մտանելոյ դոյր յոյս. և ոչ
այլում համարձակութե
մատչիլ. այլ ըստ օրինի
տեառնատեսին որ վ͞ս ամօ
թալի իրացն ճնարեցաւ գո
ղանալ զփրկութին պինտ
հաւատովքն. այսպ և սա
նախ ամօթով մտանէ և
յետոյ կայ։ Եւ տեսեալ
զհեզութի մարդասիրին
թէ ոչ գարշի 'ի մեղաւորաց,

համարձակէր յառաջ մատ-
չել. և անկեալ առ ոտսն
այնչափ հեղու արտասուս
'ի վր̃ տր̃ունական ոտիցն,
մինչև բաւական լինիլ
լուանալոյ: Նաև զերեսն
ևս մերձ եդեալ մաքրէր
հերովն զգարշապարսն որ
կոխէր զգլուխ վիշապին:
Բայց սիմոն և ոչ ջրով կա-
մեցաւ ցուցանել զախրոյն
առնա զխնամակալութի̃:
Իսկ ոչ այսչափ միայն,
այլ և ոչ համբուրել փա-
փագեաց զամենամաքուր
գլուխն: Իսկ յիրաւի: զի
որ ոչ պատշաճ պատուով
պատուեաց զնա, մի՛ ընկալ-
ցի յանդէտս զորբէք համ-
բոյր նր̃: Իսկ նա վասն զի
ոչ ունէր համարձակութի̃
մերձենալ յերեսս նորա՝
ոչ դադարեաց 'ի համբու-
րելոյ զոտս նր̃: Նա և այն
կարի մեծ էր և ամենեւին
մաքրագունիցն միոջ մեր-
ձենալ յոտս նր̃, թող թէ
կնոջ որ շաղախեալ էր
մեղօք:
46 Իւղով ոչ զգլուխ իմ
[illegible]
ոչ օծեր. սա իւղով անու-
շիւ հօծ:
Ո՛վ ամենաբարի բնու-
թեանն. զորպիսի ինչ
նուէրս ընկալաւ յորպի-
սւոյ ձեռաց: Յայտնի է
մ̃մ ուսանք զի ոչ 'ի նը-
ւէրս հայի, այլ 'ի միտս մա-
տուցողացն: Ըստորում
վր̃ նոյի ձենձերացն գը-
րեալ է, հոտոտեցաւ ած̃
տր̃ 'ի հոտ անուշից: Ծնն 8:
Սոսկ իւղով ասէ դու զգը-
լուխ իմ ոչ օծեր, սա իւղով
անուշիւ հօծ:
47 Վյ̃ ասեմ քեզ, թո-
ղեալ լիցին մեղք իւր բա-
զում. զի յոյժ սիրեաց:
Յառաջ զքաջութի̃ հաւա-
տոյ կնոջն եցոյց, և ապա
արդարացուցանէ իրա̃-
մբք. զի յոյժ ասէ սի-
րեաց և փաստակեցաւ և
արժանացոյց զանձն վար-
ձուց հատուցման:
Յայտնեաց զանձն թէ նա է
վր̃ որոյ ասաց մարգարէն,
բառնայ զանօրէնութիւ-
ս և ընկենու 'ի խորս ծո-
վու:
Ձլ̃ Զ ի

47 Զի որում տուաւ շատ
թողութիւն՝ շատ սիրէ.
և որում սակաւն՝
սակաւ:
Գիտէ նա ծածուկ տե
սութիւնք և հաւատարի գի
տութիւնք և արդարադա
տութեամբքն չափել և հա
ւասարել ամենեցունց.
որպէս ըստ վաստակոց զվարձս,
նոյնպէս և ըստ հաւատոցն
և զաւրոյն՝ զշնորհս Թո
ղութեան: Քանզի առատ է
պարգևօք և ողորմած է
՚ի Թողուլն:
48 Որպէս դարձուցեալ
զդէմն ՚ի կինն այն՝ ասէ,
Թողեալ լիցին քեզ մեղք
քո:
Իբրև արդարացոյց ՚ի դա
տելն զդէմս իւր, ապա իշ
խանութբ Թողու զմեղս.
վասն զի իւր օրէնք են զոր
եդ մարգարէիւքն յասելն,
անօրէնն եթէ դարձցի ՚ի
չար ճանապարհէն իւրմէ՝
ամ անօրէնութիւնք նորա
և ամ մեղք նորա զոր մեղաւ՝
մի՛ յիշեսցին: Արդ եթէ ՚ի
մտաւերին այսպէս եղաւ,
Գ՟լ է

զի՞նչ ևս ոք ասիցէ վասն
շնորհի ազատութեան որով
եցոյց զանձն Ճշմարտու
Թիւնս:
49 Եւ սկսան որք բազ
մեալ էին ընդ նմա՝ ասել
ընդ միտս, ո՞ է սա որ զմ
մեղս Թողու:
Այլ յայտնի ինչ ախտացան
և առ անդամալուծան:
Ապա անդ յանդիմանէ զմ
մտաց նոցա զկարծիս, և հաս
տատէ զանդամալոյծն ՚ի
ստուգութի իշխանութեան
որով ունէր Թողուլ զմ
մեղս: Այլ աստ չյայտնէ
զծածուկս մտաց նոցա.
զի մի անգամ խօսեցան
յայտնութ՝ վասն սիմոնի կար
ծեացն, և առստ դարձել
ձգել զդէմն աւելորդէր:
Եւ յայտնի ինչ նշանք քա
րոզինչք իշխանութեն նորա
մերձ ոչ էին. վասն չառնէ
ինչ փոյթ խայտառակել
զխորհուրդս նոցա. այլ ՚ի կինն
հայեցեալ ասէ,
50 Հաւատք քո կեցու
ցին զքեզ երթ ՚ի խաղա
ղութի:
Ճ՟Ը Ու

Ուսուցանէ զամենեսին այնպիսի ընծայել հաւատս և այնպէս արժանանալ շնորհի թողութեան։ Իսկ ասելն՝ երթ 'ի խաղաղութի. ցոյց եթէ բարձաւ խռովարարն։ Զի զորօրինակ մարմնոյ ցաւք պատերազմին են մարմնոյ և նեղեն և տագնապեն զմարմին։ այսպէս և մեղք պատերազմ սաստկապէս տան ընդ ոգւոյն սպանանել օրինօքն մեղաց։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և ընդ այ տան պատերազմ թշնամի առնել և օտարացուցանել 'ի նմանէ և հաղորդս դիւաց առնել։ Արդ զի յայսպիսեաց աստի ազատեաց զանձն աշխատեալ, ասէ, երթ հանգիր 'ի խաղաղութի։



* Գլուխ Ութերորդ
Ը



Եւ յետ այսորիկ շրջէր ը քաղաքս և ընդ գիւղս. քարոզէր և աւետարանէր զարքայութին։ և երկոտասանքն ընդ նմա։

Աստի յայտ է թէ յերանի է զայս օծումն իւղոյ 'ի կնոջէ աստի՝ որոշել յերեց անտի։ զի երեքեան նոքա հաւասարապէս 'ի կատարածի անդ եդին և նշանակ թաղման որպէս յայտ է։ զի յետ այնորիկ նա ոչ շրջեցաւ քարոզել։ Բայց աստ ասէ, յետ այնորիկ շրջէր աւետարանէր զարքայութին. և երկոտասանքն ընդ նմա։ Եւ կանայք որք բժշկեալ էին յայսոց չարաց։

Վն զի ամենախնամ էր բնութին, և վասնորիկ եկն զի զամենեան ժողովեսցէ առ ինքն։ Յաղագս այսորիկ հանէ անտես զոք. զի

զի չգարշի յումեքէ։ զի
զոր ինչ ստեղծ՝ զմարդ
արհամարհէ և ՚ի բաց դառ
նայ։ Այլ մեծաւ խնամ
ակալութբ ժողովէ առ ինքն
զարս և զկանայս։ Սրբէ ՚ի
հոգւոյ և մարմնոյ ախտից։
Շրջէին ընդ նմա և սպաս
սաւորէին, և նա ի բաց ոչ
վարէ։ այլ որով բժշկեաց
՚ի չար այսացն, նովին և առ
իւր ունի։ Եւ էին նոքա
նշանաւոր կանայք։
2 Մարիամ ասէ յորմէ
եօթն դեւն ելեալ էին։
և կին հազարապետին հե
րովդի. և շուշան։
Զայս յայտ արարեալ
թէ կանայքն էին երևելիք
որ յընչից իւրեանց սպաս
աւորէին նմա. որ ոչ վ̃ն աղ
քատութ̃ եկեալ յարեցան
՚ի նա. այլ վ̃ն հաւատոց և
զօրութ̃ցն զոր առնէր, և
բանիցն վարդապետութ̃,
և երախտեացն զոր ընկա
լան. զի ազատեաց զն̃ս ՚ի
դիւաց անօրէ յորմէ չարչա
րեալք էին։ Արդ զայս
ընկալեալ շնորհ՝ ոչ կա



մերին բնաւ մեկնել ՚ի
նմանէ։
4 Եւ ՚ի շրջելն նր̃ և յու
սուցանել, ժողովեցան առ
նա բազմութք մարդկան
առ եզր ծովուն գալիլեա
ցւոց. և սկսանի խօսել ը̃
նս̃ առակաւ։ Վ̃ն զի և
այս գրեալ էր վ̃ն նր̃. բա
ցից առակաւ զբերան իմ,
խօսեցայց զիմաստութ̃
զծածկեալն ՚ի սկզբանէ։
5 Վ̃ն որոյ կարգէ զանձն
իւր սերմանօղ բանին, և
զգիրս բանաւոր և մտա
ւոր՝ երկիր, յոր սերմն ան
կանիցի։ Եւ են օմանք ՚ի
սոցանէ առապարք. որ ՚ի
բազմապատիկ մեղացն հու
մանէ ողողել գերփեցաւ
թանձրութիւն իմաստից
հողոյն. և այնպէս մնացին
ապառաժուտ։ Որք թէպ̃տ
և ընկալան զսերմանս բա
նին, սակայն զպտուղ առա
քինութ̃ հաստուցանել
սերմանողին ոչ զօրեցին։
վ̃ն զի ոչ ունէին որով համ
բերէին տապոյ սատանայա
կան փորձութ̃եցն յորմէ

 տա

տարաժամ խորշակահար
կորնչին։ Ոմանք ճա
նապարհ զանձինս արդին
գնալի ոտից և սմբակաց
ախտից. և կռեալ պնդեալ
կարծրացան ախտացեալ
ամբարշտութեամբ, և ծածկել
զսերմն բանին ոչ ունին։
Ոմանք 'ի սոցա վերայ վաղվա
ղակի հասանէ թռչուն
փորձութեան, և քաղեալ
'ի բաց առնու զսերմանս
բանին. և այսպէս անշնորհ
սերմանողին ցուցանին։
Այն և ոմանք յոլովութեան
աշխարհական փշոցն ցան
կութեան տեղի։ որք ընկալան
զբանն։ Այլ զի ոչ էր հնար
նեղ և ընդարձակ ճանա
պարհաւ միում գնալ, և
զփուշս մեղաց և զսերմանս
առաքինութեան 'ի միում ոգւոյ
սնուցանել, նորին աղագաւ
և սոքա հեղձուցին և 'ի
պտղոյ առաքինութեան պա
կասեալ գտան։
Ցուցան և բարիք ոմանք
որք պահեցին զանձինս 'ի
լինելոյ ճանապարհ կամ
ապառաժուտ. նա և ոչ



փշոց եղեն ընդունակ։
Այլ երբեւ զբարի երկիր
ընկալան զսերմն բանին 'ի
բարի մշակողէն ոգւոց.
և աճեցուցին զբարեաց ար
դիւնս տուողին սերմանն։
Սակայն ոչ միով չափով
ամենեքեան ցուցան. այլ
զանազանեալ են։ և որք
աճեցուցանեն զպտուղ
բարեաց, ըստ նմին սահմա
նեալ է նոցա յուսոյ և պար
գևացն չափ։
16 Ուսուցանէ աշակեր
տացն միայն՝ զառակին
իմաստ. և յայտնէ նոցա թէ՝
այսու գիտութեամբ ջահ վա
ռեաց զնոսա յառաւօտ լուսոյ
անտի զոր ինքն բնութեամբ
ունէր։ Այլ ոչ է օրէն նոցա
թաքուն լինել. այլ ունին
նոքա 'ի ժամանակէ անտի
երբեւ զլոյս սաստիկ սփռել
ընդ բնաւս. որ յայնժամ
'ի պաղեստին ծածկեալ
կային։
18 Նաւ այս երկեցուցանէ
որք զլանան զպտուղն՝ ա
սելով, որ ունիցի զգործս
բարիս՝ և ս յաւելցին 'ի

նմա սերմանք բանին։
Իսկ որ ոչ կամեցաւ տալ
զպտուղ բարեաց, լսելն
եւս բարձցի ՚ի նմանէ։
Ըստայնմ, ամ ուռ որ բե
րէ պտուղ՝ սրբէ զնա։ Եւ
որ ոչ բերէ պտուղ՝ կտրէ
զնա։

19 ՚Ի նմին ժամու եկեալ
մայրն՝ եւ անուանեալ եղ
բարքն, կացեալ արտաքոյ՝
փառասիրութ. կոչեն զնա
հրամանաւ։ Եւ յս կա
մեցեալ շիջուցանել զամ
բարձումն մտաց նց՝ ասէ,
չէք ոք իմ եղբայր՝ բայց
միայն որ առնեն զկամս հօր
իմոյ որ յերկինս է։

22 Յետ այսորիկ մտանէ
՚ի նաւ աշակերտօքն միայն
զի կրթեսցէ զնս նեղու
թեամբ. զի մի՛ մոռասցին
զզօրութի նր։ Վորոյ հրա
մանն տայ ամբոխիլ ծովուն,
իւր ՚ի քուն կալով։ Եւ նք
առերկիւղին մատեն զար
թուցին զնա օգնել նց։
Եւ նա յարուցեալ դա
դարեցոյց զյուզեալ ա
լիսն։ Նկարեցաւ աստ

Գ.Լ″ Է

ժամանակ մարգարէիցն։
որ ՚ի խաղաղանալն այ՝ ամ
բարձան ՚ի ծովու ծիս
մրրկեալ սատանայական
ալիքն։ Վյ մրգրեիցն
մատուցեալ մաղթէին այ,
զարթի՛ր ընդէ՛ր ննջես տր։
Եւ՝ արի՛ տր օգնեա՛ մեզ
եւ փրկեա՛ զմեզ։ Բայց
զայս խորհուրդ որով հան
դարտեցուցանելոց էր ըզ
սատանայական ամբարձեալ
ալիսն առաջի առաքելոցն
յորժամ միջամուխ լինէին
նոքա ՚ի հեթանոսս, եցոյց
՚ի ծովու աստ. զի որք տե
սին՝ ծանեան զչափ զօրու
թեան նորա որդւոյ այ
դոլ։

26 Բայց անցեալ առ գեր
գեսացիսն՝ զչար եւ զատամ
բակ ծառայսն ըմբռնէ ՚ի
չարագործութե իւրեանց.
զի իբրեւ զանազանս ըմ
բռնեալ չարչարէին զծա
ռայակիցս իւրեանց։
Վորոյ նեղեալ չարչարէ՛
զնոսա ծածուկ զօրութբ։
Եւ նոքա աղաչէին զնա
զի մի՛ վրէժխնդրութի նց

Ճլզ. նախ

Նախ քան զժամանակն
լնելոյ ։
31 Խնդրեն անարգքն և
արհամարհեալքն մտանել 'ի
խոզսն։ և նա թոյլ տայ։
Սակայն խոզիւքն հան
դերձ 'ի խորս ծովուն պա
հէ զնս։ զի խորհեցան խո
զիւքն դառնալ 'ի տունս
նց։ Զայս տեսեալ դեր
դեսացւոցն երկեան թէ
դուցէ զնոյն կրեն ամենե
քեան նոքա։ և յայտնի էր
նց զի ոչ էին բաւական
բնակելոյ առ նմա մեծու
նր։ վս այսորիկ աղաչէին
զի գնասցէ 'ի նոցանէն։
Իսկ բժշկեալն երկեաւ
մնալ անդէն։ այլ կամե
ցաւ գնալ ընդ նմա։
Իսկ յս ասաց նմա մնալ
'ի նմին և քարոզել զզօ
րութն նր։ և ինքն մեկնեալ
'ի նմանէ դառնայ անդրէն։
Այլ ժողովուրդն ակնա
նէին նմա որ ոչ էին նա
խանձու չարութեամբ
ընդ նմա։

41 Ի նմին ժամու գայ իշ
խանն ժողովրդեանն.
և առ ոտանգի տրտմութեն
անկանի և աղաչէ վս բը
ժշկութեան ախտացելոյ
մանկանն։
Այս եղև զի յամօթ լի
ցին ժպիրհքն որք լրբութբ
հակառակէին ընդ նմա։
Որդ թէպտ և ոչ կատա
րեալ հաւատս ընծայե
ցոյց ժողովրդապետն, սա
կայն յս չառնելով անտես
զաղաչանսն, գնայ տալ
պարգևս ըստ խնդրողին
մտաց։ Այլ 'ի գնալն նր՝
այն որ ունէր հաւատս կա
տարեալս և վս ամօթալի
ախտին չհամարձակէր կալ
առաջի նր, 'ի ծածուկ ջնա
րեցաւ գողանալ զպար
գևս նր։ և մերձեցեալ 'ի
քղանցս նր՝ եհաս շնորհին
Իսկ յս զի մի՛ փնասեսցի
հաւատալ այն որ առողջա
ցաւ մարմնով՝ կարծել
թէ անգիտացաւ նա զգ
գաղտնի գործս նր. վս
իբրև ամէնքեն մերձեցեալ

նեղէին զնա մարմնով,
խնդրեաց զմինն որ մերձե
ցաւ ՚ի նա հաւատով։
46 Իսկ նա դողալով եկն
անկաւ առաջի նր և ամե
նեցուն ուսոյց այնպիսի
հաւատով մերձենալ ՚ի նա։
Գովեաց տրն և զքաջու
թիւն հաւատոց նորա։
Հաւատք քո աւէ կեցու
ցին զքեզ։
Գանասեն ժողովրդապե
տին, մեռաւ դուստրն քո։
Ասէ յս ասէ, մի՛ երկնչիր.
այլ միայն հաւատա։ զի
ուսցի՝ հաւատ, որպէս ար
ժան է այնպէս ընծայել
նմա։
51 Եւ յասելն բազմաց
թէ մեռաւ, ասէ, ո՛չ է մե
ռեալ. այլ ննջէ։
Երկոքումբք այսու՝ նո
րայն քարոզեալ լինի զօ
րութի. զի թէ յետ յարու
թեն խոստովանին զմահն,
խոստովանին և զայն թէ
յարոյց զնա։ Նպա թէ
սկսանին ուրանալ ՚ի պատ
ճառս անհաւատութե,
վկայեն ամենատես բնու
Գւ Ը

թեն. զի ինքեանք մերձ
դոլով գիտացին թէ մե
ռաւ. և նա իբացեալ դո
լով գիտէր թէ ոչ մեռաւ
այլ ննջէ։ Նյպիսեօք
յարուցանէ իմաստիւք և
հրամանաւ զմեռեալն ՚ի
հաւատ ամենեցուն յարու
թեանն։

*Գլուխ Իններորդ
Թ.


աղմէ՛ այնուհետև
զառաքեալսն
զօրանալ ՚ի վր
դիւաց և հալա
ծել զնս ՚ի մարդկանէ.
զի մի՛ միայն նա, այլ և
անուն նր զօրասցի առնել
նշանս. որ յատուկ այ է
միայն։
3 Պատուէր տայ ուսանիլ
թէ որպէս պարտ է լինիլ
սպասաւորաց բանին. զի
նախ մերկասցին յամէ և
այնմ քարոզք արքայութեն
լիցին։ Մի՛ ինչ պատե
րազմի ունիլ գործի և մի՛
բնաւ պարէն մարմնոյ.
որ է նշանակ անտերնչաց
ձեռ խա

խաղաղութեն։ Զգուշա-
ցուցանէ մի՛ լինել շրջօղ-
տանէ 'ի տուն. զի մի՛ բաս-
րեալ լինիցին իբրև որո-
վայնապարարս։ Եւ որ ո՛չ
ընդունիցին զն՟ն երկնային
ողջունի՟ն այնուիկ, տալ
զփոշին 'ի վկայութիւն.
զի ունիցին վրէժս տալ
անբերելիս 'ի հաւաստի
քննութեն։ Անսացեալ նց՟
այսր հրամանի, լնուն զայս
սպասաւորութի առաջի
նորա։

7 Եւ 'ի տարածիլ համ-
բաւոյն անազգան՝ լուեալ
հերովդէս ասէ առ ահին,
նա յովհաննէս է յարեաւ
'ի մեռելոց։ Իսկ յորժամ
վ՟ն նշանացն սկսան ասել
թէ եղիա է, կամ թէ այլ
ոք 'ի մարգարէից անտի յա-
րուցեալ իցէ, ապա և ինքն
իսկ հերովդէս ցանկայր
տեսանել զնա։

10 Յետ այսորիկ լցեալ
զայս պատուէր առաքե-
լոցն՝ դարձան առ նա. և
առեալ զն՟ն խոյս ետ նոքօք
լինել 'ի բեթսայիդայ։

Գլ՟ Թ

Արդ թէպէտ կամեցաւ
նա յանապատի անդ կալ,
սակայն ժողովուրդն ու-
րախացան 'ի բանս նորա.
և հրացեալ էին վ՟ն սքան-
չելեացն և զօրութեանցն
զոր առնէր և ո՛չ կամէին
բնաւ բաժանիլ 'ինմանէ։
վասն որոյ եկեալ ա՟մ ուս-
տեք ժողովեցան առնա։
Եւ այնչափ ժուժկալե-
ցին առնա կեալ, մինչև
պակասեցին կերակուրքն
զոր բարձեալ բերէին։
Ետես յ՟ն որ զանյայտսն
տեսանէ՝ թէ նեղին 'ի սո-
վոյ, և վ՟ն սիրոյ ն՟ր յամա-
ռեալ կան առնա, և չգտեն
ինչ զկարօտութի կերակ-
րոցն։ ապա և ինքն գթա-
ցաւ 'ի նոսա. այն որ ո՛չ եր
բէք պակասի գութ ն՟ր։
Չկամիմ ասէ արձակել
զդ՟ս նօթիս. գուցէ նւք
թեսցին 'ի ճանապարհին։
Եւ ապա հրամայեաց բազ-
մել նց՟. և եցոյց զհանդէս
զօրութե իւրոյ 'ի վ՟ր հացին,
անձեցուցանել զաակաւ-
րութի ն՟ր մինչև բաւել

ճ՟թ յա

յագեցուցանել զբազմու
թիւն զայն: Տայ և ժողո
վել զնշխարս կտորոցն զի
ունիցին զայն 'ի յիշատակ
սքանչելեացն: Եցոյց զայս
զօրութի 'ի դարձուածն ջա
րին որ հայցէր զքարինն
հաց լինել: Եւ զի մի՛ ոք
տկարասցի թէ ոչ ետ ըղ
ցանկութիւն մեղաւորին,
հաւանեցուցանէ աստ հա
ցիւն, և 'ի կանա դալիլեա
ցւոց ջրովն զոր փոխեաց
'ի գինի 'ի մէջ թակու
կացն:

Անցանէ անտի 'ի կող
մանս կեսարու.
հարցանէ զաշակերտսն 'ի
կալն իւրում յաղօթս,
եթէ զո՞ ոք կարծեն զնա
պարզամիտ ժողովուրդն:
Իսկ նոքա վս միրտուենն՝
յովհաննէս զնա կարծէին.
և վս նախանձուն՝ եղիա:
Նա զի և ակնունէին թէ
գայ եղիա առ նոսա:
Եւ վս որքուենն ասէին
երեմիաս է նա: Օ այս
լուեալ զայն ամենեքեան
պատասխանի ետուն:



Դարձուցանէ՛ ապա ըղ
բանն 'ի նմ. յայտ արարեալ
թէ մեծ խմաստու՟ի և դի
տու՟ի խնդրէ 'ի նոցանէ:
իսկ նք լուեցին:
20 Ապա հոգին հօր 'ի բե
րանն շմաւոնի խօսեցաւ
փոխանակ ամենեցուն:
ետ վկայու՟ի թէ նա է քսն
որդի այ կենդանւոյ:
Արդ վասն զի ետ ստոյգ
վկայութի՝ երանեցաւ.
զի ծանիցեն թէ ճշմարիտ
խօսեցաւ: Եւ 'ի վր այսո
րիկ հաւատոց՝ ետ նմա ըղ
փականս երկնից. և եդ
զխոստովանութիւն նորա
հիմն քրիստոնէութե ան
շարժելի յամ դժոխային
արկածից: Սաստէ՛ և աշա
կերտացն զի մի՛ տարաժամ
քարոզեսցեն զանուն նր:
Յայտնէ՛ և զայն թէ՝ պա՛րտ
է նախ չարչարիլ նմա և
ապա յայտնի լինել տրուե
նորա: Եւ յետ այնորիկ
համարձակութեամբ բառ
նալ հեթանոսացն չարչա
րանացն խաչ վս անուան
նր, և քարոզել յայտնապ

զա̃ծութ̃ն նր̃։ Բաժանել
զկեանս յօժարութեամբ։
ասա կորուսանել և ա̃ռ նը
մա գտանել։ Զի յիմարք
են որք զապականացու ն̃ես
բուռն հարեալ ունին զի
ժառանգեսցեն․ և՛ ի կայուն
և՛ ի մնացական ժառանգու
թենէ անտի զրկեալք՝ ժա
ռանգաւորք հրոյ և կորըս
տեան գտանիցին ՚ի հասա
րակաց քննութեանն։
Եւ զի մի՛ ոք նախատինս
համարեսցի՝ խաչելոյն եր
կիրպագանել․ այլ ընտ
րեսցէ պարծանս անձին
զապտակն․ զմերկանալն․
զքղամիդն․ զեղէգն․ ըզ
թուքն․ զփշեղէն պսակն․
զխաչն․ զբևեռսն․ զլեղին
և զմահն նախատանաց։
Ապա թէ ոք զայս լուեալ
ամօթոյ ինչ իրս համարես
ցի և ոչ կամեսցի կցորդ
լինել չարչարանացն, զահա
գինան առաջի դնէ։
26 Զնա ա̃ւ և որդի մար
դոյ յամօթ արասցէ յորժամ
եկեսցէ փառօք իւրովք՝
հօր՝ և ա̃մ հշտկօք ս̃բվք։

Գլ̃ Թ

Եւ զոր ՚ի յարութեն խօ
սեցաւ զի լիցի ոմանց
՚ի փառս լինել ՚ի յայտնել
արքայութե̃ն նորա յերկնից,
և ոմանց յամօթ և ՚ի նա
խատինս յաւիտենականս․
որք յայժմու ժամանակիս
ամօթոյ ինչ իրս համարե
ցան յանձին կրել զնախա
տինս նր̃՝ կամեցաւ աստէն
՚ի մերձակայիս փոքր ինչ
ցուցանել նոցա յանչափ
բարձրութէ̃ անտի փառաց
իւրոց։ Վ̃ո յառաջագոյն
խրատէ զի զգոյշ և պատ
րաստ լինիցին այժմու տե
սու̃ենս։ Զի ոչ են ճաշա
կելոց զմահ, մինչև տես
ցեն զօրինակ գալստեան
նորա․ յորժամ զամենայն
ստեղծուածս ՚ի մի վայր
ժողովեալ ցուցանէ զինքն
ա̃ծային իւր բնաւոր փա
ռօքն եկեալ։ Որդ այսմ̃
նախ կրթէ զնս̃։
28 Եւ յութերորդում
աւուրն ընտրէ երիս յառա
քելոց անտի և հանէ զնս̃
՚ի գլուխ լերինն յօրինակ
ութերորդի դարուն․

յորում այս խորհուրդք
զկատարումն առնուն։
Իսկ մատթէոս զի զվեց
աւուրսն որ՝ ի միջոցի անդ՝
միայն կարգեաց եդ, ունի
նա զվեցերորդի դարուս
խորհուրդ առաջին գա
լստեանն։
29 Արդ ելեալ՝ ի լերին
անդ, կայ յաղօթս. և յան
կարծակի փոխի գոյն երե
սաց նր՝ ի պայծառութի
սաստիկ լուսոյ՝ լուսաւո
րագոյն քան զարեգակն.
այնմիկ՝ զի զնորայն խախ
տէր ճառագայթս։
Եւ հան կացոյց՝ ի լերին
անդ զօրէնսդիրն զմով
սէս և զեղիա նախանձա
ւոր օրինացն. ՝ի յամօթ
և ՝ի յանդիմանութի նց որ
հակառակ օրինացն զնա
համբաւէին գոլ։ և ու
սումն վարդպետութե առա
քելոցն՝ նման նց լինիլ։
և՝ ի հաւատ փառաւոր յա
րութեն ըստ երևելոյ նց։
զի կենդանիք և մեռեալք
առ հասարակ յայտնեսցին
փառօք։ Ըստ որում մովսէս

և եղիաս։ Արդ՝ յահաւո
րութէ հրաշիցն՝ առաքե
լոցն ոչ զօրելով կալ՝ ի հաս
տատութե, թմրեալ անկան
յերկիր վս արհաւրացն
և զարմանալի տեսլեանն։
Եւ եհաս հոտ անմահութե
դրախտին և բուրեաց ՝ի նս։
Նորին աղագաւ պետրոս
զտաղաւարացն սկսանի խօ
սիլ. զի ցանկացաւ հանա
պազորդ յայնպիսի փառսն
տեսանել զնա հեռի յա
պըստամբացն։ Արդ զայս
ասաց՝ զի ափշեալ ոչ
իմանայր զինչ խօսէր։
Իսկ մարգարէիցն եկեալ
աղաչէին զնա զի կատա
րեսցէ զխորհուրդն վասն
որոյ և եկեալ իսկ էր. զի
պատառեսցէ զգիր պար
տեացն ադմայ։ Եւ եղև
այնուհետև մարգարէիցն
և առաքելոցն ՝ի մի միաւո
րութի։ Ըստ որում յեկե
ղեցիս միանալոց էին բանք
մարգարէիցն մրգրէութե և
առաքելոցն աւետրնութե։
Եցոյց նոցա այնուհետև
անձեռագործ խորան.

որ հովանի լինէր և լոյս
ուէր ոչ առնէր: Լինի և
ձայն բարբառոյ 'ի հօրէ՝
վկայեալ 'ի վերայ որդւոյ
զնա գոլ ընտրեալ. սիրելի
սերտ և ստոյգ որդի:
Զայս բարբառոյ զարհու-
րեալ աշակերտացն՝ զար-
կան յերկիր: Իսկ յս ձեռն
տայ և կանգնէ զնոսա:
Զոր ձայնն հօր ընկէց
'ի խոնարհ, ձեռն որդւոյ
կանգնեաց կացոյց 'ի հաս
տատութեան: Որդ էջոյց
զփառս իւր յառաջ քան
զանարգանսն: և պատուի
րէ աշակերտացն զի մի՝
յայտնեսցեն զայն 'ի նմին
ժամու. այլ պահեսցեն
իւրում ժամանակին յայտ
նութե:
38 Ի ժամուն յայնմիկ
այր մի լռ՝ անօրէնու
թե՝ մեկուսի գտեալ զա
շակերտսն, եած առ նոսա
զորդին իւր դիւահար. և
աշակերտքն ոչ կարացին
հանել զնա վս անհաւա
տոււն հօր մանկանն. զի
իբրև առ կախարդս եկն



առ նս. և նք ոչ էր յայտնի
անհաւատութիւն նորա:
Իսկ յս իբրև էջ 'ի լեռանէ
անտի և եկն առ նոսա,
Զառաջ եկեալ այրն ամ
բաստան լինի զաշկերտացն
թէ ոչ կարացին հանել:
Նա որ զծածուկսն
տեսանէ՝ ասէ, անհաւա-
տութիւն քո է պատճառ,
ընդէր չարախօսես զաշա
կերտսն: Զայս լուեալ
առնն՝ գայ 'ի հաւատս:
աղաղակեալ ասէ, հաւա
տամ տր՝ օգնեա և մի՝ յիշէր
զանհաւատութիւնս իմ:
Իսկ յս ետ հրաման ածել
զնա առաջի իւր. և թոյլ
ետ դիւին սաստկապէս շար
ժել զնա. և ապա սաստել
իշխանութբ հալածական
առնէ: զի տեսցեն և եր
կիցեն և գիտասցեն թէ
յորքան չար այսոց զեր
ծոյց զնս. և 'ի մէտ առեալ
մի՝ մոռասցին զերախտիս
բարերարուն նր:
Յայտնեաց այնուհետև
զերկրորդ չարչարա
նացն. և ծածկէ զի մի գի
ձխք

տաս

տասցեն։ Այլ վս այնորիկ
ասէ յառաջ, զի յետ լրման
խորհրդոյն գիտասցեն․
որով ունիցին և զայլս ու-
սուցանել։
46 Ի նմին ժամու սկսան
խորհիլ աշակերտքն թէ
ով ՚ի նոցանէ ունի զառա
ջին պատիւն։ Այլ տրն
ուսուցանէ զնս զվերջինն
ընտրել տեղի խոնարհու-
թեան․ զի այն է պատճառ
ստոյգ բարձրութեան։
Անմեղ լինել յամ չարեց
իբրև զտղայ որ ոչ է ըն
դունակ չարեաց․ զի այնպ
ունիցին զնա յինքեանս
բնակեցուցանել և զհայր
նորա ։
49 Ասէ յովհաննէս, վա՛ր
դապետ՝ տեսաք զոմն զի
յանուն քո դևս հանէր․
և արգելաք զնա զի ընդ
մեզ ոչ շրջէր։
Յաճախեաց շնորհք հո
գւոյն ՚ի ժմնակին յայնմիկ
և առ անարժանսն․ զի ա
մենեքումբք մեծասցի ա
նուանն յի։ Աս զի այս
պիսիք են պարգևքն այ,
Գլ․ Թ

յորժամ հեղու՝ բազում
անարժանք առնուն ձրի․
և յորժամ փակէ, բազում
արժանաւորք թափուր մը
նան։ Ոպ և ՚ի մարմնաւոր
պարգևս։ զի յորժամ տայ
առատապէս, չարք և բա
րիք վայելեն։ և յորժամ
սաստէ և արգելու, ամքն
կրեն զտագնապն։
Արդ ՚ի ժմնակին յայնմիկ
առատացոյց զզօրութիւն
իւր առ ամենեան․ մինչ զի
և որ ոչ շրջէր ընդ նմա՝
առնէր սքչելիս անուամբ
նր։ Դարձեալ և որդիքն
սկևեայ որ երդմնեցուցիչք
էին։ Այլ այնք՝ որ ասեն՝
յանուն քո զօրութիւնս
բազումս արարաք․ և լսեն՝
ոչ գիտեմ զձեզ մշակք
անիրաւութե։ Արդ այս
շնորհք խնամք այ են վս
փրկութե այնոցիկ որք ըն
կալան զշնորհսն․ զի գըր
գեսցին ՚ի սէրն այ, և
պատկառեսցին ՚ի շնորհէն
և լիցին պիտանիք ։
Իսկ յովհաննէս անգիտա
ցեալ զայս՝ արգելել զնա։
Թ․ Ձխտ բայց

Բայց որ եւս զշնորհս և
յայտնի էր նմա՝ ասէ, մի՛
արգելուք. զի որ ո՛չ է ձեր
թշնամի՝ ՚ի ձեր կո՛ղմ է:
Ո՟պ այն զոր ասէ, ո՛չ ոք է
որ առնէ անուամբ իմով
զօրութիւս և կարէ հայհոյել
զիս: Այ՟լ զի՟նչ եւս այսո՟
քիկ, ուր և պօղոս վասն
այնոցիկ որ կամէին նեղու
թիւնս հասուցանել նմա
՚ի վ՟ր կապանացն՝ խնդայ:
վ՟ս որոյ ասէ, ոմանք առ
հեստութ՟ե զք՟ս քարոզեն.
և կէսք ՚ի սիրոյ: և զի՞նչ
իցէ. զի եթէ պատճառա
նօք և եթէ ճշմարտութ՟բ՝
ք՟ս պատմի: և ը՟ այս խըն
դամ: փիլ I. 18:

51 Եւ ՚ի կատարել աւ՟
ուրց վերանալոյ նո՟ր՝
և ինքն զերեսս հաստա
տեաց երթալ յե՟մ:

Աւուրս վերանալոյն ՚ի
դէպ իմանալ զուեթն զայն
յորում ասաց, են ոմանք
որ աստ կան՝ որք մի՛ ճաշա
կեսցեն զմահ մինչև տես
ցեն զորդի փառօք իւրովք
Այ՟լ ՚ի կատարել աւուրցն՝



հաւ զերկին և վերացաւ՟
՚ի լե՟ռն. և վերացոյց զինքն
փառօք առաջի նոցա:
Կամ թէ զայն իսկ կամի
յայտնել, զի մերձ էր չար՟
չարանքն և մահն և յարու
թի՟ն և վերանալ՟ն ՚ի բուն
ստոյգ բարձրութիւնն:
Վ՟որոյ հաստատեաց զե
րեսս գնալ յե՟մ. զի անդ
պարտ էր կատարել ա՟մ
գրելոցն: ո՟պ ասաց, ո՛չ է
պարտ մ՟րգրէի չարչարիլ
արտաքոյ քան զե՟մ:

52 Եւ առաքեաց ՟է հր
րեշտակս առաջի երեսաց
իւրոց. իբրև մտին ՚ի
գիւղ մի սամարացւոց՝
պատրաստել ինչ նմա
կերակուր:

Վ ո՟յ առաքէ զն՟ս վասն
ունել և պատրաստել
զպէտսն. զի թէ և նա ինքն
անկարօտ էր ո՟պ և կամէր,
սակայն որ ը՟ նմայն էին՝
ընդ կարեօք էին. յաղագս
որոյ առաքէ զն՟ս զի պատ
րաստեսցեն. և նոքա ո՛չ
ընկալան զնա: Յաւելու
և զպատճառն ոչ ընդու՟

նելոյն. զի դէմ եդե̃լ էր
նորա ասէ գնալ յե̃մ։
Թերեւս՝ զի թշնամութե̃
էին սամարացիք ը̃ երու
սաղէմացիսն։ Արդ զայս
տնօրինէ ինքն՝ զի մի՛ ըն
կալցին եւ երկայնամիտ լի
ցի առ նա̃ ստահակութ̃ին.
ո̃պ զի յորժամ մեկնեսցի
'ի նոցանէ եւ ոչ ը̃ունիցին
զն̃ա՝ մի՛ կարի զայրասցին
աշակերտքն նր̃. այլ նմա
նեսցին հեզու̃ե վարդա
պետին իւրեանց։
54 Ասեն առ̃ աշակերտքն
նորա, կամի՞ս զի ասասցուք
եւ իջցէ հուր յերկնից
այրել զդոսա։
Զայս ասացին, թէպէտ
եւ խրատեալ էին 'ի նմանէ
մի՛ կալ հակառակ չարին,
այլ ո՛չ կարէին 'ի մտի պա
հել. քանզի անկատարք
էին նախքան զընդունելն
զհոգին։ Վ̃ս որոյ մոռա
ցեալ էին զայն որ ասաց,
որ ածէ ապտակ, մատո՛
զերեսդ մինչեւ յագեսցի։
եւ յօժարութեամբ մերկա
նալ որ կամիցին առնուլ։


եւ այսպիսի բարութեամբ
նմանիցէք հօրն ձերոյ բա
րերարութե̃ն։ Կամեցան
ըստ նմանութեան եղիայի
հուր իջուցանել 'ի վերուստ
տանջողական. եւ վրիժառու
լինիլ իբրեւ զնա։ Արդ
զայս ասացին՝ քանզի վըս
տա՛հ էին 'ի զօրու̃թի վարդա
պետին. եթէ զո̃մ ինչ բա
ճակնէ ո̃պ կամի վճարել։
այն որ մովսէս եւ եղիա
իբրեւ զծառայս եկեալ
կային առ նմա։
55 Զայս լուեալ յի̃՝
սաստեաց նոցա եւ ասէ,
ո՛չ գիտէք որոյ հոգւոյ
էք։ Սաստելովն զգաստա
ցուցանէ. ո̃պ ա̃մ ուրեք՝
եւ աստ 'ի բարեմտութիւն
կրթէ զնոսա. զի մի՛ ոք հա
մարեսցի զնա միայն բա
րեգործելոյ ունիլ զօրու
թիւն եւ ո՛չ տանջողական։
Ցուցանէ զայն 'ի թզենին
զոր ցամաքեցոյց. յայտա
րարեալ թէ խնայէ՛ 'ի մար
դիկ, սակայն ո՛չ իսպառ.
այլ՝ այլում ժամանակի
պահէ զվրէժխնդրու̃թին։

Նա՛ զայս ուսոյց աշակեր
տացն աստ երկայնամիտ լի
նիլ առ չարսն. և է ժամա
նակ յորում որք ո՛չ ընկա
լան զն՛ս՝ ընդարձակագոյն
լիցի երկրին սոդոմայեցոց
քան նոցա։ յորժամ չափի
դատաստան ն՛ր ը՛ գործոց։
Բայց այժմ սաստէ՛ տա
րաժամ վրէժխնդրութե՛ն.
զի մարդկեղէն մտաց ան
տակրութի՛ է և ո՛չ երա
ւանցն ա՛յ դատաստան։
Վ՛ որոյ կսկծեցուցանէ
յասելն, ո՛չ գիտէք որոյ
հոգւոյ էք։ ա՛յնմ որ պար
գևս բաշխէ, թէ այնմ որ
պատժէ։ ք՛զի է և առ այս
հոգւոյն գործակցութի՛
՚ի պատժելն և՚ի խպսակելն։
Ուսուցանէ նոցա և զայն
վ՛ն որոյ եկն յաշխարհս։
Ղուկ,
56 Որդի մարդոյ եկն ո՛չ
զոգիս մարդկան կորու
սանել, այլ կեցուցանել։
Զ՚ի այս գալուստ սեր
մանելո՛յ է ժամանակ և բա
րեգործելոյ զոգիս մարդ
կան. և երկայնամիտ լինիլ
Պ՛ղ Թ

մինչև՚ի ժամանակ հնձոյն։
Յորում ոմանք խրձունք
կապին նիւթ հրոյ լինիլ.
որք արտաքոյ բնութեան
որոմն գտան։ Նա՛ որք պա
հեցին զընտանի իւրեանց
բնութի՛, ցորեան գոլով՝
խնամով ժողովին, զի ՚ի
շտեմարանս պահեսցին յա
ւիտեանս։ Մարդ այսպէս
խրատեալ զաշակերտսն,
անցանէ անտի յայլ գիւղ.
լնուլ զոր ասացն, թէ յոր
ժամ հալածիցեն զձեզ ՚ի
քաղաքէս յայսմանէ, եր
թիջիք ՚ի յայլ։
57 Տեսեալ ոմն զնշանսն
ն՛ր՝ ասաց, եկից զկնի քո,
զի ինչս բազում ժողովես
ցէ։ Ասաց տ՛րն, այն քան
հեռի եմ ՚ի ստանալոյ ինչս՝
զի և ո՛չ տուն է իմ բնա
կելոյ. զոր և աղուեսք և
թռչունք ստացան։
Կամ թէ դևք աղուեսք
նենգաւորք՝ և որ թռչէին
յօդս՝ բոյն եդեալ որջա
ցեալ են ՚ի նմա. այլ ա՛ծու
թեն ն՛ր տեղի չէք բնակե
լոյ ՚ի նմա։
Ձխէ Իսկ

59 Իսկ որ խնդրեաց Թա
ղել զհայրն և դառնալ
առնա՛ ոչ ետ Թոյլ. զի մի՛
՚ի ժառանգուԹիւնն զբա
ղեալ կորուսցէ զլա՛ւա
գոյնան։
61 Ասաց միւս ևս ոմն՛
եկից զկնի քո. բայց նախ
երԹայց հրաժարեցայց
յընտանեացս։ Իսկ յս ոչ
Թողացոյց. զի մի՛ ՚ի հրաժա
րիլն՛ գուԹ ընտանեացն՛
և բանք գորովալիցք զոր
խօսիլ սովոր են նոքա՛ կա
պեալ արգելուցուն զնա
՚ի գնալոյն զհետ նորա։
Աու որ ասէ, ոչ ոքէ որ ար
կեալ ձեռն զմաճով ձգել
ակօս և յետս դարձցի՛
Թէ ուղղել կարիցէ։
Ըստ նմին և որք յաշխարհ
դառնան, ոչ կարեն ուղ
ղել զաշակերտուԹն նր և
քարոզ արքայուԹն լինել։
Այլ պարտէ ըստ նմանու
Թեն պետրոսի գնալ. զի
ոչ ինչ փոյԹ էր նմա վասն
գործեացն և ոչ վն բազ
մուԹե ձկանցն զորս ըմբռ
նեցին. այլ Թողին անդէն
և գնացին զհետ նր։

*Գլուխ Ընաբանին
Ժ.


ետ այսորիկ երևե
ցոյց տր և այլ ևս
եօԹանասուն և եր
կուս. և առաքեաց զնոսա
երկուս երկուս առաջի
իւր։
Զայս նկարեալ եցոյց
յօրինակի անդ ելից 15, 27
՚ի գալ ժողովրդեանն յա
ղիմ. ուր էին երկոտասան
աղբերք և եօԹանասուն
արմաւենիք. յորոց շնոր
հէր ըմպել ժողովրդեանն
և կերակուր պտուղ քաղցր։
Ըստ նմին օրինակի և ա
ռաքելոցն դասք՛ արբու
ցին հեԹանոսաց զջուրն
կենդանի. և կերակրեցին
զնոսա քաղցրուԹբ բանին
ճշմարտուԹն։
Դարձեալ, ընտրեաց նախ
երկոտասանս ըստ երկո
տասանից ցեղից որդւոցն
իսրայէլի։ և ապա եօԹա
նասուն և երկու՛ ըստ եօԹա
նասուն և երկու ազգացն

հեթանոսաց։ Յայտ արա_
րեալ թէ 'ի ձեռն սոցա
զամենեան զնս̃ որսալոց է
'ի փրկութիւն։ Մ̃ զի յայս
հայի ասելն, հունձք բա
զում են և մշակք սակաւք
Այլ թէ՝ աղաչեցէք զտ̃ր
հնձոցն զի նա օժանդակես
ցէ հնձողացն զի լցցեն զա
մենայնն։ Արդ գումարէ
զնս̃ թագաւորս 'ի վերայ
տիեզերաց. և նախ մաք
րեալ սպիտակացոյց զնս̃
'ի սաղիմ ըստ դաւթայ տե
սութենն։ և անտի սփռէ ը̃
բնաւս։ Յաւել ասէ և
եօթանասուն երկու։ առա
քէ առաջի իւր. և զնոյն
պատուէր տայ զոր երկո_
տասանիցն. մի' ինչ բնաւ
փոյթ ունել մարմնոյ պի
տոյից։

4 Այլ 'ի ճանապարհի տաք
ողջոյն ումեք մի' տայք։
Զտալ ողջոյն 'ի ճանապար
հի՝ այլ 'ի տունս նոցա,
զայն կամի յայտ առնել,
զի ոչ է նա վայրապար ող
ջոյն առանց զօրութեան
որոյ ազդումն ինչ ոչ է.

Գլ՛՛ Ժ

այլ յօդս հեղեալ լուծա
նի։ Այլ է ողջոյն նա մեծ
և երկնային և խաղաղու
թենն այ̃ միջնորդ. զոր ոչ է
օրէն վայրապար ընկենուլ
առանց վկայութե̃ առ այնո
սիկ որք ընդունինն զնա և
որք անարգենն։ Արդ տալ
զնա 'ի տունս պատշաճ է.
զի թէ ընկալցին՝ կեցցեն.
և թէ արհամարհեսցեն՝
ունին զփոշին վկայ թօ_
թափել 'ի նս̃ թէ կորնչե
լոց են։ Իսկ 'ի ճանապարհի
տալ զնա վայրապար է. զի
ոչ շահ ինչ առ անբարիսն
գործէ. և ոչ յանդիմա_
նել զանբարշտութիւն չա
րացն ունի։ Դարձեալ
թէ ոք ճանապարհ մեղաց
զանձն կացոյց և անարժան
այսպիսի ողջունին՝ տալ
ոչ է պատշաճ։

Այլ մի' ոք այսոցիկ մերձ
դիցէ զայն թէ՝ որ ըզ
բանն սերմանեաց՝ չարգել
'ի ճանապարհէն և ոչ յա
ռապարէն և ոչ 'ի փշոցն։
Այլ գիտասցէ, զի զբանն
խրատու ամենայն ուրեք

պարտ է ընկենուլ: Նաև
յաձախապէս առ չարսն,
զի ուսեալք եկեսցեն 'ի
լաւութի: Ապա թէ ոչ,
անպատասխանիք լիցին:
Իսկ ողջոյնն հաղորդութ՟
է սիրոյ և երկնաւոր խա
ղաղուե՟ն ընդունելութ՟ի·
զի ընդ նմին և տաւօղ խա
ղաղուե՟ն մնեալ հանգչի:
վ՟ա այնորիկ ասաց մի՛ վարկ
պարազի առ ճանապարհաւ
ընկենուլ զնա:
Տայ նոցա զօրութիւն՝
առնել նշանս, բժշկել
զհիւանդս: Ապառնայ և
որք ոչ ընդունին զնս՟:
Յարէ յայս և զայնոսիկ
որք զնոյն ինքն զնա ոչ ըն
կալան· և զբաղում զօրու
թիւնս նորա տեսին և ոչ
հաւատացին: զոմանս ան
ուամբ նշանակէ և եղկե
լիս կոչէ: Օ՟ ի տիւրացիք
և սիդոնացիք որք ոչ լուան
զպատգամս մարգարէիցն,
եթէ զսքանչելիս զայս տե
սեալ էին, հաւատս փոխա
րէնս նմա 'ի ներքս բերէ՟լ
էին: Բայց քորազին և
Գ՟լ՟ ճ

բեթսայիդա ուսեալ 'ի
մարգարէիցն և տեսեալ
աչօք, անհաւատ մնացին:
Եւ որք 'ի կափառնայում
բնակեալ էին, չար քան զսո
դոմացիսն ցուցան: Օ՟ ի
նոքա նշան ինչ ոչ տեսին
և կորեան· իսկ սոքա քանի՞
կորստեան պատժապարտք
որք և զարմանալիս տեսին
և ոչ զղջացան: Ա՟յ ասէ
ներելի է նց՟ պատուհասն
'ի դատաստանի անդ քան
զսոցայս: Երկիւղ արկանէ
և նախքան զդատաստանին
օր՝ մօտաւորացս· մի՛ բարձ
րասցիս ասէ ամբարտաւա
նիլ մինչև յերկինս, զի մի՛
'ի դժոխս իջցես:
Մխիթարէ առայս և զա
շակերտսն· հաւատարելով
զամ՟ որ ինչ իւր իցէ ենց՟·
'ի լսել և ոչ լսել· 'ի պա
տիւ և յանարգանս:
Նաև զհայր ևս ընդ իւր
'ի ներքս ածէ: Եւ բազ
մացուցանէ զամ՟ ուստեք
զնց՟ տագնապն և զսոցա
խնդութի՟ն:
17 Դարձան եօթանասուն
ճ՟ժ՟ և

և երկուքն խնդութբ և ասեն, տր՝ և դևք հնազանդին մեզ յանուն քո։

Իբրև առաքեցան և ոք ՚ի տնէ լնուլ զսպասաւորութին քարոզ լինել արքայութեանն, սկսան ցուցանել զօրութիւնս։ Եւ որ նախ քան զայս զարհուրեալքն էին ՚ի դիմաց, այժմ անուամբ նր հալածէին զդևս։ Եւ զինչ ևս զտոցայս ոք ասասցէ՝ որք ՚ի տնէ առաքեցան. ուր զի և որ ոչ առաքեցան՝ անուամբ նորա զարհուրեցուցանէր զդևս։ Գործ 19. 14։ Արդ այսպէս պարտ էր լինել ՚ի սկզբանն՝ զի զօրասցի աւետարանն յաղթել անհաւատութեն։ Ուստի և առաքելոցն պատահեալ այսմ մեծագունի զօրութեն անուամբ տն, դարձան առ նա խնդութբ իբրև շնորհապարտք պարգևացն նր. զի անուն նր հնազանդեցուցանէր նոցա զդևս։ Եւ առ այս զինչ յս։

18 Տեսանէի ասէ զսատանայ անկեալ յերկնից իբրև զփայլակն։

Յայտնէ՛ այնու հետև զայն ինչ որ անյայտ էր նց։ Իբրու թէ անկաւ ՚ի հաստատուն անտի իշխանութեն զոր կարգեաց իւր յերկրի յանտես առնելն նր. և իշխեց օդոյս այսու։ և եդ զաթոռ իւր յամպս նմանիլ բարձրելոյն։ Ես 44 Արդ՝ իջեալ ՚ի խոնարհ տրն բարձանց՝ ընկեց զնա ՚ի խոնարհ և կապեաց ըզհսկայն։ Ըստ այնմ թէ՝ իշխան աշխարհիս ընկեսցի արտաքս։ Այսպէս ընկեց զզօրաւորն և տկարացոյց զհզօրն որ պատերազմէր։ Կարողացոյց զտկարս ըստ զաքարիայ տեսութեանն։ եկեալ թզաւորն խորտակեսցէ զկառս յեփրեմէ և զերիվարս յհմէ. և խորտակէ զաղեղն պատերազմողէն։ Զաք 9. 10։ Զայս տեսեալ և Եսայիաս ասէ, յայնժամ բազում կաղք աւար առնուցուն։ 33. 23։

մանակին որդի կոչեաց.
վս՟ զի շնորհն մի անգամ է.
և յո՟մ ժամ շնորհս լինիլ
ոչ ունի. այլ յետ շնորհին՝
գործոց քննութիւն է։
Արդարութ՟ հատուցման
՚ի գալստեանն տն՟. յառ֊
նուլն համարս ստուգու֊
թբ՟, և ՚ի հատուցանելն ո֊
ղորմութեամբ։ Ա՟ որոյ
յայսմ առակի զգուշացու֊
ցանէ՝ յառաջ քան զգալն
և դատելն և չափելն ըստ
անիրաւութ՟ անիրաւացն։
զի այսպս միտս ստասցին
մերկանալ զանիրաւու֊
թիւնն։

Եղև առ՟ զնմանէ ամ֊
բաստանութի՟. ոչ թէ վատ
նիցէ զինչս նր՟։

Ե՞ ովք ոմանք են ար֊
դեօք ամբաստանօղքն.
և զի՞արդ ամբաստանութ՟
կարօտ է իմանալ զայսոնի
վարս ուրուք այն որ զան֊
երևոյթս մտաց տեսանէ
և նախ քն՟ զգործելն ինչ։
Որդ՝ թէպէտ և նա ամե֊
նատես է բնութ՟ և ոչ կա
րօտի եթէ գուշակեսցէ

դք, սակայն զի երկայնա֊
միտ է՝ ներէ ժամանակ ինչ
յանցաւորաց։ Իսկ մար
դիկ կարճամիտ գոլով,
՚ի չարութե՟ զոք տեսեալ
՚ի յափշտակութե՟ և՚ի նե
ղել զանանկս և յայլ ևս
գործս զազրալիս հեղեալ
անբարշտութ՟, ձանձրացեալք
յայսպիսեաց աստի զձեռս
ընդ երկինս ամբարձեալք
բողոքեն առ ած՟։ Ըստ այնմ
զի ասէ, զրկեալն ՚ի ձէնջ
աղաղակէ. և բողոք հըն֊
ձողաց ձերոց ել առ ած՟։
յակ՟ ե. 4։ Նաև հրեշտակք
որք կարգեցան յերկրի
պահապանք տանս շրջիլ
ը՟ մարդկան՝ են ամէ՟ մա
քուրք. և մինչ տեսանեն
ըզգարշ գործս անբարշ
տաց՝ տաղտկացեալք և նո
քա ամբաստան լինին առ
ա՟յ, զի մի՛ միշտ երկայնա֊
միտ լինիցի՝ այլ և վրէժ֊
խնդիր։ Ըստ այնմ, բար
կութի՟ սրտմտութե՟ տն՟
իբրև զհուր ձորալիր պա
րանոցաթաղ յորդեսցէ։
Եր՟ 30. 29. 30։ Ե՞ւ յայտ֊

նեւլոյց է բարկութիւնն այ
՚ի վերայ ամենայն անբա
րշտութե և անիրաւութե
մարդկան։ Հռոմ 1. 18։
Եւ դարձեալ՝ եթէ զմեծու
թն քաղցրութեն այ և ըզ
ներելոյն և զերկայնմտու
թեամբն արհամարհիցես,
չգիտիցես զի քաղցրութին
այ կամի զքեզ յապաշխա
րութիւն ածել. այլ ըստ
խստութեան քում և ըստ
անզեղջ սրտիդ՝ գանձես
քեզ բարկութի յաւուր
յայտնութե արդար դատա
ւորութեանն այ։ 2. 4։
Եւ կարի բազումք են այս
պիսիք ՚ի գիրս, որ զներելն
և զերկայնմտելն այ յայտնեն.
և դարձեալ զսաստ սպառնա
լեաց վրէժխնդրութեն։
Բազում և աստ ՚ի նե
րելն այ՝ ոչ զանգիտեաց
՚ի ցասմանէ անտի, մինչև
ամբաստան լինելով շար
ժեցին զտէրն ՚ի վրէժխնդ
րութիւն։
2 Մորոյ կոչեաց զնա և
ասէ, ՞ զինչ է այս որ լս
եմ զքէն. տուր զհամար
Գլ՛ ժզ

տնտեսութե քո, զի ոչ ևս
կարես լինել տնտես։
Մարդկորինաքար ձևա
ցուցանէ զքանն. ոպ թէ
լռեալ, և տակաւին ևս
յերկբայս է, և քննութե
կամի կալ ՚ի վր ստուգու
թեանն։ Արդ զայս կամ
կարգ բանիցն պահանջեց՝
կամ խրատել զմեզ կամե
ցաւ մի՛ վայրապար առանց
քննութե զոք դատել։
Այլ հաւաստի՝ քննութի
նր ՚ի յարքայութեան անդ
սահմանեալ է. յորժամ
ընդ բանից և ընդ մտաց
շարժման որք մտին ը մեզ
՚ի գերեզմանս մեր, համարս
տալ պարտապան եմք. այլ
աստ միայն կոչելն է, որով
լուծանէ ՚ի կենաց աստի։
Իսկ ասելն՝ ոչ ևս կարես
լինել տնտես, փոխանակ
ասելոյ եղեալ է, ոչ ևս է
մարթ լինել քեզ տնտես.
զի և ոչ է օրէն չարի ու
րուք եղելոյ՝ կալ ՚ի նմին
յորում անօրինագոյն գտ
աւ։ Զի զոր ինչ ընկա
լաւ ոք յայ՝ պարտէ մեծա
մեծ զգու

զպուշութե̃ հաստուցանել
ա̃յ մաքուր առանց խառ-
նակութե̃ չարեաց. իսկ որ
վատթարագոյն գտաւ, ե-
թէ հոգևորին էր վերա-
կացու կացել և եթէ մար-
մնաւորի ինչ մատակարար
եղեալ, ոչէ օրէն կալ 'ի
նմին. այլ տարաժամ բառ-
նալ, զի մի՛ ևս վատնիչ լի-
նիցի ա̃ծայնոց գանձուցն:
Նա՛ թէ զինչ օրինակ բա-
նից վատնիչ լինելոյն իցէ,
գիտեմ թէ ա̃մ ոք կարօղէ
առ որ հայեցաւ և ետես՝
և զբանն յօդել: յաղագս
որոյ մեզ ա̂ւելորդ է 'ի
գիր աստ կարգել: Այլ
յայն փութայ՝ զոր ինչ նե-
ղեալ առ վտանգի՝ առաջի
եդ, և ջնարեցաւ գտանել
զայն ինչ որ և 'ի նմին իսկ
'ի պահանջողէն վկայեցաւ
թէ իմաստութե̃ արար:
Որ և ամենեցուն փու-
թալի ցուցաւ:
3 Խորհեցաւ տ̃է 'ի միտս
իւր թէ զինչ արարից, զի
տ̃ր իմ հանէ զտնտեսութիւ:
(այս է՝ լուծանէ 'ի կենաց
Կ՛՛ Ծգ

աստի:) գործել ոչ կարեմ:
Օ 'ի չէք ինչ ժամանակ
ներելոյ՝ զի գործովք ա-
ռաքինութե̃ ըժանկ անօ-
րէնութեանն յանձնէ քե-
րեալ իբրաց ընկեցէ, և
փոխանակ՝ բարեաց գոր-
ծովք լցցի: Նա՛ յանխո-
փոխ կեանան մերձեալ ա̃մ
ինչ փակեալ մարդկան:
Նաև ոչ որ մուրանալն կա-
մի՝ գոյ տեղի: Մա̃յ ասէ՝
մուրանալ ամաչեմ:
Թէպէտ զամաչելն դնէ
առաջի վասն կարգին, սա-
կայն անդ ողորմութիւն
գտանել և կարի՝ լրբութ
ժտողին ոչէ. զի և ոչ մե-
ծատունն 'ի խնդրելն ըն-
կալաւ. և ոչ կուսանքն ո-
րոց պակասեաց իւղն:
Արդ աստ տակաւին 'ի մար
մնի գոլով, ծանեաւ թէ
ոչ ներէր նմա ժամանակն
գործել ինչ. և որ առաջի
կայր աշխարհն գնալոյ՝ ո-
ղորմութեամբ կալ ոչ ու-
նէր:
4 Ապա ասէ՝ գիտեմ զինչ
արարից: Նա՛ կոչեալ ըզ-
մի̃ պար

պարտապանս տ՟ն իւրոյ՝
ասէ ցառաջինն, դու քա
նի՞ ինչ պարտիս տ՟ն իմոյ։
Եւ նա ասէ, հարիւր մար
ձիթոյ։ Եւ ասէ ցնա, կա՛ ըզ
գիր քո և նիստ գրեա յի֊
սուն։ Ասէ և ցմիւսն,
դու՛ քանի ինչ պարտիս.
Եւ նա ասէ, հարիւր քոռ
ցորենոյ։ ասէ ցնա, կա՛ ըզ
գիր քո և գրեա ութ֊
սուն։
Գտէմք առակիս համօրէն
յայն հայի՝ զի զոր ադա֊
հութբ ժողովեաց՝ փութալ
սփռել և տալ աղքատաց.
և արտասուօք և խոստովա
նութբ անկանիլ առաջի տ՟յ
և հառաչանօք խնդրել ըզ
նա։ Բայց մեզ պարտ է
յարմար ըստ դրութե բա
նիցն և զթարգմանութին
մերձ կարգել, զի մի՛ ինչ
թերատեալ լիցի։
Ո՜ արդ գիտելի է մեզ
այս. զի իբրև աշխարհ
իմն է բնութիւնս. և յաշ
խարհի բնութեան՝ եղա֊
յարարչէն միտքս տնտես.
և պարտապանք տ՟ն են հո
գին և մարմինն։ և միտքն
իշխանական գոլով և կա֊
ռավար և ուղղիչ սոցա՝
յիւքն առեալ ունի զգիր
պարտեացն որով առ տ՟ծ
յանցաւոր գտաք։ Ո՜ որ
քան է 'ի հեշտութե և ու
նի զախորժական ախտակիր
բնութիս հարեալ 'ի սէր
աշխարհի, ոչ ինչ է նմա
փոյթ վասն սպառնալեաց
դատաստանացն տ՟յ. և ոչ
կամի տալ զգիր պարտեացն
'ի ձեռս հոգւոյն և մարմ
նոյն. զի խոստովանութբ
և ապաշխարութբ պատա
ռեսցեն։ Այլ ըստ նմա֊
նութեան այնր տնտեսի՝
հարկանէ զծառայակից հո
գին և զմարմինն՝ ուտել
և ըմպել ընդ պոռնիկս։
Մաղթանաց հոգւոյն պար
տականի ոչ անսայ. այլ
զմայլի 'ի ցանկութեց տարփ
կենացս. և փափաքեալ 'ի
մեղացն կապանաց՝ 'ի վեր
հայիլ և թեթևանալ 'ի
ծանր բեռանց մեղացն ոչ
կամի։ Իսկ ապա մերձեալ
պահանջօղն յայտնանէ որ
մէ

կոչէ տալ զհամար տընտե
սութեն, և ունի 'ի նմին ժա
մու անճնարին տագնապ
ցաւոց ըզ մարմինն. բար
ձեալ է և ցանկութի որով
հեշտացեալ յօրանայր.
ապականեալ որովայնն՝ ոչ
բաղձայ կերակրոց և ըմ
պելեաց. և զոր մատուցա
նեն՝ դժուարելով ի բաց
վարէ և զայժ համեղա
գոյնսն 'ի կերակրոց իբրև
'ի գարշ տեսլենէ տաղտկա
ցեալ: Սպառի և եռանդն
ցանկութեան պոռնկական
դիմօքն կախարդեալ. որք
իբրև կապանօք ձըգեին
քարշեալ իբրև զշուն տո
ռամբ. և ածեալ իբրև
զարջառ 'ի սպանումն. և
իբրև զեղջերու հարեալ
զլերդակողմն: — 7.22:
Իսկ յայնժամ առ վտան
գի ցաւոցն՝ և որք յոյժ
առաւելեալ են պայծա
ռութբ գեղոյ՝ չէ ինչ փոյթ
նորա: Նարձեալ է և սէր
պայծառ զգեստուց, և ոս
կւոյ և արծաթոյ ցանկու
թի. դադարեալ է փառա

սիրութի և նախանձ և մա
խանք: Նաև առաջի կայ ըն
քանելն զայս՝ և յայլ աշ
խարհ գնալոյն ճանապարհ:
Ստանգէ և ընդ ցաւոց
բնութեն կրից՝ և երկիւղ
անտի տանջանացն. և ամ
ուստեք տրտմականքն յա
ճախեն: Ապա այն որ անի
րաւութբ զամ ժամանակն
զհետ գնաց ախտիցն ցան
կութե՝ յայնմանէ պակա
սեալ՝ կոչէ յինքն զհոգին
և զմարմինն. տայ 'ի ձեռս
նոցա զգիր պարտեացն. զի
թերևս ճար ինչ լինիցի
թեթևանալ 'ի բեռանց
անտի և ազատիլ 'ի խղճէ
մտացն: Նաև առաջին՝ ասէ
հոգւոյն, քանի՞ ինչ են
պարտիք մեղացն: Նա վս
զի 'ի գլուխ էհաս ամ անօ
րէնութեան՝ զի հարիւրն
թիւ կատարեալ է: Աստ
որում և 'ի սերմանցս բա
րեաց պտղաբերութեան՝
'ի հարիւրորդն ժամանեց
թիւ. որ 'ի գլուխ ամ բա
րեաց էհաս և բովանդակ
զամենայն առաքինութիս

հաստոյց։ Բստ Նմին և աստ
որ 'ի գլուխ ամ՟ չարեաց
էհաս՝ 'ի հարխուրոյրդն ժա
մանեաց թի՟։ զի ոչ ի՟իք
պակաս 'ի չարեաց գտա՟։
Այ՟ ապա ցուցանէ բա
նի՟ն թէ՝ այնպիսեաց յան
ցանաց որ է՟ հոգին միայն
անցանեն առանց գործակ
ցութեան մարմնոյն՝ կէս
վնասուն թողեալ լինի։
Ա՟ զի թեթև և դիւրա
շարժ է 'ի մեղս, և դժ
ո՟արարգելլի վասն երա
գութ՟ բնական բերմանն.
և անժամանակաբար շաղի
ընդ ցանկութ՟։ Նորին աղա
գա՟ բազմ արժանանայ
շնորհի յարդարադատ
իրա՟անցն ա՟յ։
Նաև և միւսոյն, դու քա
նի ինչ պարտիս։ Իսկ նա
վ՟ զի և մարմնով ընդ ամ՟
էանց տեսակս չարեաց,
զնոյն թի՟ առաջի դնէ։
Արժանացուցանէ և զսա
շնորհի. սակայն սակա՟ա
գոյն քան զնորայն. զի մար
մին կարի՝ շաղի ընդ մեղսն
և առա՟ել հեշտանայ

Գւ՛՛ ժզ

դարշ ցանկութ՟ն։ և զոր
մարմնով ոք գործեաց՝ կա
մակար մտօք յանցեա՟.
վ՟ զի ունէր խափանել
զնա և ոչ կամեցա՟. այլ
յօժարութ՟ և արհամարհա
նօք օրինացն՝ զհետ գնաց
կորստական մեղացն։
Այ՟ զի մարմին ծառայա
կան և դժո՟արաշարժ՝ ժա
մանակի կարօտանայ և գոր
ծակցի լինել զցանկութ՟ն.
վ՟յ դիւրին է արգելուլ
զքերութ՟ նր. և բարեացն
խորհրդով իբրև սանձիւք
ընկրկել զանվայելուչ
յարձակութ՟ նորին։
Եանզի զինչ դժ՟ւրին է
արգելուլ զձեռս 'ի հեղ
լոյ զարիւն. և 'ի հարկանե
լոյ և 'ի զրկելոյ և յագա
հութ՟ և յորովայնամոլութ՟
և 'ի պոռնկութ՟ գէջ խառ
նակութեց. և որ սոցին նը
ման են և որ այլ ևս անօ
րինագոյն քան զնոսա։
Յորոց լուեալն և կալն 'ի
հանդարտութեան, և չա
փով մերձենալ 'ի կարևորա
գոյնսն դիւրին է. իսկ՝
մէջ ան

անչափ տաժանիլն ախտից ցանկութե՟՝ կարի՛ դժուարին։ Արդ վ՟ սոցին այսոցիկ կրից հաւաստի քննութե՟ն՝ փոքր ինչ ներե՛ և մեղացն մարմնոյ։

Դարձեալ ես քննելի է, զի՛նչէ զի նշանակաւ որոշեաց ձէթ և ցորեան լինիլ պարտեացն։ վասն որոյ չէ՛ պարտ վայրապար ընդ նիւթոյն բնութե՟ն անցանել, այլ խնդրել և աստ իմաստս։ Արդ զօրօրինակ զանկեալն ՚ի ձեռս աւազակաց՝ ձիթով և գինւով բժշկեց, նշանակեալ զօծումն մկրտութե՟ և ընդ կենդանարար արիւնն որով փրկեցաք։ Ըստ նմին և աստ՝ մեղուցեալ անձն՝ յետ աւազանին շնորհաց և հաղորդութե՟ մարմնոյ և արեանն՝ պարտապան սոցա դառ՟։ Այլ ՚ի ներելոյ ՚ի թողութե՟ ժամանակին վ՟ զղջմանն և պաղատանացն՝ և զոր ագահութե՟ն ըստացաւ՟՝ տալ կամելով կարօտելոց, զոր օծման մկրտութե՟ն պարտական դառ՟՝ կէս փասուն թողել լինի։ Իսկ զոր առ մարմինն տէրունական լրութե՟ յանցեաւ՟ անարժան հաղորդութե՟ն՝ ՚ի զղջման եղեալ՝ գտանէ և այնմ ներումն թողութե․ բայց սակաւ․ զհինգերորդ մասն միայն։ Ա՟ զի կարի ծանր է մարմնոյ և արեանն քի՟ հաղորդութի՟ն։ Ըստ առաքելոյն՝ փորձեսցէ՛ մարդ զանձն իւր և ապա ՚ի հացէ անտի կերիցէ և ՚ի բաժակէն արբցէ․ զի որ ուտէ և ըմպէ անարժանութե՟՝ պարտապան եղիցի մարմնոյ և արեանն տն՟։ Այլ որ ոք զօրէնսն մովսէսի արհամարհեաց, անողորմ դատաստանա՟ սասաջաւ՟ զի ամենայն ժողովուրդն սատակեսցեն զնա քարամբ։ ապա քանի՞ սաստիկ պատժոց են աւէ արժանի որ անարժան հաղորդեցան․ զի զորդին այ՟ առ ոտն հարեալ կոխեցին․ և զարիւն նորոյ ուխտին անսբ՟ և խառնակ համա

րեցին. և զհոգին շնորհաց թշնամանեցին: I կոր II:

Արդ այսպէս անչափ յանցանք են և ծանր փառաւրեանն ոյ պարտապան լինիլ անարժան հաղորդելովն: Բայց սակայն վասն մեծի մարդասիրութեն օրինակ ներելոյ առաջի եդ, զի մի՛ ոք 'ի մեծութենէ փառասուն հայեցեալ՝ անյոյս կորիցէ: Յաղագս որոյ խրատէ ողորմութեամբ և ցուցանէ զքաղցրութիւն բարերար կամացն՝ թէ յամենայնի՛ պարտէ յուսալ. թէպէտ և կարի անբաւ են պարտիքն և դադարեալ է ժամանակ ապաշխարութեանն:

8 Վոյ ասէ, գովեաց տէր զտնտեսն անիրաւութեան զի իմաստութեամբ արար: Իսկ արդ՝ եթէ գովելի՛ է նմա այս, մի՛ վերջացուք և յերկան մեր խնդրել զնա. թէպէտ և կարի՛ ծանունք են բեռինքն և բարձրացեալ քան զգլուխս մեր: Զի աշխարհիկ ինքն է

թողութեն շտեմարանապետ. և վս նորին զօրացուցանէ զառատութիւն շնորհին: Զի թէ և ոչ ունի արդարացուցանիլ մինչ զի ժառանգաւոր ոյ լինիլ, սակայն յայնմանէ ազատեալ է զոր ընդ մեջն կորել դատեցաւ. և զոր կապեալ ոտիւք և ձեռօք հրաման ետ հանել 'ի խաւարն արտաքին: Եւ արդ՝ կարի՛ մեծ է յայսպիսեաց ապրիլն: Եւ զի օգտակար է՝ ապաքէն նա ինքն գիտէ որ այսպիսի առակս յօդեաց. զի ոչ եթէ վայրապար ինչ 'ի նմանէ ասացեալ եղև. այլ վս զի ունի նա այսպիսեօքս տալ քանութի: Վս նորին և գովէ զտնտեսն անիրաւութեան յասելն, իմաստութեամբ արար:

8 Զի որդիք աշխս այսորիկ իմաստնագոյնք են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց:

Ս կայնեց իմաստնագոյնս լինիլ զգրաւոյն ինար փրկութեան քան զայնս մկթ

որոց և ոչ մի ինչ փոյթ է
զև մ՟ր ծնարիցն փրկութե՟ :
Մարդ՝ որդիս լուսոյ ան
ուանէ զհրշտկս մ՟ր պարզ
և անախտ բնութե՟ նց՟:
Այլ թէ զերկրդ մարդկան
ազգ իմաստնագոյն քան
զնս՟ ցուցան, անտի՛ առցես
զօրինակն՝ զի մարդիկ ան
կեալ 'ի փառաց և օտարա
ցեալք յայ՟, ծնարս գտին
ապաշխարութե՟ խնդրել
զած և մերձենալ առնա
անախտ կենօք առանց խը
րատու օրինացն: Որով
ծանեն թէ՝ զոր յանցանքն
օտարացուցին, գիտէ՛ ուղ
ղութին ընտանի առնել.
և 'ի ճանապարհէն յորմէ
խոտորելովն մոլորական դը
տան՝ ընդ նոյն հետս դառ
նալն՝ ունի՛ 'ի նոյն անվը
րէպ ածել: և զայս օրինակ
ուղղութե՟՝ բազմօք ունիմք
ճշմարտել: Իսկ որ 'ի դա
սուց անտի նոցա շեղեալ
անկան, այսպիսի ինչ նոցա
ոչ եղև. այլ ևս չարացան
անմտութե՟ : Այլ մի՛ ոք առ
այս ընդ դէմ դիցէ ասել՝



թէ մ՟ր զի ոչ է նց՟ մարմին
չարչարելի որ ստամնաբար
կրիւք արտասուաց և տըք
նութե՟ և այլոց առաքինու
թեց ուղղութե՟ ունիցին
Հաշտ այ՟ հանդիպիլ:
Մարդս 'ի դէպ է ասել,
զի թէ և 'ի նոյն տեղի ուս
տի անկա՟ ելանել ոչ ու
նէր, սակայն այլ ևս չարա
նալն կարի՛ անտեղի էր:
Ուստի օրէն էր իմանալ
թէ՝ այն որ վասն յանցա
նացն այնոցիկ յերկիր 'ի
խոնարհ ընկէց 'ի բարձրու
թենէ անտի, ունի նա նո
րին զօրութե՟ և ըստ յա
ւելուածոյ անհնազանդու
թեան նր՟ և չարանալոյն՝
յաւելուլ նմա հարուածս.
և դատաստանաւ մծ՟ բազ
մապատիկ չարեացն հա
տուցանել 'ի վերայ նորա
բազում և կարի ևս տան
ջողական նեղութիս:
Այլ նա յայսպիսեաց ինչ
զմտա՟ ոչ էած. այլ անմը
տացեալ՝ 'ի պատերազմողի
կարգ զինքն հաստատեաց
և եցոյց: Այլ և պատկերին


այ՟

այ մարտուցեալ՝ պատրանօք ուսոյց և նմա ապըստամբիլ. և հաւանեցոյց գործակից լինիլ իւրում անօրէնութեան: Այլ այսպէս չարասէր եղեալ՝ անօրէնութեամբ զբնութիւնս մեր ապականեաց. մինչև շարժիլ այ վրէժս հատուցանել նմա: Այլ այս է, զի պատրաստեաց նմա հուր տանջողական իմանալի բընութեան: Վասն որոյ թէ յետ անկմանն ապաշաւեալ էր զչարիսն և կացեալ էր 'ի հնազանդութեան այ և մերս բնութեան 'ի մերս կարգի, ապա այնպէս տանջանք ոչ պատրաստեին նմա:

Այլ արդ եթէ զայս իմաստութիւն ստացեալ էր՝ երանելի ոմն էր. զի թէպէտ և զդասն էլից և զտեղի փառացն կորոյս, սակայն բնութիւն ունէր անմահ և անապական և անկարօտ զոր ոչ եբարձ 'ի նմանէ յանկանիլն նորա:

Արդ այս է անիմաստութիւն նորա, և այս է իմաստութիւն մեր.

Գլ" Ժդ

զի գիտասցուք առ վտանգին խնդրել զած և դառնալ առ հայրն և գտանել խընամս յարարչէն և հաստանիլ թողութեան: Վասն այ ասէ, իմաստնագոյնք են որդիք յաւիտենիս այսորիկ քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց:

9 Այլ ես ձեզ ասեմ,
արարէք ձեզ բարեկամս
'ի մամոնայէ անիրաւութեան.
զի յորժամ պակասեսցի այն՝
ընկալցին զձեզ 'ի յարկսն
յաւիտենականս:

Զմամոնայ անիրաւութեան ասել՝ ոչ եթէ բնութեան նորա ասէ, այլ մտաց ստացողին. զի որ բնութեամբ չար է՝ նա երբէք բարի լինիլ ոչ ունի. իսկ որ զմամոնայ բարւոք մատակարարեն, զերկնից ժառանգութիւն նուէր ստանան: Այլ անիրաւ զնա անուանել այն իսկ է՝ ըստ որում և զակն չար կոչէ. և դարձեալ դուք որ չարքդ էք:

Սոքա ամենքն և որ ընդ սոյա՝ երբեմն չարանան ընդդէմ

մհա կա

կացեալ օրինաց տուողին,
և երբեմն 'ի բարիս ունին
զկեղումն՝ օրինօք դատա-
րակեալք։ Սակայն որոց է
իմաստութիւն և անսան խը-
րատու տոն, է նոյ ստանալ
զբարեկամս. այս է՝ բարե-
գործել ցնդելի և կորըս-
տական արծաթովն։ ըստա-
նալ զաղքատս բարեկամս,
և 'ի ձեռն աղքատաց զՔս։
Եւ է ժամանակ յորում
ասէ գնալ մերձենամք
յայն ուր ամ ինչ պակա-
սեալ է նոր ստացողին.
քանզի պակասեալ է 'ի ժա-
մանակի անդ գործելն.
վս զի հատուցման է ժա-
մանակն և ոչ գործոյ։ Պա-
կասի և առնուլ փոխ յու-
մեքէ կամ գտանել ողոր-
մութիւն նա և կարի յոյժ
հայցողին. քզի իրաւանց
են անուրքն և ոչ ողոր-
մութե։ Եւ ասա սահմա-
նեալ է ամ արդեանց տա-
ժանաբար հատուցումն և
գնել անդ զհուշումն ըղ
մերումն յանմեռասելի յորկան։
Վասն այսմ, մաձառեցէք

Պ․ Հզ

վկինչս ձեր և տուք ողոր-
մութիւն. և արարէք ձեզ
քսակս առանց հնանալոյ
և գանձ անպակաս 'ի յեր-
կինս։ Եւ ասա ասէ՝ արա-
րէք ձեզ բարեկամս 'ի մա-
մոնայէ զոր ստացայք ան-
իրաւութե։ Զի յորժամ
դադարին որ այժմս երե-
ւին, և յաւիտենականն
հասանէ ժամանակ, ընդու-
նիցին զձեզ։ Այն որ ա-
սացեալ է, քաղցեայ և ե-
տուք ինձ ուտել. ծարա-
ւեցայ և արբուցէք. մերկ
էի և զգեցուցէք։ Արդ
և այս առաւելութի՝ ոյ
խնամակալութեն է նշանակ.
զի ըղ ցնդելի նիւթս որ
յերկրէ ել և անդրէն 'ի
նոյն դառնայ, զսա մեզ
պատճառս բարեաց դնէ.
զի ոչ ասա միայն է պիտա-
նացու և լցուցիչ կարօտ
բնութեանս, այլ և զանձ-
կեանս նովաւ գնեմք.
և 'ի հանդերձելումն նովաւ
ժառանգեմք։

10 Որ 'ի փոքուն հաւա-
տարիմ է ․․․ և 'ի բազմին

ժ․Ա․ ՄՀԷ Հա

հաւատարիմ է. և որ 'ի փո
քուն անիրաւ է՝ և 'ի բազ
մին անիրաւ է։

Այս ընդդէմ այնոցիկ
բերեալ է՝ որոց բազում
մըլթերք ոչ են. և ակնու-
նին թէ՝ յայնմանէ զի չափ
նց բաւականինէ՝ զլանալն
ընդ դատաստանաւ ոչ է։

Այլ գիտասցեն զի ամ
ոք փորձի յորում է և զոր
ընկալաւ. և փոքունքն
տան օրինակ միացն բա-
րուն և չարուն առ մեծա
մեծս և բզումս։ Զի թէ
չար ոք ախտիւ ագահու-
թեան կապեցաւ ընդ սէր սակա
ւուն և անարգոյն, մի՛ բազ
բաղեսցէ ասել՝ թէ 'ի բազ
մին դադարի յարձակումն
բնութեան որ ը փոքունսն
կապեաց զնա. զի այնպէս
բնաւորեցաւ իրացն բնու
թիւն՝ թէ 'ի բազմանալ
ընչիցն և յաճախել մեծու-
թեան՝ ը նմին զօրանան և
ախտք խաւարեցուցիչք։

Արդ՝ զի մի՛ ոք այսու խա
բէութ անպարտ վրիժուց
զանձն վարկցի 'ի հաւատարի

Պ.լ՛՛ Տղ

քննութեն՝ նորին աղագաւ
զայս եդ. և զսոսկ ջուրն
ցուրտ հայցեաց և վարձ
խոստացաւ։ և որ 'ի տես
միայն հիւանդաց գնաց՝
և որ 'ի բանտի են, և փո
խարէնս առաջի եդ։ զի մի՛
ոք բնաւ վերջասցի և զըր
կեալ 'ի պարգևացն լիցի՝
կամ ազատ 'ի պատժոցն։

Ունի բանս այսու բնութ
և առ աստիճանս և շնորհս
մեծամեծս և փոքունս՝
հայցել նովին չափով իւրա
ւանցն։ Փորձել վս կարգի
բանիցն ձգտի տեսութիս
յայն՝ իմանալ թէ աստի
կենացս ամ ինչ անարգք
են և փոքունք. և թէ աստ
յայս հոսանուտս (որ յու-
նելն փաղփաղակի կորնչի)
անիրաւ դատք, անիրաւու
թիւն մեր այս՝ մերժեաց
զմեզ 'ի բազմաց երկնային
գանձուցն։ Ըստ այնմ,
մի՛ խաբիք, զի անիրաւք
զարքայութին այ ոչ ժա-
ռանգեն։ Վասն որոյ
յարէ 'ի նոյն։

ԺԱ. Իսկ արդ՝ եթէ յանիրա-

մհգ մա

մամոնային չեղէք հաւա
տարիմք, զճշմարիտն ձեզ
ո՞ հաւատասցէ։
Անիրաւ ասել զմամոնայ՝
առաջին բանիւքն ցու
ցեալ է. և աստ յիրաւունս
դատաստանի կարգեալ է
բանս. զի որք զփոքունս
զայս և զապականացուս
ոչ կամեցան տալ և գնել
զմեծն և զանապականն,
այլ խեղդեալ ցանկութե
նր կապեցան ընդ նմա,
իրաւամբք մերժեցան յան
տի փառացն որք ոչ սիրե
ցին զնա և ոչ ցանկացան
ստանալ զնա. որ է ճշմա
րիտ վն անլուծանելի և
անփոխանորդելի բնութեն։
Եւ աստ անիրաւ լինել
մամոնային՝ է անհաւատա
րիմ լինելն ստացողին.
քանզի զոր ինչ հաւատաց
ած ումեք՝ ոչ վն այնր տայ
զի անձամբ միայն ունիցի
վայելել ՚ի նմա. այլ սպա
սաւոր ածայնոցն կարգե
ցաւ գանձուց. և պարտա
պան է ըստ կամաց տուո
ղին սփռել և տալ աղքա
տաց. զի արդարութիւն
նր մնասցէ յաւիտեան. և
ինքն յետ աստի վճարե
լոյն՝ հասանէ ժառանգել
զճշմարիտն։
12 Եւ եթէ յօտարին չե
ղէք հաւատարիմ, զձերն
ո՞ տացէ ձեզ։
Ամ ինչ որ յաշխարհի է՝
չէ նա մեր. ոչ միայն յայն
մանէ. զի ցնդելի է, այլ և
անտի՝ զի ընդ լինելն մեր
ոչ տուաւ սա մեզ տեղի
բնակուե կամ վիճակ ժա
ռանգուե. այլ սեպհական
տուաւ մեզ դրախտին ան
մահ տնկոցն վայելչուի.
յարաժամ մնալ ՚ի նմին ան
լոյծ կենդանութեամբ՝
և յաւէժ մնալ առանց հը
նանալոյ և տկարուԹե։
Այլ խաբէուի օձին և
ծնապանդութին մեր՝ եած
զմեզ յօտարոտի յայս տե
ղի դատապարտուե ժամա
նակաւ չափելը և ոչ թէ
մշտնջենաւորել ՚ի սմա.
այլ յուսով ակնունել
անդրէն դարձին։ Աստ քա
ղաքավարել առաքինութբ,

և 'ի մերն բնակութ՟ հաւա
քել զմերձակայսս . և 'ի
սա՛ հայիլ իբրև յօտարո-
տիս և 'ի գժրիչ մերոյն .
և վաղագոյն զփախուստ
անդ ուղղել . և յափշտա-
կել զմեզ և զմերսն և ան
կապուտ մնալ 'ի վնասակա
րաց աստի բերմանցս։
Ապա թէ ընդ օտարիս աս
տէն կապեցաք ցանկութ՟
սորա՝ և զմերն ոչ ընտրե-
ցաք խնդրել, այլ գնացաք
զկնի սնոտի մեծութե՟ և
անվայելուչ հեշտութե՟,
և հաստատեցաք զգարշա-
պարս մեր 'ի գնացս երկ-
րաւորս, և սիրով կապե
ցաք ընդ ախտաւոր կրիցս՝
ունի և ա՟ծ արդարանալ
'ի բանս իւր և յաղթել
'ի դատելն։ վ՟ն զի բա-
նայ զայս 'ի մէնջ ոչ՟ թէ
ո՛չ է մեր։ Ա՟յ ո՛չ տայ մեզ
զմերն . զի ո՛չ կամեցաք գը
տանել զնա։ Ա՟յ թէ այս-
չափ էր դատաստանն, ո՛չ էր
կարի տաժանելի . թէպէտ
և լի՛ տրտմութեամբ . այլ
այն է մեծ և լի դառնութ՟



յորժամ կապեալս հանեն
զմեզ արտաքս՝ հրոյ և խա
ւարի առնել ժառանգս։
Արդ զայս հաւաստեօք
կնքեալ՝ յանձնարինան
հաստատէ զբանն . յեր-
կուս բնութի՟ս և 'ի կամս
հակառակս բաժանեալս .
զոր միոյն և միւսոյն հա
ճոյ լինիլ ո՛չ է։ զի 'ի խնդ-
րել զմիոյն կամսն՝ բաժա
նեաց զանձն 'ի միւսմէն .
որում հակառակ կամացն
գնալ ընտրեաց։ Այոցիկ
բանից ժամանեցին թշնա
միքն ճշմարտել զսա՛ . զի
ծառայք գոլով մամոնայի՝
սկսան անգոսնել զնա .
որոց պարտ էր զարհուրիլ
'ի դատաստանացն և մեր-
կանալ զախտ չար ցանկու
թեան արծաթոյն . նոքա
զչարեալք՝ պարսաւանս
դնեն նմա և հեգնեն ըզ
բանս ուղիղ վարդապետ՟ն։

Ա՟յ աւէ առնն։

15 Դուք էք որ արդարա
ցուցանէք զանձինս առա՟ջի
մարդկան . սակայն ա՟ծ գի
տէ զխորհուրդս ձեր։

Օրէնք այ են՝ որ ուսուցանեն մի՛ ինչ վ(ասն) մարդկան փառաց և տեսութե(ան) գործել բարիս. ապա թէ ոչ՝ յայ զանձն օտարացոյց. զի ոչ վասն այ՝ այլ վասն մարդկան է փոյթն։

Իսկ սոցայս կրկին չարութ(իւն) լցեալ. մի՝ զի ոչ ինչ գործեցին բարիս. և միւս և՝ զի ձևանային առ մարդկն թէ արդարք իցեն։

Նմն դատաստան ունին տալ ոչ վասն չարեացն միայն, այլ և վ(ասն) կեղծաւորեալ բարուցն որով խաբէին զմ(արդ) պարզամիտս ՚ի մարդկանէ։

Տէրս ասէ, ճանաչէ ած զմիտս ձեր. և անպարտս ոչ առնէ. այլ պահէ հատուցման ժամանակին և վրէժխնդրութե(ան) անքարոշտաց։

15 Զի որ բարձր է առաջի մարդկան, պիղծ է առաջի այ։

Այս բան համօրէն տիրել ոչ ունի, այլ միայն վասն որոյ գրեցաւ։

Այս այն որ ասէ, մի՛ դատէք և որով դատաստանաւ դատէք՝ դատելոց էք։ Մի՛ է թէ զուղիղ դատելն արգել, այլ միայն այնոցիկ սաստէ՝ որ գերանօքն իւռարեալք էին՝ և այնոցիկ որ գշեղմն ունէին՝ դատ դատիչ եղեալ՝ ծանր զանձինս առ նա ցուցանէին։

Բազում և զայս տեսցես. զի պիղծ են առաջի այ որ զամենայն հնարս հնարեն և միշտ ՚ի յայն հայեն զի պատուիս ՚ի մարդկանէ ընկալցին։ Բազում, ըզ փառս ՚ի մարդկանէ խնդրէք. և զփառսն որ նա միայն է այ՝ զայն ոչ խնդրէք։ Ապա թէ ոչ՝ ահա ըզ բազումս ցուցեալ է յարդարոցն և ՚ի զարմանալի առանցն պատուեալս ՚ի մարդկանէ, և ոչ վասն այնորիկ փոքրկանայ պատիւ նոցա յայ։ Զի ահաւասիկ նորուն տն առաջեալ է, ոչ կարէ քաղաք թաքչել որ ՚ի վ(եր)այ լերին շինեալ իցէ. և լոյս ոչ դնի ը(նդ) գրուանաւ։ Այսու ամենայնի

յայտէ՝ զի պիղծ առաջի
այ ատացաւ լինիլ այնո-
ցիկ՝ որ անձամբ անձանց
որսան զփառս։ Սկսանի
ապա ցուցանել նոցա թէ
օրինացն սահման լցաւ։
Ասէ,
17 Օրէնք և մարգարէք
մինչև ցյովհաննէս։
Իսկ արդ եթէ՝ի յովհան-
նու մկրտութենէն՝ օրի-
նացն պատուէր դադա-
րեաց, ապա յայտ է թէ
եկն տր օրինացն. ոչ եղ
ծանել, այլ ազատել։
Զի կամեցաւ օրէնքն ար
դարացուցանել զմարդիկ
և ոչ զօրեաց. իսկ քս ձրի
թողութբ շնորհօք արդա
րացոյց. և՝ի կատար եած
զօրինացն պատուէր։
Եւ զի մի՝ վս ձրի թողու-
թեան կարծիցեն թէ միշտ
նոյնպէս շնորհք իցեն,
յաւել և զայն եթէ՝ բռ-
նաբարեն զաւետարանն
քարոզել ընդ բնաւս։
Զի առանց ձգանց՝ ա-
ւետարանին շնորհն յամ ժամ
արդարս առնել և այ ըն

ծայել ոչ ունի։ Նա իբրև
եդ զայն թէ մինչև՝ի յով-
հաննէս էր օրինացն պաշ-
տօն և լռեաց, և արդ աւ-
ետարանն քարոզի, ապա
զգուշացաւ բանիւն՝ զի մի՝
խմասցին զաւետարանն հա
կառակաբար ունիլ զկամս
առ օրէնսն քակտել զնա։
Այ ասէ, հաստատունքս
այս որ կարծին մշտնջենա
ւոր կալ յէութե՝ դիւրին է
նոցա եղծանիլ, քան թէ
յօրինաց կամ ՝ի մրգրէից
միոյ գրախեցի անկատար
մնալ։
18 Պատուէ՛ դարձեալ և
այնու զօրէնսն, զի որ նո
վաւ կապեցան մարմինք՝
որոշումն արտաքոյ բնութ՝
շնուն գործէ յորմէ բա
ժանեցաւ, և առ որում
բնակեաց։
19 Այր ոմն էր մեծա-
տուն, և ագանէր
բեհեզս և ծիրանիս, և ու-
րախ լինէր առատապէս։
և աղքատ ոմն ղազարոս ա-
նուն՝ անկեալ դնէր առ
դրանն վիրաւորեալ. և

ցանկայր յագել 'ի փշրանացն որ անկանէին 'ի սեղանոյ մեծատանն։ այլ և շունք եւս գային և լիզուին զվէրս նր։

Առակիս բան՝ ոմանց այնպէս թուեցաւ թէ առանց էութեն բանք սոսկ ասացան և ունին զլրումն կատարման խորհրդոյն 'ի յարութեն անդ, յորժամ երկաքանչիւրոցն լիցի որոշումն և կարգի նոցա ըստ վարուցն հաւաստեօք հատուցումն։ Եւ յայնմանէ առնուն զկարծիս, զի մեծատունն տագնապէր տանջեալ, և ղազարոս կեայր 'ի հանգստեան։ Եւ ընդդէմ դնեն այսոցիկ՝ թէ նախք զամենեցուն յարութն և զդատաստանին ընտրութ՝ հատուցումն ոչ է. ոչ արդարոց ըստ արդարութեն նց և ոչ անբարշտաց ըստ նց վատթար գնացիցն։

Արդ զայս զմտաւ ածին և յայն ոչ կարացին հայել զոր մեծատունն մաղթէր նահապետին զի առաքեսցէ

Ղ" Ժզ

զղազար քարոզս և ուսուցիչ եղբարցն զի մի՛ և նք գայցեն յայն տեղի տանջանաց. և ասելն աբրահամու՝ ունին զմարգարէսն բանս՝ անտի ուսցին։

Եւ այս ահա 'ի յարութեն ոչ է. զի ամքն յառնեն. և ոչ եթէ աշխարհ ինչ է յայնմ ժամու որ քարոզ նց ոք լինիցի ուսուցանել զի մի՛ չարաչարեսցին կորնչիլ։ կամ թէ իցէ բնաւ այնոցիկ որ ընդ տանջանօք կապեալ իցեն՝ տեսանել զարդարս։ Արդ պարտ է մեզ ամենայնիւ կալ 'ի վր ուղիղ տեսութե բանիցս. և որքան հնար է՝ կրթել զմիտս յատակ տեսութե. զի մի՛ ինչ մտածութիւն ընդդէմ անկցի եղծանել հակառակաւն։ Սա որոյ իմանալ արժան է, զի բան առակի՝ փոխանակ օրինակ ասելոյ եդեալ է։ Եւ օրինակ՝ երբեմն յանշնչից առեալ է. որպէս որ զսերմանիսն արկանէ յերկիր։ Եւ է զի 'ի կենդանեաց.

ոչ ուռկան արկնել 'ի ծով։
Այլ երբեմն 'ի մարդկանէ
առ մարդիկ ․ ըստ որում
այգի տնկեալ մշակաց։
և այլք բազումք որ զնոյն
ունին։ Այլ երբեմն յեղե
լոց իրաց և 'ի հին պատ
մութեց առակս առաջի
դնէ․ ոչ երկու որդիք աբ
րահամու, և օձն կախեալ։
Արդ այսպէս առեալ է և
այս առակ յեղելոց իրաց։
Նմանեցաւ զարհուրեցու
ցանել և տալ գիտութիւն
այնոցիկ կենացն որք աս
տի իրաց վճարեցան։
Եւ այս պարտ է մերձ դը
նել զառաջին առակացն
զբանս ․ այն որ ցուցան
կարգ ունել։ Առաջին
դալ 'ի խնդիր կորուսեալ
ոչխարին, և դրամին։ և
ապա ածեալ լինի իբրև
զուարակ պատարագեալ
'ի վր անառակ բնութեն։
Այլ արդ կացուցանէ տըն
տեսս յորոց փրկեաց պա
տարագաւն։ Յայսցանէ
ոմանք արդարութեամբ
գնացեալս և ոմանք անիրա

ւուք՝ զորս կոչէ տալ հա
մարս։ Այլ յայտնի որ
զղջացան՝ գովեաց։ Այլ զի
են որ առանց ճարս փըր
կութե գտանելոյ գնացին։
Յայտնէ և զայնպիսեացն
վտանգս որ ընդունելոցն է
զնոսա 'ի լքանելն զայս․
և օրինակ դնէ ըզմեծա
տունն, զի ամենեքեան որ
չարք իցեն՝ մի՛ վն զի աստ
երկայնամիտ է ած՝ արհա
մարհանօք կայցեն․ իբրև
թէ միշտ այնպէս լինիցի․
և չկայ ինչ 'ի վերուստ դա
տաստանք և վրէժխնդրու
թիւնք։ Եցոյց զվտանգս
մեծատանն, զի անտի ուս
ցին որ ինչ պահել են դա
տաստանք այ 'ի վր անբա
րշտաց։ Դարձեալ՝ վն
զի երանեաց զաղքատութ
և զհալածական լինելն և
անարգանս կրել վն ան
ուան նորա, և եղկելի հա
մարեցաւ զմեծատունն՝
յասելն, վայ ձեզ մեծա
տանցդ, զի այսու կենօքս
չափեցաւ մխիթարութիւն
ձեր։ Արդ զայս երանութ

որ առ վշտացեալս, և զոր
պառնալիս որ առ փափկա
ցեալս՝ յեղելոց իւրոց մերձ
դնէ որ ինչ պատահեաց
յետ ասուի վճարելոյս զա
ղարու և մեծատանն։
Այլ զի Թանձրադոյն են
յօժարութ՟ մարդիկ և յե
րևելեացս առաւելագոյն
ըմբռնին ցանկութեամբ
քան Թէ յաներևութիցն։
Այլ էին յայնմ ժամու քա
հանայապետք և իշխանք
հրէիցն 'ի մեծութ՟ և 'ի
հանգստեան. և որ ը՟նմա
էին՝ 'ի Թշուառութեան։
վ՟ն այնորիկ առակեաց նա
զաշակերտսն իւր՝ 'ի ղազար,
և զնոսա 'ի մեծատունն։
Զի մի՛ սոքա տարակու
սեսցին 'ի նեղութ՟ իւր
եանց, և մի՛ նոքա զուար
ճասցին 'ի փառս իւրեանց.
այլ սոքա ղազարու հան
դերձեալքն մխիթարես
ցին, և նք՟ մեծատանն տան
ջանօք տարակուսեսցին։
Այսպէս և յետ նոյ՟ ամե
նեցուն լիցի խրատ բարե
պաշտութեան. զի մի՛ մե

ծատունք յօրասցին, և մի՛
աղքատք վհատեսցին։
Ասյ՟ դնէ զմեծատանն,
զի զա՟մ ինչ առատութ՟
ունէր. զգեստս պայծառս
և երևելիս. և կերակուրս
ամենալիցս. և ա՟մ ուստեք
հեշտալիքն յաճախէին նը
մա. և տրտմականք և ո՛չ
մի ինչ բնաւ ուստեք։
Այլ ընդ դէմ կարգնէր
սորա՝ ղազարուն կերք.
ամենայնիւ լի՛ տրտմութ՟.
և մխիթարութ՟ և ո՛չ բնաւ
ուստեք։ Արդ այս ս՟յ
նախախնամութ՟ն է. զի տայ
փարթամութ՟ անժուժկալ
լից, զի ունիցին այնու վը
ճարել զպէտս իւրեանց
և առաւելորդօքն հաղորդել
աղքատացն և դնել զան
տի հանդերձեալն։ Ա՟ս այնո
րիկ և զոմանս աղքատս
արար, զի տեղի լիցի մե
ծատանցն բարեգործելոյ
առ նոսա. և սպասկանացու
գոյիւքն ստանալ զմեծն
և զանապականն։ Ապա Թէ
չարասցին հեշտասիրութ՟
և ագահութ՟, վճարէ զնա

մերձակայից վայելմամբ.
և՛ի հանդերձեալն անպա
տասխանիս արարեալ պատ
ժէ՛ արդարութեամբն։
Եւ՛ աղքատք եթէ գոհա
ցօղք լինիցին, մեծի՛ հան
դերձեան և փառաց արժա
նացեալ ՚ի հատուցման ար
դարոցն՝ յաւիտենական
ունիցին զմխիթարութին։
Իսկ եթէ տրտնջօղք իցեն
և մօտք յօժարեալք ՚ի մե
ծութս, և ոչ անսան խրա
տու ասողին, մեծունի թէ
առի՛ գայցէ՝ մի՛ յօժարեա
ցին սիրտքձեր։ այսպիսիքս
կրեն զաղքատուե դժ
ուարին կիրս, և՛ի պար
գևացն այ զրկեալք են՚ի
հատուցման աւուրն։
Իսկ մեք աստ՝ աղաւթիւս
ուսանիմք զմարդի բարս
մեծատանն, և ըզ հասա
տուն միոս արդարոյն։
Զի ոչ սա խոնարհեցաւ
առնա և ոչ նայեցաւ ՚ի
վիշտս նր. և գաղանք ողոր
մեալ լիզուին զվէրս նր։
և ոչ նա զչարեցաւ ինչ ՚ի
նեղութե. այլ կայր հաս
Գլ ժգ

տատուն յուսով յայնքան
տառապանս։ Նորին աղա
գաւ սահմանեաց յամե
նայնիւ չարաց՝ և՛ի կատա
րեալ բարեաց՝ լինել իմա
սին. զի անպատասխանի
լիցի փափկացեալն։
Եւ՛ ոչ եթէ կարէ ոչ տե
սի ասել. որ քան զշունս
անողորմ եցոյց բարս. զի
և՛ի փշրանացն անկելոց
ոչ կամեցաւ բարեգործել
այնպիսում վշտացելոյ։
Եւ՛ զի մեծատունք ատես
ցեն զմեծատանն զչարուն,
և աղքատք ուսցին զար
դարոյն զհամբերութին
և մի՛ դժուարեսցին ընդ
աղքատութին զի մի՛ ընդու
նայն լինիցի։ Այս յարէ
յայս զկատարած ելից եր
կոցունց նց։
22 Եղև առ մեռանիլ աղ
քատին, և տանիլ զնա հր
րեշտակացն ՚ի գոգն աբ
րահամու։
Դադարեցին նեղուիքն
և եհաս հանգիստն. լու
ծան տրտմականքն և ժա
մանեաց մխիթարութին։
մհն Բար

Ուարձան վէրքն յորում
կեայր տաժանաբար, և ըն
կալաւ զնա կեանքն անա
պականս։ Յետ շանցն՝ հը
րեշտկացն սպասաւորութի։
Եւ յետ այնորիկ՝ զի ՚ի
դուրս մեծատանն անկեալ
դնէր, ՚ի նահպտին գոգն
գրգեալ հանգչէր։ Որոց
աստ սիրէ երկայնել ըզ
բանս վարդապետութե,
զգիրսն յօհաննու ընթերց
ցի զոսկեբերանին։

Մեռաւ եւ մեծատունն
և թաղեցաւ։

Անց և սորա հեշտալի
փափկութին. և զոր ու
նէր յերկրէ՝ յերկիր մը
նաց. և որ չարաչար ստա
ցաւ՝ մերկ գտաւ։ Ուրա
խութին և հանդերձիցն
վայելչութի և կերակրոցն
հեշտութիւնք եղծան. և
տրտմակինքն յաճախեցին.
և վիշտք և նեղութիւնք
բազմացան։ Զի յամենե
ցունց զոր յաճախեաց ան
ձին իւրոյ՝ եթէ բարեկամս
և եթէ ստացուածս, այն
քան միայն զօրեցին օգնել

նմա՝ զի պատուով զմար
մինն գերեզմանի ետուն։
Նորին աղագաւ և տրն ըզ
սորայս ասէ զթաղումն.
զի այնչափ էր սահման մե
ծութե նորա։ Ըստ այնմ,
ո՛չ թէ ՚ի մեռանելն իւրում
առաջէ ընդ իւր զամենայն.
և ո՛չ են փառք նր ընդ նմա.
այլ անձն նր ՚ի կենդանու
թեն իւրում պատուեսցի։
Եւ նախ քան զայս, տունք
նց ասէ՝ են գերեզմանք
նց. և անուանք նց յիշեն
միայն նոքօք։ Իսկ վն ար
դարոյն թաղման, չկամե
ցաւ ինչ ասել. զի անարգ
և առանց պատուի էր։
կամ թէ բնաւ իսկ և թա
ղեցաւ ո՛չ։ Զի թէ մինչ
կենդանին էր՝ այնքան վի
րօք էր զազրացեալ՝ զի
շո՛ւնք էին սպասաւորք.
և ՚ի մարդկանէ չէր ոք որ
մերձենայր առ նա ՚ի խնամ
արկել։ Ո՞վ ոք էր որ յետ
մահուն հողոյ տայր զմար
մին նր. այլ այնպ անթաղ
անկեալ դնէր։ Եւ մի՛ ոք
տակաւին ևս մարմին՝

զանթաղսն մարմնով տե-
սեալ դժուարեսցի ինչ:
կամ անարգ զոք թաղեալ՝
մի՛ երանեսցէ վասն պատ
ուակին թաղմանն անշնոր
հակալու մարմնոյն. այլ 'ի
վարսն հայեսցի, թէ ոգի
նր 'ի կենդանութե և 'ի
զգայութե յորում մասին
իցէ: Նու զայս զոր եդաք՝
ոչ եթէ սահմանեցաք վր
ձիռ ամենայն արդարոց
անարգ լինիլ 'ի մահուն,
և ծմ անբարշտաց պատ-
ուով ունիլ զգերեզմանս.
այլ միայն վս կարծմանցն
ասացաք որք յերևելիս
ևեթ հային, և իմանալեացն
չեն տեսօղք: Ապաթէ ոչ՝
բազմաց արդարոց քաղա-
վայելուչ են շիրիմք նց.
և անօրէնք անթաղ մնա-
ցին. և ոչ ինչ սոքա գրե-
ցան առ այ 'ի հատուցումն
նց: Իսկ մերս՝ միայն վս
զազրու կրից անարգ մար
մնոյն և բարետոհմութե
ոգւոյն եդաւ. և մեծա
տանն բարեկրութե, և որ
յետ այնորիկ վշտացն:

23 Այս ասէ, մինչ էր 'ի
դժոխս 'ի տանջանս, ամ
բարձ զաչս իւր և ետես 'ի
հեռաստանէ զաբրահամ,
և զղազար հանգուցեալ
'ի գոգս նր:

Որք տարակուսեալք վս
այսորիկ ասեն՝ թէ ոչ ոքէ
որ ունի զհատուցումն բա
րեաց ըստ արդարութեն,
և ոչ տանջանք ինչ են մե-
ղաւորաց նախ քան զյառ
նելն: Ըստ առաքելոյն՝ չե
ևս ընկալան զաւետիսն.
այ վս մեր լաւագոյն հա
մարեալ՝ զի մի՛ առանց մեր
կատարեսցին: Եբր II. 39:
Լուծ այսոցիկ տարակու-
սանաց դիւրին է լուծումն:
Քանզի ունիմք զայս հաս
տատուն՝ թէ սահմանեաց
նա օր՝ յորում դատէ զա
մենայն ոք արդարութե.
բայց զայս առցես օրինա-
կաւ աստի կենացս ամե-
նայնիւ անվրէպ տեսանել
և 'ի դժոխս: Զի նախք
զմանչն որոտնական՝ որով
լուծաւ մահ՝ և դժոխք
բացան՝ և արգելեալքն

արձակեցան, ամենեքեան
փակեալ էին ընդ իշխանու
թե դժոխոց։ Այլ թէպէտ
դոյին արդարք, սակայն ա-
ռանց պտրգելոյ ոչխարին
որով պատառէր դատա-
կնիքն ադամայ և բառնայր
պարտիք մարդկութեանն՝
ումեք ազատանալ ՚ի դժո
խոց օրէնն ոչ էր։ Վրոյ
Քս որում յաշխարհս յայս
զոր անիծիւք ժառանգե
ցաք՝ իմաստին բնակին չարք
և բարիք, և է սա մեզ տե
ղի դատապարտութե, և ոչ
են որոշեալ արդարքն ՚ի
մեղաւորաց, այսպ պարտ է
և վս դժոխոցն գիտել.
զի արդարք և մեղաւորք
արգելեալ փակեցան ՚ի նա
վս առաջին մարդոյն ան-
հնազանդութեն։ Բայց սա-
կայն Քս որում աստ ոմանք
չարչարեալ են ՚ի դիւաց՝
ոպ այնք որ ախտիւ մեղաց
գերեցան ՚ի նմանէ, և ան-
հնարին նեղութբ տանջեալ
են ոգւով, թէպէտ ան-
զգայացեալք ոչ իմանան
զոր կրեն զապականութին։
Գլ ԺԳ

Այլ են որք մարմնով չար
չարեալք են ՚ի նոցանէ.
ոպ որ կարկամեալ էր զոր
կապեաց սատանայ ամս
ութուտասն։ և որպ այն
զի ուր հասանէր զարկու-
ցանէր և փրփրեցուցանէր
և ՚ի հուր արկանէր և ՚ի
ջուր՝ զի կորուսցէ։
Այլ արդ՝ թէպէտ այսպէս
իշխեն ՚ի վր տկարացն,
սակայն սբքն սաստէին նց
և հալածէին իբրև զծա-
ռայս չարս և ապստամբս.
յորոց և ՚ի ստուերէն եր
կիւղիւ մեծաւ տագնա-
պէին։ Զայս օրինակ առ-
ցես և ՚ի դժոխս. զի է նա
ստորին սահման երկրի.
և ոչ է անդ հուր տանջո
ղական, և ոչ այլ ինչ տան
ջանք ՚ի վերուստ. այլ է՛
անդ տանջանք դիւացն։
Զի զոր աստ մեղօք և
անհաւատութբ ծառայե-
ցուցին, անդ անխնայ ան-
հնարին լլկանօք չարաչար
տանջէին. որպէս զմեծա-
տունն զայն։ Իսկ առ սբսն
և ոչ բնաւ մերձենալ հա
 մա

մարձակէին նոքա։ Զի
ըստորում մինչ մարմնով
էին հալածէին զդեւսն՝
վերին օգնականութ̃բն,
այսպէս և մերկ ոգւով
թեպէտ էին 'ի դժոխս, այլ
զդեւս չարս հալածէին նո
վին զօրութ̃բն։ քանզի չիք
ինչ տեղի թափուր ուր
ոչէ մերձ ձեռն ամենակալ։
Ըստ այնմ, եթէ յերկինս
ելանեմ՝ անդ ես. և եթէ
'ի դժոխս իջանեմ, և որ̃պ
յերկինս անդ մօտ ես։
Արդ այս̃պ ոգիք արդա
րոց 'ի ձեռին ա̃յ են, և ո՛չ
մերձենայ 'ի նոսա չար։
Եւ՛՝ բանակք հրեշտակաց
ա̃ն շուրջ են զերկիւղա
ծովք իւրովք։ Եւ՛ որ̃պ
յերկրի առ եղիսէի՝ տե
սաք, 4 Թագ 6. 17, և 'ի դը
ժոխս զնոյն օրինակ առ
ցուք։ յղ̃ս որոյ ասէ,
Ի մեռանիլ աղքատին՝ 'ի
հրշ̃տկաց բերեալ եղև
'ի գոգն աբրահամու։ իսկ
մեծատունն տանջեալ 'ի
դի́ւաց տագնապէր։ վ̃ս
առ վտանգին աղաղակէր,
Պ.լ՛՛ Տգ

հայր աբրահամ, առաքեա՛
զղազար զի թացցէ զծագ
մատինն 'ի ջուր և զովա
ցուսցէ զլեզուս, զի պապա
կիմ 'ի տապոյ աստի։
Արդ ըստորում ա̃ցաք
չիք ինչ 'ի դժոխս հուր
այրիչ, զի այս իւրում ժա
մանակին պահեալէ դի
́ւաց և որք նոցին հաղոր
դեցան չարեաց։ Այլ ա̃րն
զնեղութիւնն զոր կրէին
հոգիք անբարշտաց 'ի դի
́ւաց անտի՝ առակեաց 'ի
տապ։ Իսկ զղազարու զովա
ցուցանելն միայն ծայրի́
մատինն, և կաթիլ ջրոյն,
և զլեզուն և եթ՝ թերևս
զայն տայ նշանակ՝ զի առա
քեսցէ զղազար փոքր մի
հալածել զդևսն։ Որ̃պ և
աստ այսակիրք ապաւ́ինին
'ի յարս ս̃բս զերծանիլ 'ի
վտանգէն զոր կրեն 'ի դի
́ւաց։ Նոյնպէս և մեծա
տունն այն գիտէր թէ զօ
րութ̃բն այնու որով պա
հեալ լինէին արդարքն 'ի
խաղաղութ̃ե 'ի դի́ւաց ան
տի՝ ուզէր ղազար հալածել
մձե 'ի

'ի մեղաւորաց զդեւսն զի մի՛ տանջեսցին նոքա 'ի նմնէ: Ա՛յլ զի՛նչ արդեօք իցէ զի զանուն աղքատին ած ուրեք նշանակեաց բանին, իսկ զմեծատանն և ոչ բնաւ ուրեք: Արդ կարծելի է, թերևս 'ի պիտանեաց առաջնոց սբցն ուրուք անուամբ անուանեալ էր նա. և վասնորիկ լռեաց, զի մի՛ անուամբ բարի առն՝ անուանեսցէ ըզչարն: Այլ թէ՝ 'ի մերձակայիցն որ լսէին՝ էր ոք անուամբ մեծատանն, և խընայեաց 'ի նա զի մի՛ խռովեալ ամբոխեսցի կարծելով թէ առ նա՛ իցէ բանն: և վասնորիկ այսքան դատեալ եղև 'ի մէնջ: Այլ ժամ է այսուհետև 'ի վեճիւ բանիցն աբրահամու հայիլ որ լի՛ է արդարութ և կարի՛ դժուարին լսելեաց:

25 Ընկալար աւէ որդեակ դու զբարիսն քո 'ի կեանս քո. և ղազարոս զչարչարանս: վասնորիկ սա՛ աստ

Ղլ՛՛ ժզ

մխիթարի, և դու այդր պապակիս:

Ողորմութեանն այ չափ սահմանեալ է. և յաւիտենիւս այսու ձգի. և անդր ևս քան զայս անցանել ոչ ունի: Զի որչափ յաճախէ՛ ոք 'ի մեղս և զղջացեալ անկանի առ ած, առ դարձուցանէ օրինօք ընկալեալ: Ապա թէ ընդ մեզ մտանեն մեղքն մեր 'ի գերեզմանս մեր, այնուհետև նախանձ հրոյն է որ ուտէ զհակառակորդս. և ոչ է գըտանել ուրուք արտասուօք թողութի: Այ և աբրահամ որ կարի ողորմած էր՝ առ նա անողորմ դատաւ. և որ առ սոդոմացիսն գըթացեալ խնամարկէր և բազում մաղթանս առաջի եդեալ այ կամէր այնու խոնարհեցուցանել զած 'ի ներելն, սակայն աստ դատաստանօք խօսի և արդարութե դատէ: Ընկալար աստ զմխիթարութին քո 'ի կեանս քո. և ղազարոս ըզչարչարանս: Ագահեցեր

մձզ ա

ասէ ժողովել մթերս բա
զումս շռայտիլ և փափ
կանալ․ և բարեգործել
առ կարօտեալս ոչ հաճե
ցար։ Դու ինքնին ուսու
ցեր թէ ոչէ պարտ վշտա
ցելոց առնել խնամակա
լութի։ Նման այսորիկ
սա աստ մխիթարի, և դու
այդր պապակիս։
Յայս հայի և յայտնութ՟
մարգարէին եղեալ։ Վ՟յ
ասէ՝ վայ որ ագահէ զագա
հութ՟ չար տան իւրոյ․ դը
նել ՚ի բարձունս զբոյն իւր․
կորզել ՚ի ձեռաց չարաց․
խորհեցաւ զամօթ տան քո
ամբ 2. 9։ Ս՟ սորին և ՚ի
տախտակի գրել ասաց զի
ընթերցեալ ուսցին, և մի՛
անմտութ՟ գնասցեն զհետ
ցանկութեց․ զի մի՛ կատա
րածի այսոցիկ՝ դժնդակ
կրից պատահեալ՝ անլու
ծանելի ունիցին զվրէժս
իրաւացի հատուցմանն։
Զի նեղելոյն եղև ընդ
արձակութ՟ հանգստեան․
և որ փափկանայրն՝ անբե
բելի՛ էհաս տանջանացն։
Պ՟ղ ճգ

Զայս և առաքելոյ հաս
տատեալ է իրաւացի դա
տել, յասելն, պա՛րտ է ա
ռաջի ա՟յ հատուցանել նեղ
չաց ձերոց նեղութիւն․
և ձեզ նեղելոցդ հանգիստ
ընդ մեզ։ 2 Թես 1. 7։
Աստ այսմ և նահապետն այն
նախ զերանունս կարդեց
եդ, և ապա յանձնարինսն
անանդեաց զբանն․ իբրու
թէ վհաւ արգելեալ փա
կին նոքա։ Վ՟յ ասէ,
26 Ի վ՟ր այսր ամենայնի
վիհ մեծ է ընդ մեզ և ը՟ձ
ձեզ․ զի ոչ աստի առ ձեզ
անցանել կարեն, և ոչ
այտի առ մեզ ոք կարէ
անցանել։
Արդ մի՛ ոք ընդ այս
տարակուսեսցի․ քանզի
է այս և ՚ի միում քաղաքի
տեսանել զոմանս ՚ի դա
հոյս յօրացեալս և ՚ի սպա
սաւորաց շուրջ լեալս և
պատուեալս․ և ոմանք ՚ի
կապանս և ՚ի խորին արգե
լարանս փակեալս։
Զայս առցես ինձ և ըղ
ղազարու և զմեծատանն
մձէ վր

վհաւ՛ 'ի բաց պարսպեալս
գոլ 'ի միմեանց։ Ա՛ւ արդ՝
անձին անյոյս փրկութ՟ե
եղեալ՝ ապա սկսանի մար
դասէր բարս ցուցանել.
որով խնամարկէր ազգ-
այնոցն. յաղագս որոյ
ասէր։

27 Աղաչեմ զքեզ հա՛յր
աբրահամ, առաքեա՛ զղա
զար 'ի տուն հօր իմոյ. զի
են իմ անդ եղբարք հինգ։
զի տացէ նոցա պատուէր.
զի մի՛ և նք՟ գայցեն յայս
տեղի տանջանաց։

Յորում ինքն վտանգել
տագնապէր, ուսաւ՛ թէ
լաւ՛է զա՟մ ժամանակս կալ
'ի տառապանս. քան թէ
տիրել ա՟մ ծագաց երկրի՝
և 'ի կատարածի հասանիլ
այսպիսի դժնդակ կրից։
Աստայնմ, զի՞նչ օգուտ է
մարդոյ եթէ զաշխարհ ա՟մ
շահեսցի և զանձն իւր տու
ժեսցէ։ Ուստի ընտրելի է
որ ոք միտս ունի՝ զա՟մ ըղ
կեանս իւր լնուլ կոծով.
և զա՟մ աւուրս տրտմութ՟
և արտասուօք և տքնութ՟

հաշել զանձն. և թեթև
համարիլ զա՟մ նեղութիս.
և չգրել ինչ բնաւ՛ որ ինչ
յաշխարհի իցէ. այլ զա՟մ
մերկանալ զաստի կենացս
հեշտալիս. և ա՟մ նեղութեց
տալ զանձն յօժարութ՟.
և զայն խնդրել միայն՝ ո-
րով հնա՛ր իցէ զաղէտս տա
րակուսանացն այնոցիկ 'ի
բաց քերել յանձնէ։

Ա՟որոյ 'ի փորձոյ ուսեալ
զայս մեծատանն՝ աղաչէր
զի քարոզ զղազար արձա
կեսցէ եղբարցն՝ պատուէր
տալ։ Յորոց ինքն զփորձ
էառ և ծանեաւ՛, կարծէր
և եղբարցն զնոյն միտս ու-
նիլ և հաւատալ թէ ար
դարև այնպէս իցէ. և տալ
զանձինս առաքինութեց.
մերկանալ 'ի ցանկալեաց
աստի։ և զայն անգիտա-
նայր թէ և եղբարքն՝ նո
րին ախտիւ՛ն ըմբռնել են
և ո՛չ հաւատան։

Այլ թէ զի՞նչ եղբարքն
իցեն՝ զա՟մ բնութիս իմա-
նալ պատշաճէ. և հինգ
վ՟ս զգայութեցս թուոյ։

Զի մի՛ աչօք խաբեալ
ըմբռնեսցին 'ի հեշտալի
տեսութեց. և մի՛ ականջօք
'ի պատիր բանից. և մի՛ լե
զուաւ 'ի բանս չարս. և մի՛
շօշափելեօք 'ի գարշ ցան
կութիւնս։ զի մի՛ և նոքա
այսպիսեօք ընկղմեալ ախ
տիւք՝ 'ի նոյն հասցեն տե
ղի տանջանաց։ Կամ թէ
արդարև էին նո՛ եղբարք՝
որ նորին անիրաւ և չար
մեղօքն վարեին. որոց ո
ղորմեալ աղաչէ՝ զի առա
քեսցէ զղազար խրատել
զնս։ Եւ առ այս զինչ առ
նէ պատասխանի։
29 Ունին ասէ ըզ բանս
մովսէսի և այլոց մարգա
րէից. անտի ուսցին զհան
գիստ արդարոց և զտան
ջանս մեղաւորաց։ Եւ
այնպս կարող են եթէ կա
մին՝ ապրեցուցանել զան
ձինս. քանզի լի՛ են ամ
բանք մարգարէից ած
ածեղէն իմաստիւք. որ
սաստեն սպառնան թանձ
րագունից մտօք՝ և որք
շաղեալք են ը գիձական
ախտիցն. զի ուսեալք զեր
կիւղ տանջանացն՝ հեռաս
ցին յապականացու կրիցն
մեծաւ զգուշութեամբ։
Յայտնեն և զփառս ար
դարոց. զի ցանկասցին հա
սանիլ փառացն. և մի՛ խա
ւարաւ անգիտութե ընա
ցեալ՝ հասցեն կորստեան։
Իսկ նա վասն զի գիտէր
որոց և ո՛չ ինքն լուաւ մար
գարէիցն, ասէ, ո՛չ հա՛յր
աբրահամ. բայց եթէ 'ի մե
ռելոց ոք երթեալ խօսես
ցի ընդ նս. և այնպ հաւա
տան և ապաշխարեն։
Եմ ոք յորոց կրէ՝ 'ի նոյն
և զայլս կարծէ. զի մինչ
'ի մարմնի էր՝ առասպելք
թուէին նմա բանք մար
գարէիցն. վս զի սէր ըն
չիցն և այլոց հեշտութեց
առ ինքեանս ձգեալ պա
հէին զնա։ Եւ յայնժամ
մերկացեալ 'ի մարմնոյն և
ազատեալ 'ի բռնութենէ
ախտիցն և զգաստացեալ
'ի չարաչար կրիցն որովք
տանջեալ լինէր 'ի դիւաց՝
կարծէր եթէ զայս ամ

լուեալ ՚ի մեռելոց ուրուք
առն ն՟ գնացելոց, հա՛ւա
տան և ապաշխարեն զեր
ծելք յայնպիսի վտանգից։
Բայց աբրահամ քանզի
գիտէր եթէ հաւատարմա
գոյնք են բանք մարգա-
րէիցն քան զմեռելոց յա-
րուցելոց, վ՟յ ասէ։
31 Եթէ մովսէսի և մար
գարէիցն ոչ լսեն, և ո՛չ
թէ ՚ի մեռելոց ոք յառնէ
հաւանեսցին։
Ե՛ւ զխ՟րդ ունէին հա-
ւատալ մեռելոյ յարու-
ցելոյ մարդիկ, որ ա՛յնքան
անհաւատութ՟ և ցանկութ՟
աշխարհի վարակեալք էին,
մինչ զի զբանս մրգրէիցն
չգրէին ինչ։ Ը՟մ, զբանս
տ՟ս խոտան համարեցան։
Զի ահաւասիկ մարդ ոք
՚ի մեռելոց յարուցեալ
զոր ինչ և խօսի՝ մարդո՛յ են
բանք. բայց մարգարէիցն
հոգւոյն ս՟յ բանք են զոր
խօսեցան։ Քանզի պատ
գամաւորք ա՟յ էին և անաւի
առեալ խօսէին նոքա. զի
երկիւղէն ՚ի տանջանաց գե

հեննին և պխտանիք լինի-
ցին։ Այլ ցանկացին բա
րեացն հատուցման և ու-
ցին մոռանալ զաստի հեշ
տալիս. և յօժարամիտք լի
նիցին բարեգործել ա-
ղքատս վ՟ս երանելի յու-
սոյն և կատարածի հան-
դրստեան արդարոցն։
Իմլ յայսոսիկ ո՛չ թէ
միայն ոչ զղջացան, այլ և
անարգանօք և չարչարա-
նօք բարձին զն՟ս ՚ի միջոյ։
Եւ ըստ նորուն ո՟ն ասելոյն,
առաքեաց ծառայս՝ զի ՚ի
պտղոյ այգւոյն առցեն.
և նոցա կալեալ ըզ նոսա
սպանին. և զոմանս անար
գանօք յուղարկեցին։
Արդ՝ որ մրգրէիցն զայս
հատուցին, մեռելոյ ուրուք
լուիցեն՞։ ո՛չ ապաքէն ըզ
նոյնս առնեն և ՚ի մեռելոց
եկելոյ առն ն՟ս հաւացնել։
Արդ վ՟ս զի յամառեալ
պնդեց մեծատունն ասել՝
եթէ զմեռեալ ոք տեսա-
նեն յարուցեալ որ խօսես՟
ցի ը՟ նս՟, լուեալ ՚ի նմանէ
զայս որ ասէ նեղութ՟ի,



երկուցեալ ապաշխարեն։
Իսկ աբրահամ ըստորում
յայտնի էր նմա՝ ասաց, որ
մարգարէիցն ոչ անսան բա
նից, և ոչ մեռելոյ ուրուք
հաւանեսցին լսել։
Նա՜ զի մ՛ թուեսցի ու
մեք եթէ ուղիղ իմցա՜
զայս ասել մեծատունն՝
թէ զմեռեալ ոք տեսանէին
յարուցեալ որ պատմէր
զանտի կենացն՝ հաւատային
ասացելոյն և զղջացեալ
ապաշխարէին։ Այնորիկ
զի արդարացուսցէ զբանն
աբրահամու որ վկայեաց
թէ ոչ լսեն, կոչեաց զղա
զար 'ի գերեզմանէն և կոր
զեաց 'ի դժոխոց, և էած
կացոյց 'ի մէջ նց կենդա
նացեալ․ զի խօսեսցի ընդ
նմա հաւատալ և ապաշխա
րել զի կեցցեն և մ՛ կո
րիցեն։ Իսկ եղբարք մե
ծատանն՝ քահանայապետք
և ծերք ժողովրդեանն՝
խորհեցան զի սպանցեն ըզ
յարուցիչն զն և զոր յա
րոյցն զղազար։ Այս քան
ապառում և վայրենամիտ



եղեն․ և յայսպիսի անհա
ւատութի ձգեցան։ վորոյ
'ի նոյն յարեալ ասաց առ
աշակերտսն։

## * Գլուխ Ընծաբանին
## ժԱ․



'չէ մարթ չգալ
գայթակղութե․
բայց վա՛յ այնմիկ՝
յոյր ձեռն գայցէ
գայթակղութիւն։
Արդ այսոքիկ՝ բովէքքըն
նութեն են․ զի զտեալ
փորձքն յայտնեսցին, և
վատթարքն յանդիմանես
ցին։ Ըստ առքլոյ, պա՛րտէ
գալ գայթակղութե, զի որ
ընտիրքն իցեն 'ի ձեզ՝ ե
րևեսցին։ Իսկ առիթն՝
ոչ իբրև զպաստաւոր հար
կին անպարտ 'ի լաւագունի
մասին եդեալ է․ այլ եթէ
ընկեսցի 'ի խորս ծովու
ծանկել զանձն իւր՝ լաւ է
նմա, քան թէ այսոցիկ դա
տաստանաց պատժապարտ
գոլ։ Նա՜ զի այսպիսի դա
տաստանք են՝ ուսուցանէ





զգուշ կալ, և մի՛ անձին՝
և մի՛ փոքու ուրուք ա-
րիւնապարտ լինիլ։
Զգուշանալ ասէ և յայս՝
զի որք մեղանչենն՝ ոչ բա
րութեան ընդունել ըն
կենուլ, այլ սաստիւ ա-
ծել. և ոչ վայրապար թո
ղուլ, այլ ուղղութեամբ
ստանալ։ Եւ որք բազմա-
ցուցանեն զայնոսիկ իբրև
զատամբակս՝ ոչ իբաց դառ
նալ եթէ առաջինն զօրէ
ունիլ։ Ապա թէ տկարաս
ցի նա՝ և զիւրն թափել
անգործ մնայ, ՚ի դէպ է ա-
կամայ վս̄ հարկին զերկ
րորդն ընտրել. զի մի՛ յայլս
զիւրն յանձնեսցէ տալ՝ այն
որ ոչ ուղղեաց զօրանալ
յայլմէ ունիլ։ զի թէ առ
նա ինչ ոչ ցուցաք, զմերն
մի՛ լքցուք։ Եւ այսպէս
հաւասար չափով որոշել
զմերն առ ընկերս՝ օրէնօք
խրատիմք. զի մի՛ զհետ գը
նասցէ՝ անսահման բարւոյն
կարծեց՝ հաղորդ չարեաց
լիցուք։ Եւ մի՛ ՚ի սկըզ
բանն ամփոփել զանձինս,
Գւլ" ժէ

այլ յետ փորձին հեռա-
գոյնս դնել. զի մի՛ օրէնք
յօրինաց լուծեալ՝ վնասու
ինչ պատճառք լինիցին ան
հմտութ̄ե կրելոցն։ Իսկ
որոց բա՛ն է. և իմաստու̄ի՝
վարեն սովին զայն ըծակ
ցեալս, և պահեն զսահման
երկոցուն նոցա օգտակար
անձանց. և որոց գան ըզ
հետ՝ առ այս ուղղութիւն
հայցեն ՚ի տնէ ուսանիլ
հաւատս։
6 Եւ նա ասէ, եթէ ու-
նիցիք հաւատս քան
զհատ մանանխոյ, և ասի-
ցէք թթենւոյս այսմիկ,
խլեաց աստի և տնկեաց՚ի
ծովդ, և լինիցի։
Բազում անգամ լուան
՚ի նմանէ զի ասաց, ամ̄
ինչ դիւրին է այնմ որ հա
ւատայ. և ոմանք պարսա
ւեցան վս̄ անհաւատութե̄.
և ոմանք յարգեալ գովե
ցան ՚ի հաւատոց։ Աբ̄րում
և կինն փիւնիկեցի։
Ով կին դու ասէ մեծ են
հաւատք քո, եղիցի քեզ
որպէս և կամիս։ Եւ ընդ
մղէ̄ հա

հոգևորապետին զարմանայ
հաւատոյ։ Ո՜ այս լուեալ
առաքելոցն՝ կամեցան ու-
սանիլ զհաւատոյն բան։
Եւ եցոյց եթէ ոչ ինչ է
որ լուծանէ անհնարութ՟
զանկլթերի հաւատոյ. այլ
հաւատք զօրացեալք յամ՟
յաղթեն։ Եւ արդ զի՞նչ
քան զայս անհնարին առ 'ի
հաւատալ. զի որ զծառ
արմատացեալ 'ի յերկրի՝
հրամանաւ ինքնին խլել
և տնկել 'ի ծվ՟ անհաստատ
մկանաց հոսանուտն ջուրց
և արմատանալ իբրև 'ի
հաստատուն երկիր։
Եւ այլ ուր՝ զլերինս ասէ
փոխել և անկեալ 'ի ծով։
Արդ՝ ընկալան առաքե-
լոցն դասք զհաւատս զայս
և զզօրութի՟։ Ապա թէ ոչ՝
զանգիտէին գրել զայս.
զի մի՛ ինչ այսպիսի նշան
խնդրեսցեն 'ի նոցանէ հր
էայք կամ հեթանոսք։
Բայց զի վստա՛հ էին 'ի զօ
րութի՟ զոր ընկալան զա
մենայն ինչ վճարել բա
նի՜ւ, վասն որոյ գրեն հա
Գ.լ՟ ժէ

մարձակութ՟. զօրացեալք
այնու որ ասաց, Հնազան-
դեսցի ձեզ։ Բայց պարտ է
զբան հաւատոյն քննել
մեզ. և է առաջին այն, հա
ւատս կատարեալս առանց
կարծեաց ընծայել այ՟. զի
ամ՟ հոսանք փորձութ՟ց
ոչ կարեն իւիք վրդովե-
ցուցանել զնա։ Ունի առ
այս և զայն, զի 'ի հաւա
տալն՝ վստա՛հ է և 'ի գործս.
և բանական է ասել, ըզ
մեղս թէ տեսանէի 'ի սըր
տի իմում, մի թէ լուիցէ՞
ինձ տր՟։ Դարձեալ և խնդ
րողին՝ է իմաստութե՟ ըզ
պատշաճն խնդրել. և ան
հանճար խնդրողն յամէ՛
վրիպի։ Արդ մ՟ զի սըր-
բեաց զնս՟ հոգւովդ՝ յաւել
'ի նս՟ և զամ՟ զօրութի՟ և
զամ՟ իմաստութի՟ մինչև
զլերինս փոփոխել. և զամ՟
տիեզերս հնազանդեցուցա
նել. և յանհաւատութէ
անտի ածել 'ի կրօնս աս-
պաշտութե՟ և ընծայել այ՟
ժողովուրդ սրբեալ։
Եւ զի մի՛ մ՟ այսպիսեաց
 մղէ նշա

նշանաց որ տուաւ՝ի ձեռս
նց և սպասաւորութն զոր
կատարէին՝ հպարտասցին
և վրիպակ գտանիցին 'ի
գործս իւրեանց, առաւ
ել առ այս մերձ դնէ զգու
շանալ յամբարհաւած
մտածութեց:
7 Ո՞չ է թէ որ ունի ծա
ռայ հողագործ կամ հո
վիւ, որ իբրև մտանիցէ
յագարակէ, ասիցէ ցնա
վաղվաղակի թէ անց բազ
մեաց. այլ ո՞չ ասիցէ նա
պատրաստեա զինչ ընթրե
լոց իցեմ. և գօտի ածեալ
պաշտեա զիս մինչև կերայց
և արբից, և ապա կերիցես
և արբցես դու:
Նոյնպէս և կարի՝ յանզու
գականացն իցէ օրինակս,
բայց սակայն նա չհամարի
անարժան իւրում ած ային
պատուոյն. այլ խնդրէ 'ի
մէնջ գոնէ այնչափ ցու
ցանել զհնազանդութիւնն
առնա՝ որչափ ծառայք
առ տէրն իւրեանց:
Որդ ասա ծառայք՝ բնութ
հաւասարք տերանց են,
Կ.Ը մէ

և գործով զօրաւորք քան
զտէարս. վն զի նք սոցա
աշխատութն փափկանան
և ունին իրաւունս հան
գստեան: Ո՛ի զօրն ած
յանդի աշխատեալ՝ գան
մտանեն խոնջեալ. և առ
այն հրաման տայ յոտն կալ
և սպաս ունիլ. և նմա չէ
համարձակելի ը դէմ ինչ
ասել. այլ կայ անշշունջ
'ի հնազանդութե և չհա
մարի ինչ զոր գործեացն:
և այն վն փոքր պարէնի
լրմանն զոր ունի յայնպի
սեաց անտի: Նուաս և ո՛չ
շնորհի ինչ չափ ունի առ
նա՝ թէ և կարի՝ ծանրա
գոյն իցէ. զի հարկ բըռ
նութե համարեալ է ած
զոր ինչ հարկանեն նոքա՝
և ո՛չ գործ ինչ շնորհի:
Նաև արդ՝ եթէ առ հան
գէտս բնութե այնպէս ան
կեալ են հնազանդութե,
քանի՞ ևս պարտ է այսպի
սպասաւորութե պատկառ
կալ. և որքան զօրանամք
յայսպիսի սպասաւորութ՝
զանձինս 'ի չափու ունիլ:
մղդ եւ

Եւ այս կարի խոնարհեմք
քան որչափ դատեցաք .
վասն զի նա բնութեամբ տէր,
և մեք բնութեամբ ծառայք .
և նա արարիչ, և մեք ՚ի նը-
մանէ եկեալք ՚ի լինելութիւն:
Եւ ամենակալ գոլովն իշ-
խանութեամբ և ամենառատ բա-
րութեամբ՝ լնու զամենայնս. և
ինքն կարօտի և ոչ մի ինչ
մերում սպասաւորութեանս:
Այլ և վ՟ն փոքր երկոցն
մերոց որ ոչ է ՚ի պէտս նո՟ր՝
այլ և վ՟ն մեր հրամանաց
նո՟ր՝ վարձս բազումս խոս-
տացաւ արդարութեամբ հա-
տուցանել մեզ: Արդ ՚ի
վերայ այսոցիկ պարգևաց
ուսուցանէ զմեզ՝ զօրէնս
նորա լնուլ առանց հեղ-
գութեան, և զանձինս մեր
խոնարհեցուցանել. և ա՟ս
թէ ոչ ինչ գործեցաք հա-
մարել:
10 Ս՟րոյ ասէ, յորժամ
զա՟մ հրամայեալսն ձեզ
առնիցէք, ասասջիք թէ
ծառայք անպիտանք եմք,
զոր պարտէաքն առնել
արարաք:
Գ.ղ՟ ժէ

Զայս ասաց՝ քանզի գի-
տէ զամբարտաւանութիւն
ապականիչ ա՟մ բարեաց:
Եւ զի մի՛ ոք ապիրատութեամբ
փնասեսցի անտի՝ զգուշա-
ցուցանէ՝ իմաստս յաւե-
լու՝ ամենայն պահպանու-
թեամբ պահել զմեզ:
Զայս հայի տեսութիւն
առաքելոյ ասելն, եթէ կա-
մաւ աւ՟տրնեմ՝ վա՛րձք են
ինձ. և եթէ ակամայ՝ տըն-
տեսութիւն յանձնէ ինձ:
բայց վա՜յ է ինձ եթէ ոչ
աւետարանեմ: 1 կոր՟ն 9. 17:
Եւ դարձեալ՝ զոր ինչ արար՝
ցուցեալ ասէ, ոչ ես, այլ
շնորհքն ա՟յ որ յիս: 15. 10:
Արդ զսոյն զայս միտս ա-
մենայն ոք ստասցի առ ա՟ծ
՚ի վերայ ա՟մ նեղութեանց և
չարչարանաց զոր վ՟ն նորա
կրեմք. և ՚ի վ՟ր ա՟մ առա-
քինութեանց զոր ա՟յ ՚ի ներքս
բերեմք՝ անպիտանս զմեզ
համարել. ա՟ս թէ ոչ ինչ
բնաւ արարաք: Իսկ արդ՝
եթէ այն որ զա՟մ պատուի-
րանսն կատարեաց և հա-
մարեցաւ թէ արար ինչ՝
մղէ խո

խոստման դատաւ, ապա զինչ
կրիցեն որք ոչ ինչ արարին
և փքացեալ մեծամեծս
խորհին։
11 Եւ եղև մինչ երթայր
յերուսաղէմ, և անցանէր
ընդ մէջ սամարիայ և գա
լիլեացւոց։
Այս վերջին գնալն է նո
րա յերուսաղէմ։ Մերձ
առ այս է և յղելն առ նա
քերցն ղազարու վս հիւ
անդանալոյն ղազարու։
՚Ի նոյն կարգի է նախ գը
նալն յարուցանել ըզ ղա
զար. վս որոյ այսու ճանա
պարհաւ գնայ յայն։
12 Եւ մինչ դեռ մտանէր
՚ի գիւղ ուրումն, պատա
հեցան նմա տասն բորոտք՝
կացեալք ՚ի հեռաստանէ.
բարձին զձայնս և ասեն,
յս վարդապետ ողորմեաց
մեզ։
Ընդառաջ եղեալ բորոտքն
առաջնին զի սրբեսցին։
Սակայն մերձ առ նա գալ
ո՛չ համարձակէին. քանզի
կասկածէին թէ գուցէ
դժուարի՝ ը այն և զայրչի՝
Գ՛ր ծէ

՚ի նոցանէ վասն օրինացն
խորաւն։ Աս զի գիտէին
թէ եղիսէոս զնէեման ո՛չ
կամեցաւ տեսանել թէ
պէտ և յորդանանաւ սըր
բեաց զնա։ 4 Թագ 5. 9։
Արդ այսպիսի կարծեօք
՚ի հեռաստանէ կացեալ
աղաչեն։ Եւ առ այս յս
ը նց կարծեացն օրինօքն
վարի և ասէ նոցա գնալ
ցուցանել զանձինս քահա
նային։ վասն զի այսպիսի
էր օրինացն պատուէր։
Մարդ ոք ասէ յորում է
բուեացի արած բորոտուն,
մատիցէ առ քահանայն.
և տեսեալ քահանային և
ահա՛ ընտանդոյն իցէ կամ
պաղպաջուն կամ զնստա
գոյն. և որ ըստ այսմ օրինի
բանք իցեն։ Ղեւտ 43։
Արդ զի ցուցցէ թէ պա
հէ նա զօրէնս զայս՝ ասէ,
երթա՛յք ցուցէք զանձինս
քահանայիցն։ Եւ եղև
ի բերև գնացին՝ առժամայն
բժշկեցան։ Թէպէտ և
ըստ սահմանի օրինացն առ
քահանայն ասէ գնալ,
մղք սա



սակայն օրինօքն ո՛չ սրբէ. այլ արտաքոյ օրինացն՝ ի՛ւր ածային զօրութենն։ քանզի օրինացն ա՛յս էր պատուէր։ Եւ տեսեալ ասէ քահանային՝ և ահա՛ արած բորոտութեն է ըստ առաջին խրատուն. պղծեսցէ զնա և քակեսցէ զհանդերձս նր, եւ գերծցէ զգլուխ նորա, և կապեսցէ վերջոյ զբերան նր, և հանցէ զնա արտաքոյ բանակին զաւուրս ութ. և ապա կրկին տեսցէ զնա եթէ փոխեալ իցէ գոյնն կամ թէ նոյն իցէ։ Եւ որ ըստ այսմ կարգի սըրբուն իցէ լուացման և պատարագի յորում էր հասանիլ մաքրութեան։ Եւ արդ յայսպիսեաց ինչ ո՛չ առնէ. այլ ՚ի գնալն՝ առժամայն սրբեցան և թերևս առ քահանայսն ոչ ժամանեցին։

15 Մի ոմն ՚ի նոցանէ իբրև ետես թէ բժշկեցաւ, դարձաւ աւէ անդրէն ՚ի ձայն մեծ փառաւոր առնէր զած։ Նկատէ ՚ի վր



երեսաց իւրոց առ ոտս նր և գոհանայր զնմանէ. և ինքն էր սամարացի։ Ասէ յս, ո՛չ տասն սոքա սրբեցան. իսկ արդ իննունքն ո՛ւր են, զի ո՛չ գտան դառնալ և տալ փառս այ բայց միայն այլազգիս այս։ Եւ ասէ ցնա՝ արի՛ և գնա՛ զի հաւատք քո կեցուցին զքեզ։

Ամուրեք յայտնի է այս՝ զի հեթանոսք պատշաճ հաւատոյ ընծայեցին ան մերոյ քան զհրէայսն. և հրէայք յամի՛ ապախտանօրք գտան։ ոմս առ մարգարէիւքն՝ և առաւել ևս առ քի։ Սորոյ և ասա սամարացիս գոհանայ և փառաւոր առնէ զած. քզի դիտէր թէ նովաւ այս զօրութիք կատարին. և ո՛չ ոմն հրէայքն որ դիմեաց համ բաւէին զգործսն այ։ Նա ա՛ւ սամարացի գոլով և բարբարոս, եկեալ անկաւ առ ոտս ան, շնորհապարտ լինիլ և գոհանալ զնմանէ վասն բարեգործէ





ծեւլոյն առնա։ Նա՛ եցոյց
'ի յինքն զխորհուրդ փըր
կութե՟ ամ՟ հեթանոսաց.
զի սրբեալ մաքրեցան ա
ւազանաւն յանօրէնութեց
անտի շնորհիւ փրկողին մյ՟
Ըստայնմ, հեթանոսք վս՟
ողորմութեան փառաւոր
առնեն զա՟ծ։ հռոմ 15. 9։
Իսկ իննունքն որ'ի հրէից
անտի էին՝ ապերախտ գո
լով ոչ կամեցան գոհանալ
կամ փառս տալ այ՟։
Նկարեցաւ և'ի սոսա հը
րէից խորհուրդ. որք բա
զում խնամս գտեալ'ի նը
մանէ յանապատի անդ և
յերկիրն քանանու, և ե
րախտամոռացք եղե՛ն՝ առ
դեւս հաստատէին դաշինս։
Ըստորում յայտնի'է այս
'ի մարգարէից անտի որք
պախարակէին զանհաւա
տութիւնն իսրայէլի։
Բայց և՛ս բազմապատիկ
եղեն սմ՟ ստամբակութիւն
առ փրկչաւն. ո՟պ յայտնի է
ամի որոց միտս զննեն խնա
մոցն առատութե՝ և նոցա
անշնորհակալու լինելոյն,
Կղ՛՛ ծէ

չարիս փոխարէն նմա 'ի
ներքս բերելով։ Մ՟ս և
աստ զարմացեալ ընդ նս՟՝
որ և ոչ ազատիլն յայն
պիսի ախտէ՝ բարեմիտս
արար զնս՟ զի գոհասցին
ըզնմանէ կամ փառս այ՟
հանցեն։ Արդ զորսա ան
բարի լինիլն ընդ պարսա
ւանօք եդեալ՝ յարդէ՛
զայլազգին, և քաջալերել
յուղարկէ։ Ասէ, հաւատք
քո կեցուցին զքեզ։
Զի ուսցին և այլքն այն
պիսի հաւատս ընծայել
այ՟, և նմ՟ հաստատեսցի'ի
նոյն, իմացեալ թէ զովե
լի իցէ։
20 Իբրև հարցաւ 'ի փա
րիսեցւոցն թէ երբ
գայցէ արքայութիւն այ՟։
Փարիսեցւոցն բանք՝ և
հարցուած նց՟՝ ամենայն
ուստեք յայտ է՝ թէ լի՛
էին նենգութե՟ և կեղծա
ւորութե՟։ Նա՛ ոչ երբէք
հարցին նոքա ինչ զի ուս
ցին կալ 'ի վր՟ ճշմարտու
թեն, այլ զի դաւաճանք
լինիցին։ Ա՟ս որոյ և աստ
մղր՟ մա

մատուցեալ ասեն, Երբ
գայ արքայութիւն այ։
Ո՛չ ուղիղ մտօք, այլ ան֊
բարշտութբ։ Զի թէ
այլում ժամանակի պահէ
զայն, ունին ասել ժողո
վրդեանն եթէ ահաւասիկ
ո՛չէ նա քն, զի ինքն հրա
ժարեցոյց զանձն՝ յայլ ժա
մանակ ձգեալ։ Ապա թէ
ասիցէ՝ այս է ժամանակ և
եկեալ է, ունին ասել թէ
եղիա ո՛ւր է. զի նմա ար
ժան է գալ առաջի նորա։
Իսկ յն յայսպիսեաց աս
տի ինչ ո՛չ ասաց յորոց կար
ծէին. այլ այնպիսի եղ
բանս, որով զնս անբանս
և անխորհուրդս արար։
Զի ո՛չ ասաց թէ եկն ե
հաս, և ո՛չ թէ գալոց է և
պահի իւրում ժմնակին։
վս ասէ,
20 Ո՛չ գայ արքայութն այ
խտրանօք։ և չասիցեն թէ
ահաւասիկ աստ է կամ
անդ. զի ահա արքայութն
այ 'ի ներքս 'ի ձեզ է։
Արդ զայս գիտել պարտ
է, զի գիրք մարգարէիցն

երկուս ցուցանեն գա
լուստս։ և առաջնոյն ըղ
յովհաննէս ասացին լինել
կարապետ. իսկ երկրդին
զեղիա։ Բայց դպիրքն և
փարիսեցիք զայս անգիտա
ցան. և զերկուս գալուստն
ընդ միմեանս հարեալ խառ
նակեցին։ մի միայն ածցին
գալուստ, և այնմ կարա
պետ զեղիա։ Այս որոյ ա
սէին, եղիայի՛ նախ պարտ է
գալ. և զժողովուրդն խո
տորեցուցանէին։ Այլ
որ ընտրեն 'ի մարգարէից
անտի զհաւաստին, կա
րօղ են ամենայնիւ զառա
ջին գալուստն իմանալ
որ խոնարհագոյն էր, և
զերկրորդն որ մեծութբ
իցէ։ Նա վս երկոցուն
սոցա դաւթաւ ասացել է։
իջցէ որպս զանձրև 'ի վերայ
գեղման (անձայն) իբրև
զցօղ ցօղեալ յերկիր։
Այս առաջին հանդարտ
իջումն որ առ կոյսն, և 'ի
նմանէ գալ նուաստութբ
յերկիր։ Իսկ վասն երկ
րորդին յորժամ խօսի,

զահագինսն առաջի դնէ զբանս։ Ածծ աստուծոց տր խօսեցաւ. կոչեաց զամենայն արարածս իմիասին Նա՛ ած մեր յայտնապէս եկեսցէ, և ո՛չ լռեալ դադարեսցէ։ Նա՛ հուր առաջի նր գնասցէ. և շուրջ զնովաւ մրրիկ յոյժ։

Նա՛ կոչեաց զերկինս և զերկիր 'ի մի, զի դատեսցէ զժողովուրդ իւր։

Զայս ետես և դանիէլ։ զառաջինն վէմ հատեալ. որ զպատկերն փշրեալ է բարձ 2. 34։ Նա՛ զերկրորդն որդի մարդոյ ընդ ամպս երկնից եկեալ։ 7. 13։

Նա՛ յաճախ են սոքա որոք կամեսցի 'ի մարգրէից անտի ընտրել։ Բայց մեզ առաջի կայ զտրունական ասացելոցն բանից քննել զիմաստս։ Զինչ է զոր ասաց, ո՛չ գայ արքայութին այ խորանօք։

Ստորանքն սկսան 'ի հեթանոսաց յորմէ հրաժարեցուցին օրէնքն և մարգարէքն. յոր հրէայքն

Գւլ ճէ

յամառեալ պնդեցան։

Աստեղացդ շարժման տալ զաստեղացս բերումն. և բախտ և ճակատագիր ուսուցին. և զայ նախախնամութիւնն և զմարդկան անձնիշխանութին բարձին։ և այսպէ զմ ինչ ժամանակի՛ ետուն լուսաւորացդ բաշխել։ Ըստ ժամանակին չարաբաստ զոք լինել և բարեբախտիկ։ Ըստ նմին և զժամանակս չար ասացին և բարի։ Նա՛ զայս ինչ յայսմ ժամանակի յաջողակ, և 'ի միւսումն ո՛չ ևս ըստ նմին օրինակի։

Արդ վս զի այսպիսեօքս վարէին նոքա քննութեք 'ի մարգարէից անտի իբաց կացեալք որք հգսյն իմաստիւք խօսեցան ընդ նս, Վս որոյ տրն բաղդատանէ զանմտութին նոցա որք ընդ ծառայութեբ տարերցս մըտեն և ասէ, ո՛չ գայ արքայութիւնն այ խորանօք ըստ ձերոց անիմաստ կարծեացդ։ և ո՛չ ասիցեն թէ աստ է կամ անդ։

Աստ թուի թէ համօրէն
զամ ինչ զոր իմանամք
վս այ 'ի մի վայր փակեաց։
Առաջին՝ զի ամենակալ է
և ընդ ամենայն տեղիս է
տրութն նորա․ և ոչ աստ
կամ անդ, այլ ամ ուրեք
մերձ։ Ա՛յ որ ոք կամի
մերձենալ առնա՝ 'ի ներքս
առնամ է ըստ մովսէսի։
Մի՛ ասիցես ասէ ո՞վ ելա
նէ յերկինս, կամ ո՞վ իջա
նիցէ յանդունդս․ այլ
մերձ է բանն 'ի բերան քո
և 'ի սրտի քում։ Օրի 30. 12։
Ըստ այնմ, թէ մերձաւոր
եմ ես, և ոչ թէ հեռա
ւոր։ Եր 23. 23։ Իսկ եթէ
զմարմնով գալըստն կա
մեսցին խնդրել, և այնպէս
ունի զլրումն բանին։
Ապա եթէ զերկրորդն, և
այնպէս արդարացեալ է։
Զի ոչ ասիցեն թէ աստ է
կամ անդ․ և ոչ կարօտի
քարոզաց․ այլ սաստիկ լու
սով յերկնից ծագէ։ զի
ոչ է այն տեղի ուրեք որ
ծածկէ զնա․ այլ 'ի վե
րուստ եկեալ տեսանի

Գ․լ՛՛ Չէ

յամենեցունց։ Ա՛յ 'ի նմին
ժամու էր տակաւին 'ի մէջ
նոցա դիւրամերձենալն,
որոց էր հաղորդիլ ածու
թեն նր։ Ապա սկսանի ան
տի իբաց տանիլ զնոսա․
զի ոչ թէ միշտ նոյն իցէ և
այնպէս ունիցին զնա։
22 Ասէ աշակերտացն,
եկեսցեն աւուրք ցանկա
նայցէք ձեզ մի յաւուրց որ
դւոյ մարդոյ տեսանել
և ոչ տեսանիցէք։
Այսու և զփարիսեցիսն
կամի ընդոստուցանել,
որք հարցանէին զնա վասն
գալստեան նր։ Զի ոչ
ասաց մերձ թէ ես եմ, զի
մի՛ ամբոխեսցին․ սակայն
ասելով աշակերտացն 'ի
լուր նց թէ ցանկանալոց
էին աւուրց նորա, իբրև
պատուական յայտնէ նց
զանձն իւր իմանալ թէ
զո՞ ոք տեսանեն առանց
շնորհի և անշարժ են այն
քան մեծի տեսութեն։
Որում մարգարէք բաղ
ձացան որ նախ քան զերե
ւիլն նորա․ ծանեան զնա

յա          և

և ոչ տեսին. նոյնն կայ ա-
ռաջի և այնոցիկ որ շրջե-
ցան ընդ նմա։ Զի յետ
վերանալոյ նր՟՝ անբերելի
ցանկութբ՟ բորբոքեր 'ի
սիրտս նց՟ սէրն նր՟. իբրև
յիշէին զտեսանելն զնա և
զշրջիլն ընդ նմա և զբանսն
որովք խօսէր ընդ նոսա։
Նաև այն ևս կարի սըր
տակիզէր զնս՟՝ զի մինչ էրն
ընդ նս՟՝ որպէս պարտն էր
գիտել ոչ գիտէին զնա։
Եւ յայտնի էր այս նմա,
թէ յետ անդէն դառնա-
լոյն՝ կալոց էին համօրէն
իվերայ գիտութե՟ նորա.
որք թէպէտ ևս կարի թա
խանձնօք խնդրեն հասա
նել ոչ ունին։ Ընդ այս
խառնէ և զայն զոր առփա
րիսեցիսն ասաց։
Եթէ ասիցեն ձեզ՝ ահա-
ւասիկ աստ է կամ անդ՝
մի՛ հաւատայք. և թէ յա
նապատ՝ մի՛ ելանէք տե-
սանել։) զի մի՛ ըմբռնեսցին
յօտարոտեացն պատրանօք։
քանզի որ եղեն՝ լինիլ ոչ
ունի։ Ըստ առաքելոյ,
Փր՟ ՃԵ

այսուհետև մարմնով զոք
ոչ գիտեմք. թէպէտ և
գիտէաք մարմնով զքս՟,
այլ ոչ եթէ նոյնպէս գի
տեմք։ 2 կոր՟ 5. 16։ Զի ոչ՟
փայլակն 'ի ներքոյ երկնից
ծագեալ, որք 'ի խաւարին
տունս իցեն և 'ի վերս խո
րինս, յայլմէ՛ ուսանիլ նց՟
ոչ է. այլ նոյն ինքն յայտ-
նիլն նորա քարոզէ զնա։
Բայց ևս կարի առաւե-
լութբ՟ է յայտնութի՟ նր՟
քան զբան օրինակիս. մինչ
զի օրինակս այսմիկ խա-
ւար զգենուլ. և տմ՟ բնու
թեանց կերպարանափոխ
լինիլ։ Որդ զայս եդ հա
ւաստի իմաստս՝ զի բանք
նեղութե՟ մի՛ զօրասցին
և մի՛ հաւատք խափանես
ցին որ առ աներևոյթս է.
յոր ըմբռնմամբ ամքեան
ձգին։ Բայց նախք՟ զայս՝
են անարգանք նր՟ և չար-
չարանք նր՟. զի խոտեսցի
նուաստութբ՟, և 'ի ժամա
նակի իւրում բարձրասցի
երևեալ փառօք։
Մերժս գործէ զայս,
յէ զի

զի ամենեցուն լիցի նախ
տրտմականացն տանիլ, և
ապա 'ի կատարածի անդ
հեշտալեացն հաղորդ
լինիլ։
26 Վարդէ՛ առաւել զօրս
յառաջ քան զնոսա ոմանք
կրեցին. զի զչափ առցեն
յեղելոց անտի։ Նա՛ վս
զի որք հոսեցին զմիտս գը
նալ զհետ լրյծ ցանկութե
հարեալք 'ի մարմինս և յո
րովայնս, հոսեցաւ առ նս
լրյծ բնութի ջուրց ապակա
նիչ մարմնոց և որովայնից։
Իսկ այն որ արգել զանձն
'ի գէջ խառնակութեանց
նց և ոչ կցորդեցաւ անօ
րէնութե նոցա, ոչ կարաց
ջուրն այն (որ հեղձեցոյց
զաշխն) մերձենալ առ նա։
Արդ այս օրինակ դատաս
տանի պահեալ է 'ի կատա
րածի անդ. զի յորժամ
կապեալ ձեռօք և ոտիւք
հրոյ մատնեսցին անօրէնքն՝
'ի նմին ժամու պատուեալ
պսակին արդարքն։
28 Հաւելու յայս և զոր
սոդոմացիքն ախտացան և

կրեցին։ Հեղին զանձինս
յամենայն չար խայտառա
կութիս. և թէ վրէժխնդ
դիր իցէ ած այսոցիկ՝ 'ի
միտ ոչ առին. այլ շինէին
և տնկէին, գնէին և վա
ճառէին. և ընդարձակեցին
զանձինս իբրև զդժոխս.
և անյագ եղեն իբրև ըզ
մահ։ ամբ 2. 5։ Նորին ա
ղագաւ բացաւ դժոխք
կլանել զնոսա. և որովայն
մահու ապականեաց զնս։
Ահան արձակեաց զղովտ.
զի որ ոչ ջեռաւ 'ի ցան
կութիս նց, ոչ էր պարտա
կան հրոյ բաժակի նոցա։
Զայս ընտրութի հաւաս
տի քննութին ունի առ ար
դարս և մեղաւորս. և կան
խաւ ժամանէ խրատել,
զի ուսցին փախչել 'ի սո
դոմայեցւոց հրոյն և'ի կոր
ծանմանէն։ Արդ սոդո
մայեցւովքն զարհուրե
ցոյց զանհաւատս։ Իսկ որ
հաւատանն՝ ասէ առ նս,
յիշեցէք զկինն ղովտայ։
Զի մի՛ հայեսցին յետս
որ ոչ է մեր։ Վասն որոյ

զյանկարծակի փոփոխումն
մեր և զայլայլութի բնու
թեանս և անպիտանանալ
գոյիցս զոր տաժանաբար
հաւաքեցաք, նմանեցու
ցանէ յասելն,
31 Որ 'ի տանիսն իցէ՝ մի՛
իջցէ առնուլ զձորձս իւր
'ի տանէ անտի: Նմանապ
և յամենայն տեղիս:
Զի շփոթ մեծի տագնա
պին և վտանգ տարակու
սանացն և արհաւիրք ան
ճնարինք՝ շուրջ պաշարեն
զամենեսեան 'ի դղրդիլն
երկրի և 'ի բանալն երկնից
և 'ի կերպարանափոխ լի
նելն արարածոց, և 'ի ձայ
նիցն որ աղաղակեն:
Ո՛չ միայն երկնաւորացն
որ փողով մեծաւ ժողո
վեն, այլ և յերկրաւորաց
աստի որ հառաչեն: Այլ
ասէ, յիշեցէք զկինն որ
եանց ըզպատուիրանաւն
ճդառնալ յետս: զի մի՛ ըզ
նոյն ախտացել զառաջինն՝
'ի վերջինսն տուժեսցին:
Զի նախ կորուսանել
օրինօք ուսցին, յորմէ գը

տանելն իցէ. և մի՛ յօժա
րութե ուղղեսցին գտանել
զանձինս, զի մի՛ առանց յօ
ժարութե կորուսցեն զնա:
Վասն զի հաւաստի ընտ
րիչք որոշեն զնոսա. և ո՛չ
տուն և ո՛չ մահիճ և ո՛չ
աղօրիք կարեն 'ի միասին
ունիլ զնսա: զի այն հաւա
սարութի ո՛չ եթէ թաքու
ցանէ կամ անյայտեալ
ծածկէ զնսա յընտրութէ
անտի:
36 Եւ տարակուսեալ
առ բանիցն զօրութե, հար
ցանեն զնա, զի՞ արդ տր:
Եւ ասէ, ուր մարմինն ան
կեալ իցէ, անդր և արծ
ուիք ժողովեսցին:
Եթէ զմերս ոք ընտրես
ցէ ասել զմարմինս յո
րում հոգւոցն իցէ հաւա
քումն, և եթէ զտրունական
մարմինն որ զամենայն ա
րարածս զվերինս և զներ
քինս 'ի միում վայրկենի
իբրև զարծուիս երագունս
առ ինքն ժողովէ՝ արդարա
ցեալք: Զի տեսութիւնէ
քննողաց բանին ըստորում

ընտրեցին կարգել։
Եւ իբրև զօրինակ իւրոյ գալստեանն և դատաստանին եդ առաջի և ահաբեկս արար զնոսա վրէժխնդրութեն, կարգէ այնուհետև առնմին առակաւ զօրինակ զերծանելոյն անտի։ Եւ ունի առակս այս իմաստս, յամենայն ժամ առանց հեղգութե յաղօթս կալ և մի՛ ձանձրանալ։

*Ղուկ Աւետարանին Ժ.Ը.



ատաւոր մի էր ՚ի քաղաքի ուրումն. յայ ոչ երկնչէր, և ՚ի մարդկանէ ոչ ամաչէր։
Գիտեմք առակիս ոմանց թուեցաւ թէ վասն այ ասացեալ է. զի ոչ ունի նա զոք ՚ի վերոյ քան զինքն ամթէ երկնչիցի ՚ի նմանէ. և ՚ի մարդկանէ նա ոչ ամաչէ։ Արդ որք զայս ասացին՝ զհետ կարգի բանիցն գնալ ոչ գիտացին.

Գլ՛՛ Ծը

Մա՛ զի ՚ի կատարածի անդ բանի առակին՝ դատաւոր անիրաւութե զնա կոչէ՝ զոր վս այ իմանալ կարի՛ անտեղի է. քանզի դատաւոր է նա իրաւանց և արդարութե. բայց մեզ ըստ պատշաճի իւրացն քննել արժան է։
Արդ՝ զմիտս ասէ դատաւոր ՚ի քաղաքի բնութեաս. վս զի բնութիւնս իբրև քաղաքի իմն ընդարձակ է. և մտանեն շրջին և բնակին ՚ի սմա չարք և բարիք։ Եւ են զգայութիւնքս ՚ի մեզ դրունք որ ընդունին ըզմտելսն։ Իսկ միտքն է դատաւոր և ընտրիչ. որպէս կամի կրէ և շտեմարանել պահէ. և զոր ոչ ախորժէ ՚ի բացդառնայ և արտաքոյ փակեալ պահէ. կամ եթէ մտեալ իցէ՝ արտաքս հանէ։ Եւ այս է ոպէ առ ոմանս չարս լինել կամ բարիս։ Բայց աստ վասն չարի ուրուք եղելոյ են բանքս. զի ահաւասիկ յայ ոչ երկնչէր և ՚ի մարդկանէ

Ի յե ոչ

ոչ ամաչէր։ Արդարև
այսպիսի են միտք. վասն
նրբութե՟ և ծածուկ գո
լոյն՝ երկիւղն ա՟յ արհա
մարհեալ է 'ի նմանէ. և
խրագէտ վկայութե՟ որով
քննէ զա՟մ ապիրատութիւն՝
ա՟մ ինչ յայտնի՛ է նմա։
եթէ գործեաց ինչ աղտե
ղագոյն, և եթէ մտածութի՟
ինչ անօրինեցաւ առ նա։
Ա՟յ 'ի խորհուրդս զազրա
ցեալ շաղի ը՟ անօթալիւն,
սակայն ը՟որում ասացաք՝
վ՟ա զի ոչ տեսանի՝ 'ի մարդ
կանէ ոչ ամաչէ։ Ա՟յ արդ
այսպէս զարատաւոր կիրս
և զխնասակար ցանկութիս
հանճարոյ յինքն ձգեալ՝
խառնացեալ է ը՟դէմ սպառ
նալեացն ա՟յ. և զամօթ ա-
մարդկան ինչ ոչ գրէ։
Ո՜ այսպիսի դատաւոր
մատուցեալ այրի հոգին
զրկեալ 'ի յաստ մարմնոյն
աղաչէ զի դատ արասցէ.
զի մի՛ ամ՟ն պակասեալ 'ի
բարեաց կորիցէ. վ՟ա զի կա
րի մեծ և անքերելի սադ
նայ է ոգւոյն դատարկա

Գլ Ժը

նալն 'ի բարեաց։ Թէպէտ
և ապշելոցն ոչ երևի, սա
կայն ոգին որ կրէ զապա
կանութիւնն մարմնական
ախտիւք լցեալ, բողոքէ
առ միտսն զի դատ արասցէ։
Ա՟յ է դատելն մտաց՝ յոր
ժամ բաժանէ զմարմնոյն
չափով կարեաց բնութեն
տալ որ 'ի հաստատութե
պահէ զնա. և ոչ անչափ
հեղուլ 'ի նա զարատաւոր
կիրս վայրապար ցանկու
թեանց։ Ըստ նմին և հո
գւոյ մասին զիւրն պատ
շաճ առաքինութի. որով
և հոգին պահէ զիւրն կեն
դանութի և մի՛ կորիցէ ըղ
ձեղացն մահ։ Ա՟յ է բողո
քելն հոգւոյն առ միտսն
այն, յորժամ զղջացեալ
երբեմն խոցոտեն զմիտս
մեր յիշատակք վատթար
գնացիցն մերոց և հեղգու
թե որով զժամանակն ծա
խեցաք. և ապրջացեալ մեր
յապաշխարանս դառնամք։
Ա՛ երբեմն զի առանց ջա
նալոյ յարտասուս ցնդիմք.
և սաստ կենացս յատելութի

յՂ դառ

դառնամք և զորձակիլն
խնդրեմք։ այս ամենայն՚ի
Թախանձելոյ հոգւոյն է։
Բայց սակայն ցանկութ̅ի
մեղացն ը̅ որում կապելէ՝
ոչ տայ թոյլ առժամայն
մերկանալ զչարն և ազա
տել զանձն 'ի պատժոց.
այլ հայր 'ի ժամանակն։
Եւ առժամայն ընտրէ զա
խորժակսն մարմնոյն տալ,
և յառաջիկայ ժամանակն
ընկենու զբարեգործելն։
Եւ ապա այսու սընոտի
յուսով զինքն խաբեալ՝
յանկարծակի լուծեալ՝ի
կենացս անպատրաստ և
դատարկ 'ի գործոց բարեց̅
գտեալ՝ մտանէ ընդ մշտըն
ջենաւոր կապանօք. որում
առաջին վստահանալն ժա
մանել ոչ զօրեաց։ Այլ
աստ բանք են որոց զըղ
ջումն յաղթեաց։ վ̅ս որոյ
ասէ,
4 Թէպէտ և յա̅յ ոչ եր
կընչիմ, և՝ի մարդկանէ ոչ
ամաչեմ, գոնեայ վասն աշ
խատ առնելոյ զիս այրւոյն՝
արարից նմա դատ. զի մի՝
Գ.լ՛՛ ծը

իսպառ եկեալ Թախան
ձիցէ ինձ։
Այս յայտնի է ոմանց որ
'ի խղճէ մտացն տագնա
պին. և առ 'ի չժուժել
նեղասրտութ̅ն և տրտմու
թ̅ն որ 'ի յիշատակէ մե
ղացն կրեն՝ հեղուն զան
ձինս 'ի լաւագոյնսն։
Եւ են որ անյուսացան
եթէ ճնար է ապաշխարու
թբ̅ հասանիլ արդարութ̅ե.
և ոչ կարացեալ տանել
խղճի մտացն՝ 'ի խեղդ մը
տաբերեցին։ Արդ այսպ
զօրաւոր և դժուարակիր է
հոգւոյն Թախանձելն ըղ
միտսն յիշտկաւ մեղացն.
վ̅րոյ ասէ, Թէ և յա̅յ ոչ
երկնչիմ։ Այսինքն՝ Թէ
և չդոյր ինչ յա̅յ կարգ̅ել
'ի վերայ անբարշտաց տան
ջանք, և ոչ դատաստանաւ
հատուցանել վրէժս, և 'ի
մարդկանէ ոչ մի ինչ ամօ
թոյ և նախատանաց կիրք,
գոնեայ վասն աշխատ առ
նելոյ զիս մտացս խղճի՝
լաւագոյնէ դառնալն յար
դարութ̅ի և ազատանալ
յէ 'ի

՚ի տոտմական կրից ասաի։
Այս է ասելն, զի մի՛
խապառ եկեալ Թախանձի
ցէ զխս։ Գիտէ զի ՚ի լա
ւագոյնսն փոխիլ ազատ է
յայսպիսի տխրական կրից.
և ՚ի նոյն միտն Թաղծեալս
պահէ զոգին։ Այլ արդ՝
ընդ որում առ անիրաւ տըն
տեսին ասաց՝ եթէ գո
վեաց տր զտնտեսն անիրա
ւութեան զի իմաստութ
արար։ զնոյն և աստ առ
նէ։ վշտ ասէ,
6 Լուարուք զինչ դա
տաւորն անիրաւութեան
ասէր։ Իսկ ած ոչ առնէ
վրէժխնդրութի ծառայից
իւրոց որ աղաղակեն առ
նա ՚ի տուէ և ՚ի գիշերի և
երկայնամիտ միայն լինի
առ նոսա։
Զի թէ զանմարդի և
զվայրենամիտ դատաւորն
բազում մաղթանքն հա
ւանեցոյց դառնալ յիրա
ւունս, քանիօն առաւ զար
դարադատ բնութին. որ
և յոժմ պատրաստ է տալ
խնդրողին. միայն թէ զար
Գոլ՛ Ժը

ժամն խնդրիցեմք որ մեզ
օգտակար իցէ և նմա տալն
պատշաճ։ Որդ վն զի
զակիզբն բանին յայն եդ՝
եթէ պարտ է ստէպ յա
ղօթս կալ և ոչ ձանձրա
նալ, և տալոյն երաշխաւոր
լինի. և անիրաւ դատաւո
րաւն՝ զերաւացին հաւա
տարիմ առնէ։ Այլ թէ
ժամանակաւ երկայնամիտ
լինի, մեզ կարծամիտ լինիլ
չէ օրէն։ Ցուցանէ և
աստ մեզ ուսուխ զատտանայ.
և վրէժխնդիր զած. զի ե̄
ամի որչափ նեղէ զմեզ,
ունի վրէժս հատուցանել
այ։ Դարձել և զչարս ՚ի
մարդկանէ զարհուրեցու
ցանէ. որքնեղէն զանանկս։
Զի թէպէտ և զրկելոց
չէ պարտ աղօթիւք զած
՚ի վրէժխնդրութի կոչել,
սակայն նա ինքն զդատաս
տանս իւր դատէ։ Ըստ այնմ,
իմ է վրէժխնդրութի և
ես հատուցից։ Հռ 12. 19։
Այլ և աստ մեծաւ պըն
դութ զնոյն կարգէ։
Որ յո՛ ասեմ ձեզ ․․․ առ
ՃԸ

նէ վրէժխնդրութիւն նո՟ց
վաղվաղակի. զի որ չարքն
իցեն՝ մի՛ արհամարհիցեն
վ՟ա երկայնմտութենէ. այլ
երկիւղիւ վրէժխնդրու-
թեանն չարչարեսցին։
Եւ որ նեղեալ են՝ յու-
սով մխիթարեսցին։
Որդ այս ա՟մ ՚ի կատարա
ծի անդ ունի զտեսու՟ն.
զի ՚ի դատաստանի կացե՟լ ա՟յ՝
դատէ՛ արդարութե՟։
Եւ թէպէտ մասնաւոր
ատ ցուցանէ երբէք ու-
րեք առ արդարս կամ առ
մեղաւորս, սակայն ա՟մ
իրաւունքն՟ր առ ա՟մենեան
պահեալ է իւրում ժամա
նակին։ Ա՟ որոյ յորմէ
սկսաւ ՚ի նոյն աւարտէ
զբանն։
8 Իսկ որդի մարդոյ ա՟է
եկեալ գտանիցէ արդեօք
հաւատս յերկրի։
Օ ի յայտ լիցի թէ ա՟մ
գործք բարիք սպառեալ
պակասին յերկրէ, և միայն
թէ ա՟ծ դիտու՟ի մնացեալ
լիցի. և այն առ ոմանս։
Քզի զայս արդեօքն յայտ

առնէ։ Ա՟ զի նեռն ե-
կեալ յանբարի աւուրսն
յայնոսիկ և զօրացեալ իշ
խանութե՟՝ ընդ կրօնիցն տայ
պատրո՟ղ բառնալ զնա։
Դ՟րձլ առ ոմանս պանծա-
ցեալս յանձինս թէ ար
դարք իցեն և խոտեն զը
բաղումս, ասաց զառակս
զայս։
Զ՛որ է ամբարհաւանութի
և որ ՚ի նոյն յարեն ախտք
հոգւոց։ վասն զի կրկին
գործեն ՚ի մեզ զվնասն։
Մի՛ զի զբարիսն որ ՚ի մեզ
են՝ հոսեն, և որոց կրեն
զվատթարագոյնսն՝ իմանալ
ոչ տան. և մարմնոյ հան-
գիստ ոչ շնորհեն որպէս
զայլ տեսակս ախտից։
Քանզի մարմնականն ախտք՝
առ հեղգագոյնսն և տար
տամսն բնաւորեցան բու-
սանիլ։ Իսկ ամբարտաւա
նութիւն և որ նորին մա
սին են՝ առ փոյթսն և որ
առաքինութե՟ լինուն վարսն
իւրեանց՝ զօրանան։
Եւ մեծ տոյժք են ոգւոյ՝
որ տաժանաբար տանին

տքնութե և պահոց պնդու-
թեան՝ և մաքրութեամբ
բարեպաշտեն, և ընդ պոռ-
նիկսն և ը՟ փափկացեալսն
մարմնով՝ վրիպեալ գտա-
նին 'ի հաւաստի ընտրու-
թեանն։ Այլ արդ զի մի՛ ոք
առանց գիտութե ըմբռ-
նեսցի յայսպիսեաց վնա-
սակար և անշահ ախտից՝
ասա՛ց զառակս զայս։

10 Արք երկու ելին 'ի
տաճարն կալ յա-
ղօթս։

Քանզի անդ սահման էր
օրինացն մատուցանել տն
զզոհս և զգոհութիւնս.
և տմ նուիրանաց առա-
քինութե նց տեղի այն էր
ընծայելոյ. և յղգս այսո-
րիկ անդ ելանէին և սոքա
աղօթս մատուցանել տն։
Մինն փարիսեցի ասէ,
և միւսն մաքսաւոր։
Մինն 'ի կարգի՛ լաւագու-
նիցն առնոսա, և միւսն 'ի
կարգի՛ չարացն յորմէ ենք
ես գարշէին. և բանբա-
սէին ես զմն վն առնոսա

մտանելոյն։ Այլ նոյն ինքն
տէրն զմնացեալսն 'ի չարիսն՝
ասաց լինիլ իբրև զհեթա-
նոսն և զմաքսաւոր։
Արդ զմն հուպ առ մի-
մեանս եդեալ՝ զմինն վն
ամբարտաւանութեն ընդ
չարս պատժէ, և զմիւսն
վն խոնարհութեն արդա-
րանալ վկայէ։ վասն որոյ
ասէ։
Փարիսեցին կայր մեկու-
սի, և զայս առանձին ա-
ղօթս մատուցանէր, աստ իմ
գոհանամ զքէն, զի ո՛չ եմ
իբրև զայլս 'ի մարդկանէ,
զյափշտակօղս և զանիրաւս
և զշունս։
Այս գոհութի՝ չա՛ր գը-
տաւ քան որք տրտնջէինն։
ըստ այնմ զոր չար հովիւքն
գործէին և ասէին, օրհ-
նեալ տր և փարթամացաք։
զաք. II. 5։ ըստ նմին և սա՛
յաղօթելն վնասի։ Զի
ոչ թէ բնաւ ո՛չ յանցեաւ
և ո՛չ ինչ է կարօտ խնդրը
ու՛ածս առնելոյ՝ աղօթէ։
Ո՛չ վասն որոյ յանցեաւ,
զի մարդ էր ախտակիր բը-

նութեամբ. և ոչ վն՟ ժա
մանակին որ կայր առաջի
դիւրասխալ բնութես:
Վասն զի ըստ յօբայ, ով
իցէ առանց մեղաց, թէ և
միով աւուրբ իցեն կեանք
նր՟ 'ի վր՟ երկրի. և երկինք
իսկ չեն անարատ առաջի
նր՟, թող թէ մարդ որ ըմ
պէ զանօրէնութի: 15. 13:
Արդ այսու և որ ը՟ այսմ
իցեն խրատիմք թէ, ոչ ոք
յարդարոց վստահացաւ
յարդարութիս իւր պար
ծիլ առաջի ամենատես
բնութեն: Այլ սա ախ
տին ամբարտաւանութեն
յիմարեալ՝ առնմ մեծա
բանէր որ յառաջ քան ըզ
գործելն զա՟մ ուրուք ու
նի անվրէպ գիտել զվարս:
Արդ ոչ ներեաց այ՟ ճա
նաչողին, այլ ինքն սկսանի
չարաչար գոհանալ: ասէ,
ոչ եմ իբրև զայլս 'իմարդ
կանէ: Կարի մեծացաւ
յանդգնութբ յայսպիսի
միտս եկեալ. զի զամենե
սեան չարս համարեցաւ
և զանձն միայն յարդա

րութն կացեալ: Եւ զինչ
շահ անտի, զի այլք նախա
տեացին առ նր՟ լաւութբն:
Ո՞չ ապաքէն այն յորոյ ձեռն
հատուցումն է՝ ոչ սխալէ:
Ըստ այնմ, տր՟ ճանաչէ զար
դարն և զանբարիշտն:
Եւ զիարդ թմբեալ 'ի փա
ռասէր ախտիցն գայ ասել՝
ոչ եմ իբրև զայլս 'իմարդ
կանէ: Արդարև ոչ էր նա
իբրև զայլս 'ի մարդկանէ
զհեզս և զխոնարհս, յորս
հանգուցեալ է ած՟. այլ
այնքան մոլեալ 'ի դիւաց
յորոց ըմբռնեալն էր, ոչ
բերէր յինքն արդելուլ
զոր երկներն. այլ աղձա
տեալ խայտառակիւր ա
ռաջի այ՟ և ոչ իմանայր:
զի որ զանձինս գովեն,
լի են պարսաւանօք:
Արդ դատեալ զմնեան
զորս շուն անուանեաց
անիրաւս և յափշտակօղս՝
դառնայ և 'ի մաքսաւորն
յայն: Եւ ոչ եմ ասէ
իբրև զմաքսաւորս զայս:
Մեծ ամբաստանութիւն
ոգւոցն չարուն՝ յորժամ

հաստարակաբար ձգեն ըղ-
մտս ամբարտաւանս: բայց
այն կարի ևս չարագոյն է՝
յորժամ ՚ի մեծն և ՚ի մերձա-
կայն կրթէ զբանն և առ-
ոտն հարկանէ: Ո՜ որ ևս
անչափ ախտացեալ էանց
ընդ ամենայնն. և ոչ ան-
խայեաց յայն որ այն ինչ
անկեալ կայր առաջի նր
և ժտէր գտանել թողութի.
այլ անփակ բերանով և ՚ի
նա՛ ձգեաց զբանս ամբաս-
տանութե: ՚Ի վե՛ր այսոցիկ
յաւելու և զայն ևս որ
ապշելոց մնացէ:

12 Պահեմ ասէ երկիցս ՚ի
շաբաթու. և տամ տասա-
նորդս:

Ա՜հ յիմարութեն. թէ
զորպիսի ինչ առաքինու-
թիւնս ունի պարծի. կամ
ո՛չ առաջի բարերարի ար-
բեալ ամբարհաւաճութե:
Ցայսպիսեաց ասաց զգու-
շացոյց որով ասացն, յոր-
ժամ զամ կատարիցէք,
ասասջիք եթէ ծառայք ան-
պիտանք եմք. զոր պարտ
էր առնել արարաք:

13 Իսկ մաքսաւորն կայր
մեկուսի. և չկամէր և ոչ
զաչսն ընդ երկինս ամբառ-
նալ. այլ կոծէր զկուրծս
իւր և ասէր, ած քաւեա՛
զիս զմեղաւորս:

Իբրև եդ զպատճառս փա-
ռիսեցւոյն կործանմանն
որ արդարն կարծէր զինքն՝
կարդէ առ նմին և զայն ինչ
որով արդարանայ յանցա-
ւորն: Արդ այս՝ ամ ուս-
տեք յայտ է՝ թէ սկիզբն
մերոյ անկմանն ամբարտա-
ւանութիւն եղև. վասն որոյ
և հաստիչն բնութես իբրև
կամեցաւ կանգնել զան-
կեալքս՝ խոնարհութբ ե-
մուտ ՚ի բնութիս զի ըղ-
մերս հպարտութն բժշ-
կեսցէ: և զնոյն եցոյց մեզ
ճանապարհ բարձրութն:
Արդ փարիսեցին զառա-
ջին պատճառս անկմանն
մերոյ ախտացեալ անկաւ.
իսկ մաքսաւորս զերկրորդ
դեղս փրկութե գտեալ՝
անդրէն ՚ի նոյնն դարձա-
շնորհօք փրկողին մերոյ քի:
Նմանցի առ խոնարհութեն

և յերկինս հայիլ զանձն
անարժան համարէր. որ նը-
մանէր դարձին մանասէի։
Զի որպէս նա ասաց՝ չեմ
արժանի հայիլ և տեսանել
զբարձրութիւնս երկնից,
նոյնպէս և սա ոչ կամէր
զաչսն յերկինս ամբառ-
նալ. այլ բախէր զկուրծսն
և հառաչէր ասելով, ած
քաւեա զիս զմեղաւորս։
Եւ զի այսպիսի ոք էր կա-
տարեալ զղջմամբ, վասն որոյ
և վկայեաց նմա այն որ ըզ-
ծածուկս յայտնէ։
14 Էջ սա ––է արդարացեալ
'ի տուն իւր քան զնա։
Եւ է կարծի՛ք քաջ յիրաւի։
քանզի զոր խոստովանի ոք
առաջի այ՝ կորուսանէ։
Որդ սա զմեղս խոստովան
եղև և կորոյս, և նա զար-
դարութիւնն՝ և Թափուր
գտաւ։ Եւ սա 'ի ծածու-
մեղաց ալեկոծեալ՝ 'ի նաւ-
ահանգստի անդ խոնար-
հեաց զնաւապետն. և 'ի
վտանգէ ալեացն յարու-
ցելոց ապրեցաւ։ Իսկ նա
'ի նաւահանգստի անդ բե-

ռամբ ընկղմեաց զնաւն.
զի ոչ խոնարհեաց զնաւա-
պետն օգնական, այլ զան-
ձին ճարտարութիւն առաջի
եդ։ առ որս ասէ,
14 Ամ որ բարձրացուցա-
նէ զանձն խոնարհեսցի.
և որ խոնարհեցուցանէ
զանձն բարձրասցի։
Քանզի մարդ ոչէ ինքն
իւր բաւական. այլ ձեռն
ամենակալին է որ խոնարհե-
ցուցանէ և բարձրացու-
ցանէ։ Զի որք 'ի նա ա-
պաստան առնեն և զան-
ձինս 'ի չափու ունին, ու-
նի և նա 'ի ստոյգ բարձ-
րութեն հատուցանել պա-
տիւ փոխարէն խոնարհու-
թեն նց։ Իսկ որ փառաւս-
րութե՝ անձամբ զանձինս
յառաջ մատուցանեն 'ի
փառս ածել, և ոչ վն զի
ոչ վստահացան յայնմանէ
առնուլ որ բաշխէ զփառս,
նորին արդարև նա ինքն
ամփոփէ զնոսն. և այնպ
յանդիմանեալ լինի մարդ-
կային տկարութիւն մերկա-
ցեալ յածային փառացն.

զի ոչ է բաւական անձամբ
ստանալ զփառս. Թէպէտ
և աստ սակաւ մի խաբէու
թեամբ ծածկեալ գողա
նայ զինքն։
Զգուշագոյնս դնէ հան
դէպ այսոցիկ զմանկանցն
ճառս. զի ա՟ք բնու՟է ունին
զօրինակ բարեաց։
15 Որդ՝ ածեալ լինին
առնա մանկունք ՚ի ծնո
ղացն զի օրհնեսցին։ Ք՟զի
ծանեան թէ ձեռն այն որ
բառնայ զհի՟անդութի՟ս
նց, հաստատէ նա և զօրհ
նութի՟ս մանկանց նոցա։
Իսկ աշակերտքն վ՟ն պատ
ուոյ ն՟ր արգելուին զն՟ս.
բայց նա որ ա՟մ ուրեք խո
նարհութ՟բ գնաց և զնոյն
ուսոյց՝ ասէ, իբա՛ց կացէք
և թո՛յլ տուք մանկտւոյդ
գալ առիս։ Աւ՟ ընկալեալ
օրհնեաց զն՟ս և արքայու
թեանն խոստմամբ պատ
ուեաց։ Աւ՟ օրինակ բա
րեաց ա՟մցուն անտի՛ ետ,
զի զեկամուտ չարիսն և
զամբարտաւանութիւնն
մերկացեալն և յառաջինն
դարձցին ընտանի բնութ՟
անմեղ և խոնարհ։ Աւ՟ ընդ
փառսն զոր կորուսին՝ ըն
կենլով զայս՝ առցեն ստա
նալով զնա։
18 Տեսեալ մեծատունն
թէ զդրունս արքայութե՟ն
բանայ մանկանցն և որքնոր
մանուկն նոցա, շարժեցաւ
բարւոք նախանձու և մա
տեաւ ուսանիլ զճանպ՟րհն
որ տանի ՚ի կեանսն. և կո
չէ՛ զնա վարդ՟պտ և բարի։
Իսկ յս՟ ոչ հաճեցաւ ՚ի
բանս նորա. զի իբրև ընդ
սոսկ մարդոյ խօսեցաւ ը՟
նմա։ վ՟որոյ ասէ։
19 Չիք ոք բարի, բայց
մի ա՟ծ։
Յասելն զա՟ծ միայն բա
րի, ոչ եթէ զանձն իւր
արտաքոյ բարւոյն փակէ,
այլ զի ուսցին զնա ա՟ծ բա
րի և ոչ մարդ միայն։
Յարէ զնա յօրէնսն, զի
և նոքա վայնորիկ միայնակ
խօսին ընդ նմա և ուսու
ցանեն մի՛ լինիլ ՚ի զանազա
նիցն։ Աւ՟ խրատեն մի՛ շը
նալ զի լցցեն նոքա զյար

ձակումն բնութեանն որ
առանց վնասու տուժանց:
Եւ մի՛ ցանուղ անառա
կութբ յորոց արգելան:
Մի՛ սպանանել, զի անօ
րէնութի մեծ է բառնալ
զկեանս այնմիկ որ ո՛չ ունի
տալ զնա: Մի՛ գողանալ,
զի չափէ անձամբ վարիլ
առ ընկերին վնաս: Եւ ո՛չ
վկայութիւն տալ սուտ,
զի ո՛չ միայն զրպարտութբն
սահմանի նա, այլ և զմիջ
նորդն որով վարի հաստա
տել զկարծիսն՝ ստանայ
վրէժխնդիր 'ի հաւաստի
քննութեն: Պատուեա՛ զ
սէ զհայրքո և զմայր: զի
յետ առաջինն պատճառին՝
երկրորդ զնոսա ունիմք.
և որ առ սոսա է պատիւ
և անարգանք՝ յառաջինն
ձգեալ լինի:
21 Իսկ նա՛ վրիպակ և սուտ
բանիւք ասէ, արարի զայդ
ամ: Իսկ յն զի յանդիմա
նեսցէ զթերակատար պար
ծանս նորա եթէ անձին
անյայտ էր՝ եթէ առ այլս
ձևանայր՝ ասէ, պակաս է 'ի
Գ՛՛ Ճը

քէն այն որ ասէ, սիրեսցես
զընկերքո իբրև զանձնքո
Նպա թէ ոչ,
22 Վաճառեա՛ զինչսքո
և տո՛ւր աղքատաց:
Նորդ՝ եդ 'ի կշիռս օրէ
նացն զգործս նորա և պա
կասեալ գտաւ: Զի եթէ
չափով անձինն որոշեաց
ընկերին, ուստի՞ բազմա
ցան այնքան մրթերք նր:
որ և 'ի սփռելն և տալ աղ
քատաց զի արդարութին
մնացէ՝ վճռացեալ գտաւ:
Վասն որոյ որ բաժանեն
'ի ստացուածս և առ ած
զսյոյսն, երկուցն ևս հասա
նիլ անհնա՛ր է: Եւ 'ի տա
րակուսիլ աշակերտացն վն
անհնարութե իրացն, ասէ,
անհնարինքն հնարաւորք
են այ: Մ՛չ ագահութբ կա
պելոցն տալ փառս, այլ
փոխել 'ի լաւագոյնն զյար
ձակումն բնութեն:
28 Ն:ուայս պետրոս զան
ձին և զբազմաց որք ան
սան հրամանին՝ հարցանէ
'ի փոխատրութեն ուսանիլ
զպարգևսն: Իսկ յն առ
յժե այս

այս են առատացոյց ան-
դրէն ունիլ զդարձն: զի
բազմապատիկ այժմուսէ,
ԺԲրում վկայէ ելք իւրացն:
զի ԺԲ ծովակին՝ զորիզերս
ընկալան: Սոքա առ հան
դերձեալսն զկարծողիսն
պնդեն, և հաստատուն ըզ
լոյսն առ հանդերձեալ
հատուցումն պահեն:
31 Արդ զնոցայն ասացեալ
զորս լքին և որում ժա-
ռանգաւորք եղեն, յանե-
լու և զխուրն: Մեկուսի տա
րեալ 'ի բազմաց զխորհըր
դազզածսն խօսի ԺԲ նն,
եթէ լցաւ ժամանակն զի
լցցի մարգարէութին մար
գարէիցն որ վն չարչարա
նաց նորա և նախատանաց
և հրէական ժողովոյն և
հեթանոսաց առ այս միա-
բանութե. և անարգ մա-
հուն, և աքանչելի յարու-
թեանն: Նա յաճախ զայս
ասացեալ առ նոսա, նոքա
իմանալ զայս ո՛չ զօրէին:
Զի էր ծածկեալ բանն
զի մի՛ գիտասցեն: Նա էր
այս կարի՛ օգտակար. զի
Գւ՛՛ Ծը

յայնժամ ծածկեսցի, և
յետ ելից իւրացն յիշեսցեն
զառաջինսն:
35 Եւ 'ի գնալն նր առ
ճանապարհաւն,
նստեալ կոյրք երկու՝ յօ-
րինակ հրէից և հեթանո
սաց՝ միայն ձայն լու-
սոյն որ ծագելոց էր որոց
նստէին 'ի խաւարի և 'ի
ստուերս մահու: Արդ
'ի յանցանելն հարցանէն
թէ ո՞վ իցէ: Նա նախան-
ձաւորքն փոքրկացուցա-
նեն զնա. և մախացեալ
ընդ փառսն նր՝ նազօրեցի
ասեն զնա: Ծանեան և
կոյրքն թէ յաչաղինք էին:
Վն որոյ թողուն զատե-
լեացն և առնուն զմար-
գարէիցն. և տր և որդի
դաւթի աղաղակեն:
Նա նոցա դըժկամակ առ-
այն լեալ՝ սաստէին զի լը-
ռեսցեն: իսկ նոքա ոչ ինչ
դրեն զսաստելն նոցա:
Յօրինակ հաւատացելոցն.
որք ո՛չ 'ի սպառնալեացն եր
կեան և ո՛չ 'ի հարուածոց
զանդիտեցին լռել 'ի քա-

ըողելոյ զանձուԹի՟ նորա։
Իսկ յե՟ տեսեալ զպինդ
հաւատասենցն զի անցանէին
զխափանողքն, կացեալ կո
չէ՛ առ ինքն, հարցանէ, և
զպարգևս լուսոյն շնորհէ։
յօրինակ ներքին մարդոյն
լուսաւորուԹե։

* Գլուխ Ընծայանին
ԺԹ

Զայն նշան զքան
չելեաց արարել
'ի վերայ կու
րացն, մտեալ
շրջի ընդ ե
րկրով։ ԽոնարհուԹե՟ ամ
ուրեք մտանէ և շրջի․
զի մի՛ ոք որ կամեսցի մեր
ձենալ առնա, վս՟ տկարու
Թեանն արգելցի։
Այս յառակս օրինակի առ
նուլ զքաղաքս զայս՝ մի՛
ումեք վայրապար համա
րեալ լիցի։ Ապա Թէ ոչ,
զի՞նչ՝ զի ամ քաղաքացն
այնոցիկ այնպիսի ինչ ո՛չ
եղեն։ Ո ի յովէ ան
ո՛ւամբն յի՟, գայր յեզր յոր
Գլ՟ ՃԹ

դանանու՝ ժողովրդեանն
առաջնորդ 'ի մովսիսէ կա
ցեալ․ և տապանակէն յետս
դարձուցանէ զջուրսն յոր
դանանու․ զորոյ զօրինակն
մի՛ ոք տգիտասցի։ յն՟ 3։
Դարձել նովին տապանա
կաւն՝ առաջին յերկրով
մերձ դան․ և հրամանաւն
ամ շուրջ գան զքաղաքաւն
ամենայն ժողովուրդն։
Ուր տապանակէն և ձայնիւ
առանց մեքենայից հոսեալ
լուծանէր պարսպին ամրու
Թե՟․ և ապրեալ լինի պոռ
նիկն։ Այս նզովէ յեսու
զքաղաքն և զոր վերստին
շինէ զնա և զոր ազահէ՛
առնուլ ինչ 'ի նզովից ան
տի 6։ Որդ առքա ամենե
քեան յայտնի՛ են․ Ըրում
ունին զբանս Թարգմա
նուԹե՟ առակին։ զի որ ինչ
անդանօր 'ի յեսուայ գոր
ծեցաւ առ երկրով, նոյն
և 'ի քնէ առ դժոխս։
Այս յեսու օրինակն յի՟
աւերէր զերկրով յօրի
նակ դժոխոց․ և ո՛չ պատե
րազմաւ մարմնոյն զինու,
յԺէ այլ

այլ ձայնիւ և ամքումբք
եօթն թուով։ Եւ զդր
ժոխսն յա̄ հրամանաւ և
եօթն զօրութ̄ հոգւոյն։
Եւ յետ ելեցն 'ի յորդա
նանէ ով̄ և նոքա՝ ապրե
ցուցանէ զպտունիկն յորի
նակ պտունիկ հեթանոսց։
Սրոյ և դաւիթ յիշէ 'ի
քաղաքին այ̄ զռահաբ և
զբաբելոնացիս և զծուրա
ցիս և զժողովուրդս հընդ
կաց։ այսպիսի առակօք վա
րին մարգարէքն բանիւ
և գործով։ Յաղագս որոյ
ասէ յեսու, անիծեալ է որ
շինէ զերիքով։ Անիծեալ
են որ շինեն զդժոխս զոր
աւերեաց յս̄։ Եւ շինեն
զնա ամ̄ որ դարձեալ նոա
զանդրին մեղաց յորմէ ազա
տեցանն։ Որդ ըստ այսմ
խորհրդոյ մտեալ շրջի յե
րիքով ով̄ յայնժամ յեսու։
Եւ ցանկացեալ մաքսա
ւորին տեսանել զյս̄ յորի
նակ ամենայն բնութես.
ով̄ և յայնժամ ռահաբ
յեսուայ։

1 Եւ ահա այր մի ա̄ւ կո

Գլ՟ ԺԹ

չեցեալ զաքէոս. և նա էր
մաքսապետ և մեծատուն
յոյժ։ Ոզքէ ամ̄ մեծացլ
մեղօք զորս մաքսեցին
յամենեցունց։

3 Ցանկայր տեսանել ըզ
յս̄ և ոչ կարէր 'ի բազմու
թենէն զի կարճ էր հասա
կաւն։ Մարդկային բնու
թիս որք ցանկացան գտա
նել զատոյգ գիտութին այ̄
և ոչ կարացին փոքր գի
տութն հասանիլ 'ի մեծ գի
տութին վս̄ բազմաստուած
մոլորութեն։

4 Ընթացաւ ել 'ի մոլա
թզենին. զի յանցանելն
էր այն յի̄ տեսցէ զնա։
Ընութի մարդկան որ խա
փանելի իմաստութեամբ
բարձրացան քննել զարա
րածս և գտանել զարա
րիչն, զի ոչ ունէին կալ
'ի վերայ ճշմարտութեն,
զդևս ոմանս հոմբաւեցին
արարիչս։

5 Որդ՝ եկեալ 'ի տեղին
յս̄ այն որ գիտէր զմեծ
ցանկութի առնն և ասէ,
զաքէ փութա էջ այտի.
յի̄ր զի

զի այսօր 'ի տան քում ար
ժանէ ինձ ագանիլ։
Այն որ ցանկայր տեսա
նել և ոչ կարէր, արժա
նացոյց զնա բնակակից և
սեղանակից առնել ընդ ինքեան
զի յագեսցի փառօք նոր։
Ըստ նմին օրինակի իջու-
ցանէ զՀեթանոսս 'ի բարձ
րուէ իմաստութեն որով
քննէին տեսանել զնա ·
վս զի նա քննութբ իմացել
ոչ լինի · այլ Հաւատովք
տեսանի։ Ըստ այսմ, իմաս
տութբն այ ոչ ծանեաւ աշ
խարՀ իմաստութբ զած ։
Հաճեցաւ ած յիմարութբ
քարոզութեն ապրեցուցա
նել զՀաւատացեալս։ I կոր I·21
Քանզի Հաւատոց միայն է
նա Հասանելի · ոպ ասէն,
Հաւատովք բնակեալ քս
'ի սիրտս մեր · սիրով արմա
տացեալ և Հաստատեալ։
եփ 3·17։ Եւ ասէ՝ այսօր
'ի տան քում արժանէ ինձ
ագանիլ։ Իսկ զաքէոս որ
միայն տեսանել ցանկա
ցաւ, արժանացաւ ևս այն
քան շնորՀի որում և ըն
Իլ ՏԹ

նաւ իսկ ակն ոչ ունէր։
Վս զի զխիղճ մտացն գի
տելով՝ զանդրիտէր 'ի մե
ծութենէ պատուոյ նոր։
Իսկ նա որ զծածուկս մը
տացն նորա տեսանէր, ծա
նեաւ եթէ ճոխ է զար
ծաթոյն պայծառութիւն
և զպատկերին գեղեցկու
յաղբի անդ թաղեալ՝ գը
տանել և մաքրել։ Վորոյ
յաղբոյն ոչ գարշի յղփս
սիրոյ պատկերին · այլ մերձ
գայ կոչէ 'ի խոնարՀ իջա
նել։ Ըստ որում զՀեթա
նոսս կոչեաց 'ի սնոտի ի
մաստութենէ ամբարձմանէ
իջանել 'ի խոնարՀ և Հա
ւատովք ընդունել զնա
'ի շտեմարանս մտացն։
Յայս օրինակ և զաքէ ան
յուսալի պատաՀեալ իմա
մակալութեն,
6 Փութացաւ և էջ և ըն
կալաւ զնա ուրախութբ։
Իբրև տեսին ամենեքեն՝
տրտնջէին և ասէին՝ թէ
առ առն մեղաւորի եմուտ
Հանգչել։
Զայս օրինակ բանից ամ
յժթ ու

ուրեք խօսեցան. զի ու-
նէին նոքա կեղծաւորութ՟
դարձել 'ի մեղաւորաց, և
ոչ 'ի մեղաց՝ յորմէ դար-
ձելն և հեռանալն կարի՛
օգտակար և պիտանացուէ.
Այլ տրն մեր 'ի մեղաւո-
րաց ոչ դարձի զի սրբիչէ.
և 'ի խաւարէ ոչ զանգիտէ
զի լոյս է. և մեղս ոչ առր.
և զմեղս ըղմաց վերացոյց.
Եւ վասն այնորիկ էջ 'ի
ստորինս առ մեզ զի զմե-
ղաւորս ժողովեսցէ առ
ինքն.
8 Եկն եկաց զաքէոս ա-
ռաջի տն և ասէ, տր՝
ահա զկէս ընչից իմոց տաց
աղքատաց. և եթէ զոք
զրկեցի՝ հատուցից չո-
րեքկին.
Ահաւասիկ շահ խոնար-
հութեան. զի մտանելովն
առնա՝ փոխադրեաց զնա
'ի վատթարութենէ անտի
'ի լաւագոյնս. և 'ի մեղաւո-
րաց արար արդարս.
Զայս օրինակ և առ հե-
թանոսս տեսաք. զի փո-
խեալ աւետրնին 'ի հրէից
անտի՝ հանգեաւ 'ի հեթա-
նոսս. Եւ մախացեալ հը-
րէիցն չարախօս լինէին. իսկ
աւետրնն շահ մեծ արար
հեթանոսաց. Զի մար-
դիկ որ զդևս զգեցեալ
էին՝ զքս զգեցան. և որ
կոխեալ էին 'ի սատանայէ,
հաւասարորդ հրեշտակաց
գտան և որդիք այ.
Արդ վն զի անց զաքէոս,
զկէս ընչիցն տալ աղքա-
տաց, և զզրկանսն չորեք-
պատիկ հատուցանել.
Վասն զի լուեալ էր թէ
տմ ուրեք այսու բանիւ
վարեցաւ. Ըստ որում առ-
այն որ ասաց՝ զի՞նչ գործե-
ցից զի զկեանսն յաւիտե-
նից ժառանգեցից. ասէ,
վաճառեա՛ զինչս քո և տո՛ւր
աղքատաց. Եւ դրձլ թէ՝
վաճառեցէ՛ք զինչս ձեր և
տո՛ւք ողորմութի. և ամ
ինչ ձեր սբ է. Եւ երա-
նելիք են ողորմածք.
Այս ոչ միայն հրամանի,
այլ յոչ մատուցեալ հաւա-
սալէ՝ զբարեգործելն առ
աղքատս ընդ ագահութեն.

և ընդ չարագործելոյն՝ չը
րեքպատիկ զդարձն ան
դրէն տալ։

9 Ասէ Յս, այսօր ե
ղև փրկութի տանս այսմիկ.
զի և սա որդի աբրահա
մու է։ զի եկն որդի մար
դոյ խնդրել և կեցուցա
նել զկորուսեալն։

Ընդ մտանել փրկողին՝
փրկեցաւ ոչ միայն զաքէ
ոս, այլ նովաւ և ամ տունն
Ասէ զի կարևոր պէտք են
փրկելոյն՝ ասէ, որդի՛ է սա
աբրահամու, զորմէ ան
փոյթ առնել ոչ է արժան
ոմ փարիսեցիքն փակէին
զարքայութին առաջի մարդ
կան։ Այսն օրինակաւ եղև
փրկութի 'ի մտանելն քի
յՅսա յայս՝ իբր միում տան.
և ամէքեան եղեն որդիք
աբրահամու հաւատովք՝ 'ի
քս յս։ Ոսյ և կատարած
բանիս՝ 'ի ճշմարտութիւն
ածեալ բովանդակէ զա
մենեսեան 'ի մի զհրէայս
և զհեթանոսս, յասելն,
եկն որդի մարդոյ 'ի խնդ
րել և 'ի կեցուցանել զզ



կորուսեալն։ Որդ՝ ամ
ազգաց 'ի վէհ կորստեան
անկեալ իբրև զմի ոչխար,
եկն որդի մարդոյ հովուե
բնութեամբ՝ գտանել զկորու
սեալն և 'ի վերայ ուսոյն
բառնալ։ Յորժամ զայս
լսէին աշակերտքն և այլք
որք մերձ էին՝ եթէ էր վա
խճանել եղև նմա 'ի հօրէ
յաշխարհ, համարէին թէ
առժամայն յայտնելոց է
վերին թագաւորութի նր։
Ասէ զի արդարև էր այս
պիսի կարծիք առ նոսա,
նորին ազդաւ և որդիքն
զեբեթեայ ընդ աջմէ և յա
հեկէ խնդրէին նստիլ։
Որդ՝ յաւել նմ առակ
բառնալ զայն կարծիս որ
առժամայն իցէ։

12 Ասէ, այր ոմն ազ
նուական գնաց
յաշխարհ հեռի, առնուլ
իւր թագաւորութի և
դառնալ։

Այր՝ վն բնութեան մերոյ
զոր էառ. և ազնուական,
որ ոչ միայն ազնուական,
այլ և քան զամ բնութի

ազնիւ՝ անդր եւ կացեալ
անզուգական բարձրութբ։
Մի՛ եւ նոյն է մերով բնու
թբս 'ի խառնելն եւ 'ի միա
նալն։ Իսկ յաշխարհ հե
ռի գնալն, չէք ուրեք հե
ռագոյն 'ի մէնջ տեղի. քան
ուր գնաց նա 'ի սրբութի
սրբութեցն մտեալ 'ի ներ
քին կողմն վարագուրին։
Բայց ասելն՝ առնուլ իւր
թագաւորութի եւ դառնալ,
թէպէտ տան զայսպիսի իրս
առակոյն, սակայն եւ ո՛չ առ
նա պատշաճի. վս զի ընդ
առնուլն՝ զամ ինչ ունի,
եւ ո՛չ թէ առ սակաւ սակաւ
եկն 'ի կատարելութիւն
յառաջադէմ եղեալ։
Նոյն զձեւ կերպարանի բա
նիցդ՝ վս ը̃լ մեզ յայտնե
լոյն կարգէ։ ապա թէ ոչ՝
զի՛նչ ունի ասելն, իշխա
նութիւն ունի որդի մար
դոյ թողուլ զմեղս։
Նոյն իշխանութի տայ աշա
կերտին՝ թողուլ եւ ունել։
եւ հաստատոյ նմա զփականս
արքայութեան երկնից. զի
փակեսցէ մեղուցելոյն,

Գ.Լ" ՏԹ

եւ բացցէ զղջացելոց։
Նոյն այսպիսի ունելով իշ
խանութի եւ յետ յարու
թեն՝ իբրու թէ ոչ ունէր՝
ասէ, տուաւ ինձ ամ իշխա
նութի յերկինս եւ յերկրի։
Իսկ պօղոս որպէս թէ տա
կաւին եւս ոչ ունի՝ ասէ,
յորժամ տացէ 'ի ձեռս ըզ
թագաւորութիւն այ եւ հօր։
1 կորն 15. 24։ Նման սմին
եւ դանիէլ եւես՝ զի նմա
տուաւ իշխանութի. եւ թա
գաւորութի նր թգրութի
յաւիտենական։ 7. 13։
Որդ այս բատորում ասա
ցաւ՝ վս յայտնելոյն կար
գեալ է. այլ նա ը̃ սկզբան
յղանալոյն՝ զամ ունէր որ
ինչ յատուկ ածութենէ.
եւ ո՛չ յետ այնորիկ ընկա
լաւ ինչ։ Զայս օրինակ
բանից իմանամք եւ աստ,
զի եկն նա նուաստութբ
կեցուցանել. եւ դարձաւ
անդրէն ուստի եկն. եւ
հաստատեց ժամանակ յո
րում դառնէ զամ տիեզերս.
եւ յայնժամ յայտնէ զինքն
իւր ընտանի փառօքն։

յիբ

Որդ երևեցաւ այժմ ծը
նընդեամբ. և վարագու
րեաց 'ի մէնջ զծուն իւր՝
Թանձրագոյն մարմնովն.
և կոչեաց զմեզ ազգս ծա
ռայս իւր. և ետ մնաս
տասն և ասաց, յարդեցէք
զայդ: Նման են այս ա
ռակ՝ և որ 'ի մատթէոսի
աւետարանին գրեալ են
քանքարքն: Այլ այնպէս՝
մինչ զի կարծելի եղև թէ
նոյն իցէ: Սակայն զնոյն
ասել՝ կարգ բանիցն ոչ ու
նի: զի անդ այլ չափ ա
ռաջնոյն, և այլ երկրդին
և երրորդին. իսկ աստ հա
ւասար չափէ ամենեցուն:
Այլ անդ հաւասար մատու
ցին զշահն չափով տուո
ղին. իսկ աստ 'ի հաւասա
րէն զոր ընկալան՝ ոմն բա
զում և ոմն սակաւս մա
տոյց: Որդ 'ի համեմատելն
զայս ընդ մերս՝ բարւոք
դատեցուք յատուկ առ վար
դպտս որոշել զքանքարսն:
Իսկ զմնաս զայս՝ հասա
րակաբար առ ամենեսեան
տուեալ օրինացն նր հնա



զանդութն գործել զնա
և պահել. որում մք ոչ
ինքնատէր և բաւականն է:
Իսկ տասն ասացեալ ըղ
մնասն, կամ զգայարանօքս
չափի, որով ընդունիմք կամ
'ի բաց ընկենումք. կամ
թէ զօրէնս իւր թուեաց
ըստ օրինացն 'ի մի ածեալ:
վասն զի այնպէս մինն
միւսումն պահեալ լինի:
Որդ տուեալ զայս՝ ասէ,
յարդեցէք մինչև եկից:
Այլ է սա յայտնի տեսո
ղացն. զի զօրէնսն զոր ետ՝
պարտ է 'ի գործ ածել մզ
զգուշութբ. և սպասել՝
ակնունել գալստեան նր.
և ըստ վաստակոցն՝ ակնու
նել և հատուցմանն:
14 Այլ քաղաքացիքն ասէ
որ ատէին զնա, առաքեն
հրեշտակս և ասեն, ոչ կա
միմք զթգւորել դորա
'ի վերայ մեր:
Այնքան յայտնագոյն ու
նի զմիտսն յեղեց իւրացն,
զի և մեկնութե բնաւ իսկ
չէ ոչ կարօտ. թէ ո՞վ ոք
քաղաքացիքն իցեն. կամ

զխո՛րդ ատեցին զնա ։
Յիւրան եկն առ է յօժան-
նէս, և իւրքն զնա ոչ ըն-
կալան ։ Ատեցին զնա, զի
լոյս էր յանդիմանիչ գոր-
ծոց նոցա. և նոքա սիրեցին
զխաւար առաւել քան ըզ-
լոյս. զի ծածկեսցեն ըզ-
գործս իւրեանց զաղրա-
լէցս, որք էին գերեզմանք
լցեալք ապականութեամբ ։
Վասն աղաղակէին յատենի
անդ և ասէին, չէք մեր թա-
գաւոր բաց 'ի կայսերէ ։
Եւ երկայնք են բանք ո-
րով ցուցին նոքա զբարս
ատելութն և ապստամբութն
իւր դէմ այսր թագաւորի.
զի զնոյն ինքն զնա տեսեալ
ոչ միայն ատեցին, այլ և
բազում ձաղանօք նախա-
տեցին և իւր փայտի բևե-
ռեալ սպանին ։ Եւ նորա
առ հայր երթեալ, զվկայս
ածուն նր որ քարոզէին
զամենակալ թգրութն նր'
հալածական առնէին.
զի մի' յայտնեսցեն զպա-
տիւ թագաւորութն նր ։
Եւ այս է զոր ասաց, առա
Պ.ղ ՃԹ

քեցին հրեշտակս և ասեն,
ոչ կամիմք զթագաւորելն
դորա 'ի վր մեր ։
15 Եւ եղև սէ դառնալ
նմա առեալ զթգրութին,
կոչէ զծառայսն որոց ետ
զարծաթն, եթէ զի՛նչ
շահեցան ։
Աուստեք յայտնի են
օրինակք բանիցս. զի գայ
նա առեալ 'ի հօրէ զըն-
կալեալ զիւր թգրութին,
և նստի դատել ։ Աստայնմ,
հայր ոչ դատէ զոք. այլ
զամ դատաստան ետ որդւոյ
իւրոյ. զի ամենքեան պատ-
ուեսցեն զորդի նովին սահ-
մանաւ հօր ։ Արդ առ-
նու նա համարս յանցանց
հաւատոյ քննութեամբ ։
Ատեան նախ առաջին նր
ըստ կարգի որ կատարեալ
ցուցաւ 'ի գործս առաքի-
նութեան' զիւրն պատմել
առաքինութի ։ Վասն ասէ,
մնասն քո տասն մնաս արար ։
Եւ այս ըստ առաջին կար-
գին. որ և յօդեսցէ ոք ըզ
բանս, յաղագս կատարե-
լութն ունի զթիւս զայս ։
յիշ

17 Ասէ ցնա, ազնիւ ծառայ
և բարի. զի 'ի սակաւուդ
հաւատարիմ եղեր, լիցիս
իշխանութիւն ունիլ տասն
քաղաքաց։
Այս պատուով պատուէ'
զառաքինացեալսն։ Նախ
անուամբն. զի զոր անուն
մդյ եր' նովին և զծառայսն
կոչէ։ Այր ոմն ազնուա
կան գնաց առնուլ իւր
թագաւորութիւն։ Ասէ' չէք
ոք բարի, բայց մի ած։
Ասէ աստ' ազնիւ ծառայ
և բարի։ Ի սակաւուդ
ասէ հաւատարիմ եղեր։
Ըստ որում զվատթարսն
յանհաւատարիմ լինելոյն
դատէ, ըստ նմին և զսոսա
'ի հաւատարիմ լինելոյն
պատուէ։ Նոյն ասէ, եթէ
յանիրաւ մամոնայէն և
յօտարին չեղէք հաւատա
րիմ, զճշմարիտն և զձերն
ձեզ ո՞ հաւատասցէ։
Իսկ աստ ասէ, զի 'ի սակա
ւուդ հաւատարիմ եղեր'
լիցիս իշխան տասն քաղա
քի։ Ասէ արդ' ոչ եթէ քա
ղաք իցեն 'ի հանդերձեալն



յորոց վր իշխանս կացու
ցանէ զնոսա որք զօրէնս
նորա կատարեցին, այլ' զի
բազմապատիկ խոստացաւ
'ի վարձատրութեն հատու
ցանել. և աստ քաղաքօքն
նշանակէ։ Որ տայ զայն
իմանալ թէ' որքան զա
նազանեալ են տասն քա
ղաք և տասն մնաս արծա
թոյն զոր մատուցին և ըն
կալան։
18 Ըստ այսմ կարգի և
երկրորդն մատուցեալ
ասէ, մնասն քո հինգ մը
նաս արար։
Ընդունի և սա յարդա
րադատ իրաւանցն մդյ հա
տով առաքինութեն զպար
գևսն. կացեալ լինի և սա
իշխան 'ի վր հնգից քաղա
քաց։ Իսկ միւս ոմն հէք
և թշուառական, մատու
ցեալ ամբաստան լինի ըղ
քաղցր տնէն։ Այն որ ոչ
ունի արդարացուցանել
զնա, այլ և դատապարտ և
առնել։ 21 Երկնչէի ասէ
զի այր մի ստամբակ ես.
բառնաս զոր ոչ եդեր,
21 յին և

եւ հնձես զոր ոչ սերմանե-
ցեր․ երկեայ եւ թաքուցի
զարծաթն քո։
Եթէ հեզ ասացեալ էր
զտէրն, գոյին ինչ նրա-
ճունք․ որպէս թէ ասել
վստահացեալ ՚ի հեզութիւն քո
հեղգացայ։ Իսկ որովհե-
տեւ գիտէր զնա խիստ, եւ
թէ հարուածս եւ տանջանս
արկանէ զգլխով անբարշ-
տաց, ապա պարտ էր նմա
զգաստանալ եւ զարհուրիլ
՚ի տանջողական բռնութէ
անտի նր եւ ՚ի գործ արկա-
նել զարծաթն զի մի՛ պա-
տիժս կրեսցէ ՚ի սատամբա-
կութենէն։ Այս հայի
ասելն, ՚ի բերանոյ քումմէ
դատեցից զքեզ ծառայ
անհաւատ․ զի ոչ էիր ան-
գէտ, այլ գիտէիր զխըս-
տութիւն դատաւորին, եւ
զպատասն որ կայ ՚ի վերայ
մեղաւորաց։ Անհաւատ
ասելով՝ ընկենու ՚ի հաւա-
տոյն․ վասն զոր ոչ յոյժ
յորդորեաց եւ զարթոյց ՚ի
գործ պատուիրանին նր,
եւ ոչ սպառնալեօք տանջա-
Ղ՛՛ ԺԹ

նայն զգաստացոյց լինել
պիտանացու։
23 Ընդէ՞ր ոչ արկեր
զարծաթդ իմ ՚ի սեղանա-
ւորս․ եւ ես եկեալ տոկո-
սեօք պահանջէի։
Նաեւ այս զի՞նչ ունիցի ի-
մաստ առ այս։ Քանզի ՚ի
քանքարացն առակի յար-
մար է թէ առ վարդապետս
ասացեալ է։ իսկ աստ՝ զի
առ իւրաքանչիւրոք ասա-
ցեալ է, որպ ամ ոք արկա-
նէ արծաթ ՚ի սեղանաւորս
Արդարեւ ամենայն ումեք
հարկ է այս․ զի որպ վար-
դապետաց է զեկեղեցիս
խրատել, նոյնպէս է եւ ամ
ումեք իւրում տանն բա-
րւոք վերակացու լինել
եւ խրատիչ։ Նաեւ թէ յա-
ռաջնորդաց արիւն ամե-
նայն ժողովրդեան խնդրի,
քանի՞ եւս զորդւոյն զորս
ծնաւ ոք պահանջի, թէ
երկիւղիւն այ ոչ սնու-
ցանէ։
24 Ասէ սպասաւորացն,
առէ՛ք ՚ի դմանէ զմնասն,
եւ տուք այնմ որ ունի զժ
յիգ մնասն։

Այս լուծանելն 'ի հնաւա
տոյն է. զոր յայլում վայրի
ը̄մեջ կորել հրամանն եւ։
Այսու ուսուցանէ թէ'
և զեան հաւատոյն զոր խոս
տովանեաց` բառնան 'ի նը
մանէ և ընդ անհաւատան
պատժեն։ Իսկ ասել ծա
ռայիցն, որ' ունի տասն մը
նաս։ Այս իբրև յաջա
ղանք թուին։ Ոչ եթէ 'ի
քննութ̄ն անդ ժամանակին
դոյ ումեք ասել ինչ 'ի
հրեշտակաց յորժամ նա
հաւաստարէ 'ի դատելն. այլ
միայն զայն կամի բանիւն
յայտնել, եթէ այնչափ է
պարգևք արդարոցն, մինչ
զի և հրեշտակաց նախանձ
արկանեն։ Իսկ առայս, որքն
զի զիրաւունս դատաստա
նին յայտ առնէ և ոչ միայն
շնորհ, ասէ,

26 Ամենայնի որ ունիցի'
տացի. և որ ոչն ունիցի'
և զոր ունիցի' բարձցի 'ի
նմանէ։

Ոչ այս եղ իմանալ մեզ'
եթէ ոչ ըստ չափոյ վաս
տակոյն են պարգևքն, այլ
ըստ աշխատութեան որում
արժանի արարին զանձինս'
ունին. և յաւելու նոցա
այլ ևս առատութ̄ի պար
գևաց նը։ Իսկ ծուլիցն
և հեղգացելոցն' վասն զի
ոչ կամեցան տանալ ինչ
անձանց յանտի բարեացն,
արդարութ̄ բառնայ յայն
պիտեաց և զայն ևս' զոր
ինքն ետ զաւազանին շը
նորհ, որով որդիք այ ար
ժանացան լինել։ Արդ
մերկանայ զայն, զի զորդիս
ոչ տանջէ, այլ զապստամբս
Ըստ որում և թագաւորք
երկրի դատեն. զի զմեղու
ցեալ ոք իշխան' նախ ըզ
պատիւ և զհանդերձ իշ
խանութ̄ն մերկանալ հրա
մայն տան, և ապա մատնեն
դահճաց։ Նոյն իրաւանց
հետևին և ա̄ծայինքն։
Արդ զայս որ առ հաւա
տացեալս է բան' ուղղեալ
իրաւամբք, ձգէ այնուհե
տև զդատաստանն 'ի մ̄ր ան
հաւատիցն, զի և զնոցայն
դատիցէ ըստ նոցունց ժը
պրհութ̄ն։ Վ̄ն որոյ ասէ։

27 Զթշնամիսն իմ զայ-
նոսիկ որք ոչ կամեցին ըզ
թագաւորել իմ, ածէք
և սպանէք առաջի իմ:
Որքան առաջին գալըս-
տեանն զքաղցրութիւն նոր
տեսին, յերկրորդի անդ
զխստութիւն ծանիցեն:
Յաղագս որոյ այն որ ՚ի
մահու անդ կարդայր առ
հայր աղաչելով, հա՛յր թող
սոցա զի ոչ գիտեն զինչ
գործեն: Եւ որ ասիցէ
բան զորդւոյ մարդոյ՝ թող
ցի՛ նմա: Իսկ ժամահարկու
դատաւոր և վրէժխնդիր
զանձն ցուցանէ: Ըստ նը
մին օրինակի յամենայն յա
ւիտենիս երկայնամիտ է
առ ամենեսեան. իսկ յիրա
ւանցն մերձեցեալ ժամա
նակ՝ վարի առ ամ քննու
թիւս. ոչ բարկութբ և ոչ
քաղցրութբ, այլ իրաւամբք
և արդարութբ հատուցա
նել: Որդ զայս ամենայն
առաջի դնէ՝ զի մի՛ ոք վս
քաղցրութեն անհոգ լիցի,
այլ զխստն լուեալ՝ զար
հուրեսցի ՚ի վրէժխնդիր

լինելոյ նորա:
28 Եւ զայս ասացեալ՝ ելա
նէ յերկրպագէ աշակերտօքն
և բազում ժողովրդովք:
Յօրինակ այնմիկ՝ զի էջ
՚ի դժոխս և ել անտի
բազմութբ ննջեցելոցն:
Եւ փութայ հասանել
յեմ, զի ՚ի կատարումն
եկեսցէ խորհուրդ մար-
դանալոյ նր՝ պատարագիլ
վս փրկութեն աշխարհի.
և մահուամբ նր արձակել
՚ի կապանաց մեղաց ծնըն
դոցս ադամայ:
29 Մերձ եղեւ ՚ի բեթ
բաքէ, առաքէ եր
կուս յաշակերտացն
(իբրև զմարգարէս և զա
ռաքեալս) լուծանել էշ
և յաւանակ և ածել նմա.
որպ զերկուս ազգս մարդ-
կան: Եւ անդ երկրորդ-
տեարք՝ ոչ կարացին ար-
գելուլ յորժամ առաջինն
խնդրեաց: Եւ ասա ըստ
նմին որ բանազբօսեացն
տիրել սատանայ և մեղքն,
ոչ զօրեաց ունել մինչ
աստուածն կոչեաց:
յեր

Ածեն առ յՏր, և ոչ նստի
յանմաքուրսն ընութե,
այլ ՚ի վր մաքուր ձործոց
առաքելոցն։ Զի ոչ հան
դեաւն նա յաղտեղեալ հո
գիս, այլ ՚ի լուացեալս ա
ռաքինաւն և ծածկեալս
յառաջին մերկութե ծնա
ցեալ հանդերձիցն։
Նոյն զմարգարէութին
զաքարիայ՝ որ նշանաւոր
յաւանակաւն որոշէ զնա
յամենեցունց որ մարմնա
ւոր բանութեամբ և շքով
մտին յէմ․ յայտ արարել
զհեզութի այսր Թգւորի որ
խոնարհութբ պատրզմեցաւ
ը հպարտացելոյ հսկային։
Ցնծա՛ դուստր սիոնի
(որ են եկեղեցիք հեթա
նոսաց․) զի Թագաւոր քո
գայ քեզ հեզ՝ և հեծեալ
յէշ և ՚ի վերայ յաւանակի
նորոյ։ զաք․ Թ․ Թ։
Արդ Թէպէտ և մարմնով
այսպէս տեսաք, բայց զի
ցուցցէ ոչ միայն յերևե
լիս զսա նուաստ իշով տե
սանել, այլ և զծածուկ
զօրութի նր՝ և զիմանալի
Գ․Լ ՇԹ

Թգւորութե նր ծանուցել
զհանդէս։ Սորոյ ասէ,
խորտակեսցէ զկառս յեփ
րեմէ և զերիվարս յէմէ․
և զաղեղն պատերազմողին։
Սոքա ամբեան յայտնեն
զամբարձեալ տէրութին
սատանայի և զձիամարտիկ
զօրութին, զորս խորտակեաց
յՏ Թագաւորն մեր իշով
մտեալ յերուսաղէմ։
Եւ արեամբ ուխտին իւրոյ
արձակէ յանջրդի գբոյ
զարգելեալս զմեզ։
Արդ զայս կատարեալ ըղ
բան մարգարէութե՝ նըս
տեալ ՚ի վերայ իշոյ մտանէ
յէմ։ Եւ բազմութի աշա
կերտացն սկսանին ուրա
խութեամբ օրհնել զած։
Զի հոգի մարգարէու
թեն որ շարժեաց զզաքա
րիա աւետիս տալ դստերն
սիոնի ուրախանալ ը Թա
գաւորին քի, շարժեաց
և զառաքեալսն յերս մար
գարէութեն․ զի և նոքա
ուրախացեալք սկսան օրհ
նել զած։ Եւ զխնդր ոչ,
զի զայն զոր ամենայն մար
յԹ գա

գործքն մարգարէանայի՛ն
և մեծաւ ցանկութեամբ
երկնէին տեսանել և ոչ
տեսին, և աւետիս ետուն
մեզ տիեզերաց վասն գա
լստեան նր, սոքա տեսին
և ուրախացեալ աղաղակէին
ձայնիւ մեծաւ։
39 Իսկ փարիսեցիքն զբա
րեալ ասէին, սաստեա՛ ա
շակերտացդ զի լռեսցեն։
Ս.ալ նա ըզ յոլհանոան
յուշ առնէ։ Նաւ 3. 6։
Զի որպէս զքարացեալ
անզգայութիւն զհեթանոսս
ածց լինել շնորհօք որդիս
աբրահամու, նմին օրինա
կաւ և զոր զքարացեալսն
անհաւատութիւն զհեթա
նոսս ածց տալ փառս ան
ուան նր։ Արդ զայս ա
ռակաւ ասացեալ՝ փարիսե
ցիքն ոչ իմացան։ Մինչ
որք լռեցուցանել զաշա
կերտսն կամէին զի խափա
նեսցեն զօրհնութիւս նր՝
յոյժ երկեան ՚ի բանէ ան
տի, թէ գուցէ լռիցեն նք
և քարինքն աղաղակեսցեն
՚ի յանդիմանութիւն նց։

Մինչ լռու եղէն. և ընտ
րեցին քարանց՝ զի աշա
կերտքն աղաղակեսցեն և
մի՛ քարինքն։ սակայն նա
էլից և զայս։ Զի մինչ
ընդ փայտի պրկեալ կայր
և ամենեքեան լռեցին առ
երկիւղի, յայնժամ սկսան
քարինքն ճչել ՚ի լսելիս նց
՚ի պատառելն իւրեանց։
և տաճարն այն աղաղակէր
առ նոսա ՚ի ցելուլն զվա
րագոյրն իւր։ Զայն ա
ղաղակի բարձին և մեզ
աւարածք եղիասին։
Արդ այսպէս մեզ ընծայք
անհասան հրամանի նորա։
Մեզ հոգին այն որ զմեզ
ինչ աղօթինէ ըստ ժամա
նակին, ՚ի սպասաւորութի
շարժեաց զբազմութի քաղա
քին ելանել ընդառաջ նր։
Որոց առեալ ոստս արմա
ւենեաց՝ արկանէին ընդ ճա
նապարհն. և զհանդերձս
իւրեանց տարածանէին ա
ռաջի նր։ Արդ այս մեզ
ոչ սուտ և ոչ վայրապար
ինչ, այլ խորհուրդ մեծա
վայելուչ։ Զի զօրինակ

'ի ժամանակի ծննդեան նր
ըզխորհրդական ընծայսն
մոգքն մատուցին նմա ձր
գեալք 'ի հոգւոյն սբյ. զի
լեցին յանդիմանիչք այնո
ցիկ որք ակնունէին գա
լըստեան նորա և յետս կա
ցին: Ըստ նմին և ասա յան
դիմանին օրհնագէտքն 'ի
ազխտաց անտի որք ծանեան
զեկեալ թագաւորն: Եւ
օրհնութբ ընդառաջ ելեալ
մատուցանէին ընծայ ոստս
'ի ծառոց: Որպ յայնժամ
մոգքն զոսկին և զկընդ
րուկն (զոր երբեմն դիւաց
մատուցանէին) դարձուցին
առ տր ոսկոյն և կնդրկին:
Ըստ նմին և ասա զպաշտօն
պատկերացն զոր թան ոս
տօք մատուցանէին, դար
ձուցին ընծայել սոյգ
թգրին, որ նա ինքն է տծ
և հաստիչ ամենայնի:
Տարածանեն և զհնդերձս
առաջի նորա. մերկանալով
զհին պատմուճան պարտ
եացն ադամայ: Զի ծա
նեան թէ նա է որ զգեստ
մերկութեան ադամայ եկն

Գր ԺԹ

զգեցուցանել: Որդ 'ի
բաց ընկենուն զհին զադ
տեղծն և զպատուատուն
զի զգեցցին զնորն և զա
նապականն: Սփռեն առա
ջի գնալոյ ոտից նր, բանա
լով նմա զդրունս ոգւոյ
զի մտեալ բնակեսցէ:
Ըստ այնմ, պատրաստ արա
րէք զճանապարհս տն, և
ուղիղ արարէք զշաւիղս
նր: Ես 40. 3:
38 Եւ սկսան մեծաւ ու
րախութբ աղաղակել,
ովսաննայ, օրհնեալ եկեալ
թագաւորութի հօր մերոյ
դաւթի. խաղաղութիւն
յերկինս և փառք 'ի բար
ձունս: Մր 11. 10:
Արդարև այս պաշտօն
խորհրդական և օրհնութի
տծավայելուչ՝ ոչ ապատու
թե կամաց են, այլ բնա
դատող հարկին այսմիկ որ
զքարինս բանականէ հաս
տատել օրհնաբանս:
"Քանզի ոչ ունէին նորա
'ի մտաց տալ նմա բարեբա
նութի. այլ հոգւոյն է այս
օրհնութի որ եա բանս

Յա նո

նոցին անիմաստ լեզուացն. որ ունի զօրհնութիւնս և զցոյցս բնութեան: Ասեն զի յայտնեն զայն թէ զի որդի է դաւթի և ամենայ հօրն բնութեան: Յաղագս որոյ ասեն, օրհնեալ եկեալ թագաւորութիւն հօր մե րոյ դաւթի, որ յարմար է մարմնոյ նր: Մերձ դնեն առ նմին և զաստուածայն լուսն, գիտել թէ ոչ որդի դաւթի է սոսկ՝ եկեալ թգաւորն, այլ և հօրն բո լորեցուն որ տր է վերին թագաւորութեան և իշխանն է ամենայնի: Բանզի զայս յայտնէ ասելն, խաղաղու թիւն յերկինս և փառք ՚ի բարձունս: Ասեն զի զոր վերինքն ՚ի ժամանակի ծննդեանն առ ներքինս բարբառեցան, զնոյն և աստ ներքինքս տան վերնոցն: Յայտ արարեալ թէ յեր կուց մի թագաւորն՝ զեր կուս ՚ի մի էած թագաւո րութիւս. խաղաղութի արա րեալ արեամբ խաչին յեր կինս և յերկրի:

Գլ՛՛ ՃԹ

41 Եւ՛ տեսեալ զքաղաքն
ելաց ՚ի վր նորա և ասէ,
եթէ գիտէիր դու գոնէ
այժմ զխաղաղութի քո:
Ելաց ՚ի վր երուսաղեմի, զի ոչ տեսանէր միայն զքա րի կալն նց ՚ի նմին ժամու, այլ և այն տեսանէր ամե նատես աչաց նր ՚ի լնուլ ձորոյն այնմիկ դիակամբք անթաղ մեռելոցն զոր ըն կենուին ՚ի պարսպէ անտի: ՚Ի գալն տիտոսի յերուսաղէմ: Թերևս առ նա իցէ մար գարէութին այն զի ասէ, եղիցին դիակունք նոցա իբրև աղբ զձանձրհաւ: Եր 25. 33: Եւ՛ բազում է զեն դիակունք նց վասն սովու հացի և ծարաւոյ ջրոյ: Ես 5. 13: Արդ զայս տեսս զապականութի զոր կրելոց էին, և շարժեալ խնամքն արարչական, և ախտակրութին եղբայրա կան, սկսաւ լալ զթշուա ռութի ապախտաւորացն:
Ապա ասէ,
42 Ծածկեցաւ այժմ
յերեսաց քոց, այն՝ յորժամ

պատեսցեն թշնամիք քո
պատնէշ շուրջ զքև. և
պաշարեսցեն զքեզ և նե
ղեսցեն զքեզ յամենայն
կողմանց։ Եւ յատակես
ցեն զքեզ և զորդիս քո
'ի քեզ. և ոչ թողուցուն
քար 'ի քարի վերայ ամե
նայնի 'ի քեզ։
Այս ամենայն յայտնի է
յելից իրացն որ եանց ը
նոսա 'ի պաշարման նոցա
'ի զօրացն հռովմայեցւոց,
թէ զիարդ նեղեցին նոքա
բազմապատիկ նեղութբ։
Զոր ամ ռք ունի 'ի բազ
մաց մատենից որ ցուցա
նեն զանձնարին անցս նե
ղութեն որ եհաս 'ի վր նց,
և յատակեաց զգեղեցիկ
և զմեծամեծ ապարանս նց,
'ի նմին և զորդիս նոցա։
Հրձիգ եղև և քաղաքն
նց. և քակեցաւ տաճարն
որ'ի նմա. և քակտեցան քա
րինք շինուածոյ նորա։
Նորդ այս ամ եանց ընդ
նոսա ոչ զուր և ոչ վայրա
պար, այլ 'ի հատուցումն
նոցա։



44 Փոխանակ տուէ զի ոչ
ծանեար զժամանակ այցե
լութե քո։
Զիք բնաւ ռք ազգ հէք
և թշուառական իբրև զը
նա որ այնքան մեծի շնոր
հի և այցելութե արժանա
ցան. մինչ զի բնութին այն
որ անդր անցեալ կայ ան
բաւութբ քան զամենայն
և տածէ զնմ նախախնա
մութեամբ, նոյն ինքն նա
մերովս էջ առ մեզ 'ի յայց
և 'ի խնդիր կորուսելոցս՝
փրկել և կեցուցանել։
Եւ այսքան գթութեան
և խնամոց առատութեան
ոչ զազգս այլս արժանա
ցոյց, այլ զազգս որդւոցն
իսրայէլի։ Իսկ նք ուրա
ցեալ յետս կացին, մատ
նիչք և սպանօղք եղեն։
Գործ 7. 25։ և զառաջնորդ
կենացն սպանին։ 3. 15։
Այդ զսաստի դատաստանս
պատժոց՝ եառուն նոքա յօ
րինակ անտի անվրէպ վրի
ժուցն հատուցման։
45 Եւ մտեալ 'ի տաճարն
վրէժխնդիր լինի օ


րէ

ըլնացն որում նոքա համ
բաւէին լուծից լինիլ և
ինքեանք առոտն հարկա
նէին։ Վս զի զտաճարն
զայն որում այնք էր անն՝
(զի անսուրբ ոք ոչ համար
ձակէր մերձենալ արտա-
քուստ յորմս նր, ) նոքա
տեղի արարին վաճառոյ և
աւազակօրէն զլանալոյ։
Արդ յանդիմանէ զնոցա
վատթարութին 'ի սկզբան
անդ և 'ի կատարածի. զի
զտեղին աղօթից. և պատա
րագաց, արարին տեղի խա
բէութե և նենգութե։
Զայս տեսեալ քահա
նայիցն՝ ոչ համարձակէին
ընդդէմ կալ հրամանին
վս բազմութեն որ օրհնէին
զեկեալ թագաւորութին։
Աւասիկ և մանկունքն ըս-
տնդիայք 'ի գիրկս մարցն
աղաղակէին, ովսաննայ օրհ
նեալ եկեալ թագաւորու
թիդ հօր մերում դաւթի.
խաղաղութիւն յերկինս
և փառք 'ի բարձունս։
Մատ 11. 15։ Չեն այս սքան-
չելիք ընդհատ յայնմանէ

զոր ասաց՝ եթէ դոքա լը
ռեսցեն՝ քարինքդ աղա-
ղակեսցեն 40։ Վասն զի
ահաւասիկ 'ի լռել աշա-
կերտացն՝ բացան անխօս
բերանք մանկանց նոցա.
և որ ոչ ունէին բան՝ ընդ
հրեղէն լեզուացն եր
գէին օրհնութիւնս։
'Ի նմին ժամու մատեան
առնա կաղք և կոյրք 'ի
տաճարին և բժշկեցան։
Մատ 21. 14։ Իսկ քահա-
նայապետիցն և դպրացն
տեսեալ զսքանչելիսն և
զմանկունսն որ աղաղակէին
'ի տաճարին՝ բարկացան։
Եւ առ ցասմանն յիմա-
րեալք՝ գիտէին ինչ ոչ զոր
խօսէինն։ Վս որոյ մատու-
ցեալ ասէին, լսես՝ զինչ
դոքա ասեն 15։ Իսկ յս
ասէ, այո։ և զիարդ ոչ իմա
նայք եթէ կատարին մար
գարէիցն յառաջատեսու-
թիւնք։ Որ զաքարիայն՝
նստիցէ 'ի վերայ իշոյ և յա
ւանակի նորա։ Նոյնպէս
և դաւթայն՝ աղաղակեցն
մանկանց։ Չիցէ ասէ ըն

և յայտնէր զբնութեն պա
տրէ՛ զի առանց պատասխա
նւոյ արասցէ զնոսա 'ի
դատելն։

69 Տեսանիցէք ած յայս
հետէ զորդի մարդոյ նըս
տեալ ը՛ աջմէ զօրութեն այ․
և եկեալ ընդ ամպս երկ
նից։ Մատ։ Զդաւ՛թայն և
զդանիէլին յուշ առնէ նց
զբանսն։ 109։ 7․ 13։ Իսկ
առ այս քահանայապետն
զի աճեցուսցէ զամբաս
տանութիւնն՝ պատառեաց
ըզ պատմուճանն և ասէ,
հայհոյեաց․ զինչ ևս պէտք
են մեզ վկայից։ Զայս
արար, վասն զի նա էր
հին և պատառատուն տիկն
որ ոչ հանդուրժեաց բըռ
նութե նոր գինւոյն և հեր
ձեալ պատառեցաւ 'ի բա
նից անտի։ Մատ 9։
Յայնժամ դատեցին զնա
ամենեքեան մահապարտ
լինել։ Եւ՛ սկսան կափել
զնա և ծածկել զերեսս
նր․ դան հարկանել թքա
նել և ասել, մարգարէաց
մեզ քն որդի այ՝ ո՞վ է



որ եհարն զքեզ։ Եւ՛ բա
զում բանս հայհոյութե
խօսէին նմա զոր ոչ կամե
ցաւ՛ հոգին գրել։ Արդ
վասն զի գրեալ էր այս 'ի
բանս եսայեայ՝ և հաս 'ի
վր նր։ զթիկունս իմ ասէ
ետու 'ի հարուածս և ըզ
ծնօտս իմ յապտակս․ և
զերեսս իմ ոչ դարձուցի
յամօթոյ ընդ երեսս թը
քանելոյ։ 50․ 6։ Արդ ըզ
գլխերն զայն լցին զցան
կութիս իւրեանց որով
նախատեցին զնա․ և հար
ուածօք վիրաւորեցին և
թափեցին 'ի նա ըզ թոյնս
դառնութե իւրեանց զոր
'ի բազում ժամանակս
երկնէին։

* Գլուխ Աւետարանին
ԽԳ․



սկ 'ի վաղորդեան
աւուրն առեալ
զնա 'ի վանացն
կայիափայ ածին յապա
րանսն դատաւորին․ վն զի
ոչ էին կերեալ զպատիկն

 յե

յերեկորեայ ա͞յ օրինացն·
այլ առ ցանկութ͞ե սպանու
թեանն արհամարհեցին
ուտել: "Բանզի արդարև
այս էր օրէն՝ զի 'ի դալ
ճշմարտութ͞են՝ քակտեսցի
ըստուերն: Աստի և նո
քին խուկ յակամայ կամս
լուծին զնա· և զդուշա
նայրն՝ 'ի վաղորդեան ա
ռուրն մտանել յապարանս
հեթանոսաց զի մի՛պղծեա
ցին· այլ նախ ուտիցեն ըզ
պասեքն· և 'ի նմին կացին
մինչև յինն ժամն: Յով՟ժ:
ուստի և յայտ է թէ ընա՛
ոչ կերան: Որդ՝ եթէ կե
րան և եթէ ոչ՝ ընկալան
նոքա անէծս յօրինաց ան
տի: քանզի գրեաց նոցա
մովսէս, թէ որ ոչ կերիցէ
զնա յերեկորեայ՝ անիծ͞եալ
լիցի և սատակեսցի 'ի ժո
ղովրդենէն· և եթէ յայդ
ելանիցէ և ոք կերիցէ 'ի
նմանէ, նոյն դատաստան
անիծիցն մահու եդա՛ 'ի
վերայ նորա: Ղեւ՟ 16·6:
Որդ այսմ երկոքումբք
փակեցին զանձինս խորհ



'ի ներքոյ անիծից վ͞ս ցան
կութեան պ͞րուանկան
մահուն:
2 Այլ որդ կացեալ առա
ջի դատաւորին՝ չարախօս
լինէին զնմանէ վ͞ս թիւրե
լոյ զօրէնսն և խոտորեցու
ցանելոյ զազգն: Այլ քըն
նեալ զայս դատաւորին ե
գիտ սուտ զամբաստանու
թիւն նց· և ծանեաւ ե
թէ առ նախանձու է հա
կառակութիւն նոցա:
"Նազի և կինն ևս առա
քեաց առնա և ասէ, չիկայ
ինչ քո և արդարոյդ այդ
միկ· զի յանուրջս այսօր
բ͞զ͞ում անցք անցին ընդ իս
վասն դորա: Այլ առ այս
առաջի եդ նոցա զպատի՛
տօնին զի արձակեսցէ ըզ
նա ըստ սովորութեանն
զի պատկառեսցին· զի թէ
և ոչ իբրև զարդար ոք,
գոնէ իբրև զմահապարտ
արձակեսցեն զնա շնորհել
տօնին: Այլ իբրև տեսին
թէ զօրինաց նոցա չէ ինչ
փոյթ դատաւորին, յաւե
լուն յայս և ասել, որ

դելոու հարկս տալ կայսեր
և զանձն անուանել Թգր։
յոհ։ և այսպէս ուսուցանէ
զամ հրէաստան սկսեալ
'ի գալիլէէ։ Զայս ամ
բանս վրիպակս առաջի դը
նեն, զի կարասցեն 'ի ցա
սումն ածել զդատաւորն։
Իսկ նա վս զի ամենայնին
տեղեակ էր՝ ոչ ցասնու։
6 ԵՒ իբրև գիտաց Թէ
յիշխանութէն հերովդի է,
եւ տանիլ զնա առ հերով
դէս։ Յորմէ երկուցեալ
քահանայապետացն Թէ վս
յիշխանութենէն անտի հե
րովդէի գոլոյն՝ Թերևս
կամք իցեն հերովդէի ար
ձակել զնա։ յայս տեսեալ
զմիտս դատաւորին, նորին
աղաղակաւ և ինքեանք ըղ
հետ գնան առ հերովդէս
զի չարախօսեսցեն ըզ
նմանէ։
8 Աւ հերովդէի տեսել
զյս ուրախ եղև. զի
լուեալ զհամբաւ սքանչե
լեացն զոր գործէր նա՝
ցանկայր տեսանել զնա։
Աւ 'ի բազում խօսին

հերովդէի՝ ոչ կամեցաւ
յս տալ պատասխանի մինչև
ցասնուլ հերովդէի և
այպն առնել զնա իւրովք
զօրականօքն. և արկանել
զնովաւ հանդերձ սպիտակ
և դարձուցանել անդրէն
առ պիղատոս դատաւորն։
Զայս արար յս, զի Թէ
վերին իմաստութին խօ
սէր, զիարդ խափանելի
իմաստութին այն զօրանայր
տիրել և մահու պատժա
պարտել զնա։ և նա ոչ ետ
զանձն յատեան նց զի ար
դարասցի, այլ զի պարտա
ւորեսցի։ Արդ զայս տե
սեալ յուդայի եԹէ 'ի
դատաստան մահու պար
տաւորեցաւ, զղջացաւ և
ընկէց զարծաԹն 'ի տաճա
րի անդ և ասէ, մեղայ զի
մատնեցի զարիւն արդար։
Արդ վասն զի դևք որ
յայնժամ ձգէին զնա ցան
կութ արծաԹոյն քարշել
'ի կատարել մեղացն լքին
զնա. և յայնժամ ծանեաւ
զգործոյն դառնուԹի։
Աւ առ սաստկացել 'ի նա



տրտ

տրտմութեն և նեղասըր
տութեն ոչ բերելով, և
մղձկեալ 'ի խորհուրդան՝
զելսն ոչ ունէր, անկա-
յայ՝ լուծանել մահուամբ
զծանրութի վշտին: վասն
խեղդ արկեալ ինքեան՝ ար
ձակեաց զանձն 'ի տրտմու
թեանց անտի: Նաթ:

Իսկ քահանայապետքն
տեսեալ թէ մարգարէու
թին զաքարիայ էհաս 'ի
վր նոցա զոր ասաց, եթէ
հաճոյ է յաչս ձեր՝ տուք
ըզ վարձս իմ, ապա թէ ոչ՝
պատասխանի արարէք: և
կշռեցին զվարձս իմ երե
սուն արծաթի. և արկի
զայն 'ի տուն տն 'ի քու-
րայն. և ընկեցի զգանձա-
զանն երկրդ՝ ցրել զուխտն
'ի մէջ յուդայ և 'ի մէջ իս
րայէլի: 11. 12: Արդ վասն
զի ասաց մարգարէն՝ արկի
զայն 'ի տուն տն, ջանացին
քահանայապետքն թիւրել
զայն, երկուցեալք 'ի մար
գարէութենէ անտի. և
ասեն, ոչ է արժան ըՆունել
զայդ 'ի կորբան տաճարին:

Իւղ իգ

և խորհուրդ արարեալ գը
նեցին այնու զագարակ
բրտին: Աւ որով կամեցին
ստերխուրել զաստացեալն՝
նովին ստուգեցին զնա:

Զի ասաց զաքարիա, ար
կի զայն 'ի տուն տն. և
յուդա ընկեց 'ի տաճարն:
և զաստացեալն 'ի քուրայն,
ինքեանք արդարացուցին
զի գնեցին զագարակ բըր
տին: Աս զի քուրայն է ոչ
միայն այնոցիկ որ զհրա
հալէլի նիւթս գործեն,
այլ և այնոցիկ որ անօթս
խեցեղէնս առնեն:

Դարձեալ առ այս և զե
րեմիայի ասացեալն ճշմար
տեցին և ոչ գիտացին:
Աւին ասէ զերեսուն ար
ծաթին զգինս վաճառե
լոյն զոր արկին յորդւոցն
իսէլի և ետուն զնա յա
գարակին բրտի որպ հրա
մայեաց ինձ տր: ղու 11. 12:

Կացուցին դարձեալ զյս
առաջի պիղատոսի: և նա
դարձեալ խօսի ընդ նս
և ասէ:

14 Ածիք մատուցիք ինձ

յհե

զայլս զայս ոմ̄ զխռովա-
րար, և ես առաջի ձեր դա-
տեալ՝ ոչ ինչ գտի 'ի դմա
վնաս մահու: այլ և ոչ Հե-
րովդէս: Զայս ասաց պի-
ղատոս՝ զի կամէր արձա-
կել զնա: Նորին աղագա-
ւառ Հերովդէս արձակէ:
Եւ այս ամ̄ վերին մատա-
կարարութ̄ն կարգեալ
գայր: Քանզի պարտ էր
լինել մարգարէութեանն
որ ասէ, զՀեթանոսս խռո-
վեալս, և զժողովուրդս
սնոտի խորհրդով, և զԹա-
գաւորս յանդիման լեալս
և իշխանս ժողովեալս վ̄ա
տ̄ն և վասն ք̄ի նորա:
Զայս միաբանութ̄ և առա-
քեալքն դնէին 'ի նկարագրա̄ն
առ Հայր: Արդարև յա-
րեան տե̄ն 'ի վերայ ս̄բյ
որդւոյ քոյ յ̄ի 'ի քաղաքիս
յայսմիկ Հերովդէս՝ և պոն-
տոս պիղատոս՝ ազգօք և
ժողովրդովք առնել զոր
ինչ յառաջագոյն սահմա-
նեաց ձեռն քո: գործ 4. 27
Արդ այսոք̄ ամ̄ ինչ ըստ
գրոց կատարեալ լինէր.

մա̄ զի զապարասանութ̄ի
ժողովրդեանն յա̄ռաջագոյն
կանխեցին ցուցին մարգա-
րէիցն բանք:
22 Ուստի և պիղատոս կա-
մեցեալ արձակել՝ ասաց
երիցս՝ զի՞նչ չար արարեալ
իցէ: Ես վնաս մահու ո՛չ
գտանեմ 'ի դմա: Եւ նք̄
ասեն 'ի խաչ հան զդա.
զի թէ ո՛չ էր չարագործ՝
ապա ո՛չ մատնէաք ըզ դա
քեզ: յօհ: Իսկ նա կամեց̄եալ
ամաչեցուցանել՝ ասէ,
ես զԹագաւո՛րդ ձեր 'ի
խա՛չ հանիցեմ: Եւ նոցա
յուրաստ եղեալ զնմանէ՝
ընտրեցին զկայսրն. չէք
մեր ասեն Թագաւո՛ր բաց
'ի կայսերէ: Եւ յասելն
դատաւորին՝ ես պատճառս
մահու ինչ ոչ գտանեմ 'ի
դմա, և նոքա որ սակա՛ւ մի
յառաջ ասացին՝ մեզ չէ
օրէն զոք սպանանել, դար-
ձեալ ասեն, մեք օրէնս ու-
նիմք և ըստ օրինաց մերոց
պա՛րտի մեռանիլ զի զանձն
իւր որդի ա̄յ արար:
Արդ նք̄ զայս պատճառս

մահապարտ առնելոյ ամ֊
բաստան եղեն։ Իսկ պիղա
տոս յայտնանէ կարի զար
հուրեալ՝ մտանէ դարձեալ
յապարանսն և ասէ, ուս
տի՞ ես։ և յս ոչ ետ պա֊
տասխանի։ Ասէ պիղա֊
տոս, ընդիս ոչ խօսիս. ոչ
գիտես թէ իշխանութի ու
նիմ հանել զքեզ 'ի խաչ
և իշխանութի ունիմ ար
ձակել զքեզ։ Իսկ յս ե֊
ցոյց թէ և ոչ բնաւ ու
րուք իցէ իշխանութիւն
'ի վր նր. այլ վերին տես֊
չութեանն է այս տնօրէ֊
նութի։ Բայց որ այսոցիկ
սպասաւորք եղեն և մատ
նիչք՝ ոչ վս զի 'ի վերուստ
կարգել իցէ անպարտք են,
այլ մեղս մեծամեծս ըն֊
կալցին և հատուսցեն վը
րէժս. յորմէ և նմա ան֊
բաժ լինել օրէն ոչ է.
թէպէտ և նուապանակն
դատողաց օրինաց իցէ։
Առ այս երկիւղի դատա֊
ւորն խնդրէր արձակել
զնա։ Իսկ նոքա սաստկա֊
ցուցանէին 'ի վերայ դա֊

տաւորին զանձն կայսեր։
Եթէ զդա արձակես ա֊
սեն՝ ապա չես բարեկամ
կայսեր. զի ամ որ թագա
ւոր զանձն առնէ՝ հա
կառակ է կայսեր։ Զայսմա
նէ կասկածեալ պիղատոս
կատարէ զկամս նց։
24 Առեալ ջուր՝ լուաց
զձեռս իւր և ասէ, ան֊
պարտ եմ ես յարենէ ար
դարոյդ այդորիկ։ Տաղ։
Իսկ ժողովրդքն ասեն, ա֊
րիւն դր 'ի վր մեր և 'ի վր
որդւոց մերոց։
Եւ առեալ զյս տա֊
րան 'ի դաւիթն և
ժողովեցին զգունդ զին֊
ուորացն 'ի վերայ նորա.
մերկացուցին, այպն առ֊
նէին, ծեծէին եղեգամբ
և 'ի ծունր իջեալ ասեն,
ողջ եր թգր հրէից։ Տաղ։
Զայս ամ ձաղանս արկա
նէին 'ի վր նր մոլեալք 'ի
դիւաց։ Եդին և եղէգն
'ի ձեռսն նր զի գրեսցէ
տացէ թուղթ ապահարզա
նի 'ի ձեռս նց արձակել
զնոսա։ Արարին և պսակ

'ի փշոց և եդին 'ի գլուխ
նորա․ զի բարձցէ զփուշ
պարտեացն ադամայ։
Զգեցուցին նմա քղամիդ
'ի կարմրոյ և 'ի ծիրանւոյ
անկեալ։ Կամ թէ կրկին
էր հանդերձն․ ծիրանի
և քղամիդ կարմիր։ Նա
դարձեալ ագուցին զիւր
հանդերձն և առեալ տա
րան 'ի խաչ հանել։
26 Գտին և զսիմոն ե
կեալ յանդաստանէ՝ ե
դին 'ի վերայ նորա զխաչն
բերել զկնի յի։ Եւ էր
թայր զհետ նր բազմութին
ժողովրդեանն, և կանայք
որք կոծէին և ողբային
զանիրաւ դատակնիք մա
հուն որ 'ի վերայ նորա։
Լցեալ է ասա տեսութին
զաքարիայ զի ասէ, յաւ
ուր յայնմիկ բազմասցի
կոծ յեէմ․ իբրև զկոծ
որդւոցն ամոնայ, և իբրև
զկոծ նռնենեաց կոտորե
լոց 'ի դաշտի։ 12 ․ 11։
Որդարև կոծ մեծ եղև
յերուսաղէմ թէպէտ և
ոչ գրեցաւ․ քանզի բա

զումք էին որ հաւատա
ցին 'ի նա, որոց սուգ ան
ձնարին էր 'ի ժմնկի անդ։
Իսկ յս դարձաւ 'ի նոսա
և ասէ, այս որ յիս գործի՝
ոչ է ողբոց արժանաւոր․
և ընկենու զկոծն յայլ
ժամանակս․ յայն՝ յորժամ
լնու առնն մարգարէութին
եսայեայ և այլոց մարգա
րէիցն։ յորժմ զվաստակս
ձեռաց իւրեանց կերիցեն
և հովուեսցէ զնոսա գա
ւազանաւ երկաթեաւ․ և
իբրև զանօթս խեցեղէնս
փշրեսցէ զնս։ վյդ ասէ,
Դստերք եէմի մի՛ լայք՝ի
վն իմ, այլ լացէք՝ի վերայ
անձանց․ զի եկեսցեն ա
ւուրք յորում երանի տա
ցեն անպտուղ որովայնից
և ստեանց որ ոչ դիեցու
ցին մանկունս։ Յայնժամ,
վյ իցէ յղեաց և ստնտուաց
յաւուրսն յայնոսիկ։
Զի առ խստութե դառն
ժամանակին ասիցեն լե
րանց եթէ անկերուք 'ի
վերայ մեր, և բլրոց թէ
ծածկեցէք զմզ։ 2 ․ 18։

Այլ այս թէ ո՞ւր էանց ընդ նոսա՝ յայտնի՛ է քննողացն։

31 Զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն առէ, ընդ չորն զի՞նչ լինիցի։

Փայտ դալար անուանեաց զանձն վասն աստուածախառն բնութեանն։ և փայտ չոր՝ որք սուտ մարմին իցեն։ Այլ փայտ դալար վասն նշանացն և զօրութեանցն. կամ վասն պտղոյ մարմնոյ և արեան նորա զոր ետ 'ի կերակուր մեզ։ Այլ փայտ չոր՝ վասն արդարոց որ զօրութիւն նշանաց ո՛չ ունիցին. և տալ զմարմինս իւրեանց յուտել ո՛չ է օրէն։ և այս յայլոց դատեալ եղև։ Այլ ես 'ի կարգ բանին հայեցել, վասն զի ընդ Երուսաղէմ խօսի, և զնեղութիւն որ պաշարելոց էր զնա՝ զեկուցանէ. յաղագս այսորիկ և ընդ նոսին խօսի դատաստանօք։

Այլ օրինակաւ բանիւն արժանապարտ մեծի կորըստեան զնոսա գոլ յայտ առնէ դատապարտեալ նոցին

Ղուկ իգ

բերանոցն զոր որոշեցին հաստատել 'ի վերայ նորա։ Ասէ, թէ ընդ փայտ դալար (և որ բարուք պտուղս բերէ, այն զի զմեղս ո՛չ արար և նենգութիւն ո՛չ գտաւ 'ի բերան նորա. և զհիւանդութիւս նոցա վերացոյց և ըզցաւս նոցա եբարձ. և պըտղով առաքինութեան և նշանաց և բանիւ որ ունէր զկեանսն յաւիտենականս զնոսա լցոյց։ Ընդ այնմ, գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջուր կենդանութեան,) այս են դատաստանք վրիժուց, ո՛րպէս ինչ ընդ գօսս և անպտուղս, (յորոց վասն ձեռագրեալ է ամենայն արիւն արդար հեղեալ յերկրի, որք զծառայսն սպանին և յորդին ո՛չ խնայեցին,) պա՛րտ է անցանել չարեաց։ Արդ զայս եդ յաղագս այնմիկ՝ զի ասաց նոցա եթէ առ վտանգի տարակուսանացն և անհնարին պաշարմանն դժնդակ նեղութեան որ հասանէ 'ի վերայ նոցա՝ ցանկան լերանց և բլրոց

յՆԹ ան

անկանիլ և ծածկել զնա։ Եւ զի՛ մի տարապարտ ինչ իրքն համարեալ լիցին, այլ 'ի հատուցումն գոր_ ծոց նոցա, վասն որոյ ասէ, Թէ ըստ ծառ գալար զայս առնեն, որպէս փոխարէնս տալ զօսացելոցն արժան իցէ հաւասարի ընտրու_ Թեամբ։

33 Իբրև չոքան 'ի տեղին անուանեալ գագաթն․ բարձեալ էր ինքնին զխա չափայտն և եդանէր 'ի տե ղին գողգոթա։ յօգ։

Իսկ սիմոնի կիւրենա_ ցւոյ առեալ զխաչն գայր զհետ նորա․ և ապա մերձ 'ի տեղին եդեալ՝ յինքն առնու զփայտ պատարա_ գին, զի և աստ ամբողջ մնասցէ ելք օրինակին։ Վասն զի և աբրահամ նախ 'ի վերայ գրաստու ընէ զփայտ ողջակիզին․ և 'ի տե ղին հասեալ՝ ընէ 'ի վերայ իսահակայ։ Որպէս օրինա_ կեցաւ և յայս, զի որք բառնան զխաչ մարմնոյ գը_ նալ զհետ նորա, 'ի կատարա

Գ․ղ՛ ինչ

ծի անդ՝ յինքն ընկալեալ Թեթևացուցանէ ըղնա յայնցանէ որք սիրեցին բառնալ զնա։ Եւ եկեալ ասէ 'ի տեղին՝ ետուն նմա ըմպել գինի ընդ լեղի խառ նեալ։ Իբրև ճաշակեաց՝ ոչ կամէր։ Եւ հանին զնա 'ի խաչ։ Մոփ։ Ածին և եր կուս չարագործս և հա_ նին ընդ նմա 'ի խաչ․ զմինն յաջմէ և զմիւսն ընդ ձախմէ։ Զայս ամենայն հնարէին՝ զի Թերևս կարասցեն ա_ րատ ինչ յարել 'ի նա և ժանտացուցանել զփառս նորա։ Մինչ չարագործաց դատակնիք մահու՝ դնէին 'ի վերայ նորա և ընդ չարա_ գործս պատժել ժպրհէին։ Եւ էր օրն այն ուրբաթ զատկին և ժամ վեցերորդ ըստ յօհաննու։ Իսկ մար կոս երրորդ ասաց լինել ժամուն։ Ընդ այս տարա կուսել ոմանք ասացին Թէ յօհաննէս կարգեաց երկ ժամս գիշերոյն ընդ տուընջ ջեանն, յորում սկիզբն ա_ ռաւօտին 'ի տան քահանայա_

պետին ձաղանաց այլն առ-
նելոյ և հարկանելոյ։ և
այնպէս վեց ժամ համարի
ըղ չարչարանան մինչև 'ի
խաչն։ Իսկ այլք ընտրե-
ցին ասել զերրորդ ժամն
մարկոսի. ոչ զայն զի հա
նին զնա 'ի խաչ, այլ ըղ
վճիռն պիղատոսի որ ետ
'ի ձեռս նոցա։ Եւ յետ
այնորիկ ժողովեցին ըղ
գունդն և զգեցուցին քըղ
ղամիդ և եդին պսակ 'ի
փշոց և կատակելով ձաղե
ցին այլ և երիս ժամս և
ապա 'ի վեց ժամու անուրն
հանին 'ի խաչ։
34 Եւ յն ասէ, հայր թող
դոցա, զի ոչ գիտեն զինչ
գործեն։ Զոր ուսոյց
պարտ էր զի կատարեսցի
'ի նա բարի առնել ատե-
լեացն և մաղթանել զե-
րեսս հարկանողին. և զի
որդ ասէ' ոչ գիտեն զինչ
գործեն. և աչա գիտէին։
Այս յայտնանէ, զի յոր
ժամ զառակս մշակաց այ-
գւոյն առաջի եդ (որքըղ
ծառայսն անարգեցին և
զորդին սպանին, ) իմացին
թէ առնն ասաց զառակն։
Որդ' էր ինչ զոր իմացան,
և էր' որով խաւարեցոյց
զմիտս նոցա սատանայ, և
իբրև զթմրեալս ախտին
գործեցին։ Եւ զայս ա-
սաց յն վասն փրկելոյն,
զի բացցէ նց դուռն հա
ւատոց, և մի' անյուսութբ
փակեսցին ընդ կորստեամբ։
Ըստ որում և առաքելքն
քաջալերս տուեալ ասէին,
գիտեմք զի անգիտութբ
արարէք, որպ և իշխանքն
ձեր և դուք։ Գործ 3. 17։
Աղքա ասացեալ են վասն
յորդորամիտս առնելոյ ըղ
նս 'ի հաւատս։ Իսկ զին
ուորքն որ հանին զնա 'ի
խաչ, առեալ զհանդերձս
նր բաժանեցին 'ի չորս մա
սունս. իւրաքանչիւր ու-
մեք մասն մի։ Իսկ զպատ-
մուճանն' (վասն զի էր ա-
ռանց կարանի') ոչ բաժա
նեցին, այլ վիճակս արկին
'ի վր նորա, զի լիցի այնմ
որում ելանիցէ։ Եւ այս
պէս ընդ ասացեալն,

բաժանեցին զհանդերձս
իմ ՚ի մէջ իւրեանց. և ՚ի
վերայ պատմուճանի իմոյ
վիճակս արկանէին։

Յայնժամ սկսան հայ-
հոյել զնա ծերք և դը
պիրք. և իշխանք ժողովր-
դեանն անգոսնէին զնա.
շարժէին զգլուխս իւ՟րնց
և ասէին, վա՜հ որ քակէիր
զտաճարն և յերիս աւուրս
շինէիր, էջ ՚ի խաչէդ։
Եւ այլք ասէին, զայլս ապ
րեցոյց և զանձն ոչ կարաս
ցէ ապրեցուցանել. իջցէ
այժմ ՚ի խաչէդ զի տես-
ցուք և հաւ՟տսցուք դմա։
Թէ յուսացաւ յա՟ծ՝ փըր
կեսցէ զդա թէ կամի զդա։
Արդ զայս ա՟մ կանխաւ
տեսեալ մարգարէին՝ գը
րեաց զյանդգնութի՟ն նց՟։
Տեսին զիս ասէ արհամար
հէին. շարժէին զգլուխս
իւրեանց և ասէին, յու-
սացաւ ՚ի տ՟ր, փրկեսցէ ըզ
դա. կեցուսցէ եթէ կամի
ըզդա։ Եւ՝ շուրջ եղեն
զինև շունք բազումք, և
ժողովք չարաց պաշարե-


ցին զիս։ Եւ այլք որ ՚ի
սոյն յարին բանք սաղմո-
սին՝ ԻԱ կարդի ուներն զա՟մ
միտս բանից նոցա։

Եւ յս՟ն ասէ, ծարաւի եմ
ես։ Եւ էր անդ սպունգ
լի քացախով և լեղեաւ.
զոր հարեալ յեղեգն՝ մեր
ձեցուցին ՚ի բերան նորա։
Եւ արբեալ զքացախն ը՟
լեղւոյ՝ ասաց, ա՟մ ինչ վը
ճարեալ է։ յօհ։ Ա՟ զի և
այս գրեալ էր վասն նո՟ր։
ետուն ասէ ՚ի կեր՟կուր ինձ
լեղի, և ՚ի ծարաւ իմ ար-
բուցին ինձ քացախ։
38 Գրեաց պիղատոս ՚ի
տախտակի զվնաս նո՟ր որով
պարտաւորեցաւ մեռանիլ
նա։ Եւ էր գրեալ եբ-
րայեցւոց դաղմատացւոց
և յունացւոց գրով՝ եթէ
դա՛է յս՟ն թ՟գ՟րն հրէից։
Արդ գրեաց յերիս գիրս՝
զի ա՟մ ոք ընթերցցի։
Դարձ՟լ մարգարէանայր
երեքումբք այս գրովք՝
թէ առ ամենայն ազգս և
լեզուս ձգեսցէ տ՟րու՟թ
նորա։

39 Ակաւ և աւազակն
որ՚ի ձախոյ կողմանէ նորա
կախեալ էր՝ հայհոյել ընդ
նա, ՚ի կողմն հրէից եղեալ
զի հաճեսցէ զմիտս նոցա՝
զի թերևս խնայեսցեն զնա։
Իսկ ընկեր նր՟ սաստեաց
նմա և ասէ, դու ո՞չ եր
կնչիս յա՟յ զի ՚ի նմին պատ
ժի կաս։ մեք յիրաւի ե՟
որոց գործեցաք՝ առնումք
զհատուցումն. իսկ սա ա
պիրատ ինչ ո՛չ գործեաց։
Բարեմիտ գոլով աւա
զակն արդարացաւ ասա.
վ՟ն զի սաստեաց չարաբա
րոյին այնմիկ։ Եւ ո՛չ միայն
այս, այլ և պարտաւորեաց
ևս զանձն իւր արժանի մա
հու գոլ, և արդարացոյց
զորբէլչն տ՟մ։ Ասյ՟ լցաւ
առ սա ասացեալն, որ խո
նարհեցուցանէ զանձն՝
բարձրասցի։ Արդ վ՟ն զի
պատժոց արժանի զանձն
համարեցաւ և զտ՟րն ան
պարտ գոլ մահու. և մին
չև ցայս վայր իւրոյին մը
տաց առաքինութեն էր
հանդէսն։ Բացեալ լի
նէին այնուհետև դրունք
մտաց նր՟. և տեսանէր ընդ
կախեալն զփայտէ՝ եկեալ
փառօքն հօր։ Ասյ՟ ասէ,
յիշեա զիս տ՟ր՝ յորժամ
գայցես արքայութե՟ քով։
Արդարացեալ է ասա ա
սացեալն, տ՟մ որ ունիցի՝
տացի և յաւելցի. և որ
ո՛չն ունիցի և զոր կարծէն
թէ ունիցի՝ բարձցի ՚ի նը
մանէ։ Արդ քանզի սա ու
նէր միտս բարիս, յաւե
լաւ նմա գիտութիւն ար
քայութե՟ նր՟։
43 Ամ՟ն որոյ ասաց տ՟րն,
այսօր ընդ իս իցես ՚ի դը
րախտին։ Արդ՝ ընդ գիր
պարտեացն ադամայ պա
տառեալ ՚ի վերայ խաչին,
(՚ի ձեռն որոյ փակեցաւ
դուռն մեր դրախտին,)
այսօր բացեալ լինի աւա
զակին ե՟ պատառին դա
տակնքին մահու։ քանզի
ամենայն ինչ յառաջինն
անդրէն դարձեալ եղև։
Զորօրինակ տիրեաց սա
տանեայ որդւոյն կորստեն
և ՚ի թուոյ անտի աշակեր
յձգ տացն

տացն նր̅ ձեռղքեաց զնա,
ըստ նմին բանացաւ եւ յս̅
՚ի մահու անդ՚ի վր̅ տէրու-
թեն մահու եւ կորզեաց ՚ի
նմանէ զաւազակն այն ինչ
անկեալ էր նովաւ եւ էած
զնա ՚ի կեանս։ Իսկ որոց
վայրապար քննելի եղեւ է
թէ ՚ի նմին աւուր եմոյծ
զնա ՚ի դրախտ անդ, թէպէտ
եւ ունիմք հաստատել է
թէ եմուտ ՚ի դրախտն,
սակայն զանկռունելին դի-
ցուք աստ։ Զի մինչեւ
ցայն վայր կորստեան մա-
սինն էր եւ ոչ դրախտին․ եւ
՚ի նմին ժամու եղեւ ընդու-
նակ դրախտին փառաց։
Ըստ որում ադամ զի յա-
ւուր յորում էանց զպատ-
ուիրանաւն մահկանացու
եղեւ բնութիւն եւ մեռաւ,
եւ զորս եկաց ՚ի կեանս՝ ՚ի
մեռելութի համարեալ էր
նմա։
44 Եւ ՚ի վեց ժամէ աւ-
ուրն խաւար եղեւ ՚ի վր̅ ամ̅
երկրի մինչեւ ցիննն ժամն։
Քանզի եւ այս գրեալ էր
՚ի մարգարէսն․ եւ պարտ էր
Պլ՛՛ իդ̅

նց̅ զոր ընթեռնուին՝ ՚ի
միտ առնուլ․ զի ոչ թէ
վայրապար մարգարէացաւ
՚ի վր̅ նց̅ ամոսն յասելն,
եւ եղիցի յաւուր յայնմիկ
ասէ տր̅ տր̅՝ արգ̅կն մտցէ
՚ի մէջօրէի․ եւ խաւարեսցի
լոյսն յերկրի ՚ի տուէ․ եւ
դարձուցից զտօնս ձեր ՚ի
սուգ եւ զերգս ձեր յողբս․
եւ արարից նմա իբրեւ սուգ
սիրելւոյ։ 8․ 9։ Համարի
այսոցիկ եւ զաքարիայի ա-
սելն, եղիցի յաւուր յայն-
միկ ցուրտ եւ պարզ․ եղի-
ցի օր մի․ եւ օրն այն յայտ-
նի տն̅։ ոչ տիւ իցէ եւ ոչ
գիշեր․ եւ ընդ երեկս՝ եղի-
ցի լոյս։ 14․ 6։ Արդ այսո-
ցիկ ՚ի կատարումն եկեալ՝
խաւարեալքն ՚ի միտ ոչ ա-
ռին․ զի երկինք մթացան
՚ի վերուստ եւ լուսաւորք
ծածկեցան խաւարաւ․ զի
՚ի սուգ մտին ՚ի վր̅ չարչա-
րանաց արարչին իւրնց։
Եւ զիննն ժամաւն աղա-
ղակեաց յս̅ եւ ասէ, ած̅
ած̅ իմ ընդէ՞ր թողեր զիս
մտթ։ Արդ զայս կարդաց
ԻԴ յձ̅դ առ

առ հայր՝ ոչ ոք թէ ինքն
թողաւ յայ հօրէ, կամ
ցիւրմէ աստուածութենէն և վս
այնորիկ զարհուրեալ 'ի
չարչարանացն խօսի զայս,
այլ իբրև զգլուխ մարմնոյ՝
փոխանակ մարմնոյ իւրոյ
կարդայ առ հայր։ Վս զի
մեք թողեալ էաք յայ վս
անհնազանդութե մերոյ.
որոյ միջնորդ լեալ որդւոյ՝
գլուխ մեր եղև հաշտե
ցուցանել ընդ հօր զան
դամս մարմնոյ իւրոյ։
Եւ արդ՝ այսօրիկ յարմա
րեալ է այս օրինակ բանից
որով կարդայ առ հայր,
զի 'ի ձեռն պատարագին
իւրոյ հաշտեսցի ընդ մար
մնոյն իւրոյ։ Իսկ լցեալքն
անօրէնութե՝ այսպն ամբարեալ
զայսպիսեօք բանիւք՝ սկը
սան ասել՝ զեղիա կարդայ
դա։ Յայնժամ անշուշտ
և անկենդան արարածք
ցնցեցին 'ի լսելիս նոցա,
իմանալ թէ յորքան գործ
անբարշտութե ժպրհեցան
նոքա։ Վս 'ի հեգնել
նոցա զբանս նր և ասել,
«Իլ՛ իդ

թող տեսցուք թէ գայ՞ է
ղիա այսր իջուցանել զդ
դա։ Եւ նախ քան զայս՝
եթէ որդի է ասեն այ՝ իջ
ցէ այժմ 'ի խաչէդ և հա
ւատասցուք նմա։ Արդ
զոր նոքա այսպն առնելով
ասացին՝ արդելան։ Բայց
սակայն որ քան զայս կա
րի հիացմանն էր՝ լինէր 'ի
դարովլուածն յանդիմանութե
ապախտաւորացն։
45 Յայնժամ վարագոյր
տաճարին ցելաւ ասէ
'ի վերուստ մինչև 'ի վայր։
և երկիր շարժեցաւ։
Նախ քան զայս աղաղա
կեաց 'ի ձայն մեծ և ասէ,
հայր՝ 'ի ձեռս քո յանձն
առնեմ զհոգի իմ։ և խո
նարհեցուցեալ զգլուխ՝
արձակեաց զհոգին։
Իշխանութե արձակեաց
զմարդկեղէն հոգին.
ըստ այնմ, իշխանութիւն
ունիմ դնել զանձն իմ, և
իշխանութիւն ունիմ առ
նուլ զնա։ յոհ 10. 18։
Արդ այսպէս ըստ որում
կամեցաւ՝ արձակեաց զդ
Իւ յձէ հռ

հոգւյն. մինչ զի և դատա-
ւորին զարմանալ թէ այն-
չափ վաղ մեռաւ: Եւ յոր
ձայնեալն զհոգին՝ յայնժամ
նշանք մեծամեծք եղեն
քան ըզիջանելն 'ի խաչէ
անտի: Հերձնոյր վարա-
գոյր տաճարին. գլորեալ
սասանէր երկիր. և պատա
ռեին վէմք: բանային և
գերեզմանք. և բզում մե
ռեալք յարեան 'ի գերեզ
մանաց և մտին յերմ և
երևեցան բազմաց յետ յա
րութե̃ նր: Արդ այսպէս
անկենդան և անզգայ ա-
րարածք տագնապաւ լու-
ծանիլ բնաւորեցան վասն
անարգանաց հաստչին:
Ուստի և վարագոյր տա-
ճարին ցելոյր: Քանզի հո
գին մարգարէութե̃ որ էր
'ի տաճարի անդ՝ իբրև ե-
տես զկատարիչն մարգա
րէութե̃՝ պատառեաց զվա-
րագոյրն և ել ընդ առաջ
նր. նշանակեալ զբառնալն
'ի նմանէ շնորհաց մարգա
րէութե̃ն և քահանայութե̃՝
և զաւէր նորա: Տեսին և
Գւլ իգ

վէմք զգալիք զվէմն իմա-
նալի անարգել 'ի չինողաց
և պատառեին յինքեանս:
Նուան ձայնի նորա և մե-
ռեալք և յարեան 'ի հա-
ւատ հասարակից յարութե̃:
Ըստ այնմ, դայ ժամանակ
և արդէն իսկ է. յորում
ամքեան որ 'ի գերեզմանս
կցեն՝ լուիցեն ձայնի որ-
դւոյն այ և ելեսցեն ար
տաքս: Արդ այսպ̃ մաճն
տրունական քակտեաց ըզ
տէրութի̃ մահու և էհան
արձակեաց զմեռեալսն
'ի նմանէ:
47 Եւ հարիւրապետին
տեսեալ զսքանչելիսն,
և զայն ևս՝ զի իշխանութ̃
'ի ձեռս հօր աւանդեաց
զոգին՝ սկսաւ փառաւոր
առնել զած և ասել, ար-
դարև այրս այս որդի այ
էր: Յայսցանէ և բզումք
սքանչացեալք բախէին ըզ
կուրծս և դառնային ան-
տի սրտրջացեալք: Եւ ին
մերձ առ նմա 'ի ժամանակի
անդ յաշակերտաց նորա
յօհաննէս, և կանայք որ
յձգ է

ենկեալ էին ընդ նմա պաշ
տել զնա։ Մի 'ի նոցանէ
էր նոյն ինքն մայրն որ ծը
նաւ զնա. զոր և յանձն իսկ
առնէ աշակերտին իբրև
զանվէրակացու ոք։ Եւ
միւս ևս մարիամ որ էր
քոյր մօր նո̄ր զոր մարիամ
կղէովպայ անուանէ. և
սողոմէ մայր յակոբայ և
յօհաննու։

'Ի նմին ժամու մատեան
հրէայքն առ պիղատոս
զի հրաման տացէ ջախջա
խել զբարձս աւազակացն
զի մի՛ անդէն 'ի խաչին ա
գանիցին մարմինքն։ ք̃զի
շաբաթն այն օր մեծ էր
առ նոսա։ և ետ հրաման
պիղատոս և ջախջախեցան
բարձք երկոցունց նոցա։
Իսկ տ̄ն մերոյ ոչ ևս, վ̄ս
կանխաւ մեռանելոյն։ յօհ։
'Նազի և յօրինակի անդ
հաստատեալ էր և պարտ
էր լինել. քանզի ոչ փայրա
պար ինչ և առանց տեսու
թեան յօրինացն սահմա
նեցաւ լինել։ Վ̃որոյ
գրեաց նզ̃ մովսէս զի զոսկր

պատարագի ելիցն նոցա
մի՛ բեկցեն։ Ելից 12. 46։
'Նորին աղագաւ և յոսկրն
ոչ խորտակեցաւ։

Բայց միումն 'ի զինուորաց
անտի գեղարդեամբ հա
րեալ զկողն, ել անտի աղ
բիւր ջրոյ խաղացելոյ 'ի
կեանսն յաւիտենից. և աղ
բիւր արեան փրկութե̄.
յորմէ լուացեալ հրով և
ջրով՝ զաղտ գարշութե̄ հը
նոյն ադամայ մերկացեալ
'ի բաց ընկենումք։ Եւ ար
բեալք կենդանի արե̄մբն՝
'ի մեռելուն մեղացն կեն
դանացեալք՝ զնորին ընդու
նիմք կենդանութի̄։

50 Եւ 'ի կատարել ա̄մի
այսօրիկ ը̄ դրոց, յովսէփ
այր հաւատացեալ որ էր
աշակերտ ք̄ի և մի 'ի նա
խարարացն հրէից, մեծա
տուն և երևելի գոլով,
մատեաւ եկաց առաջի պի
ղատոսի և խնդրեաց 'ի նը
մանէ զի հրաման տացէ
իջուցանել զմարմինն յ̄ի
'ի խաչէն անտի և տալ գե
րեզմանի։ Եւ առ այս

ճգնոյր ինչ հակառակութի
քահանայապետութեն· քանզի
լցաւ ցանկութիւն նոցա՝
տրունական մահուամբն·
և սպանին զարդարն որ
դժպհին եղև նոցա· Իմաստ
2,12· և հանդեան 'ի դառ-
նութէ իւրեանց։ Ա որոյ
և պիղատոս առանց ընդ-
բանս ինչ անկանելոյ տայ
նմա զոր հայցեացն։ Իսկ
յովսէփ առեալ զայս հրա
ման չկասկածէ ինչ 'ի հր
րէից անտի· այլ իջուցեալ
'ի խաչէն զմարմինն՝ պատեց
սբ պատատանակալօք։
Ընդ այս պաշտօն՝ կցորդի
և Նիկոդիմոս· որ և նա
յիշխանաց անտի ժողովր
դեանն գոլով մեծատուն
էր և հաւատացեալ տն։
Բերեալ և սա զմուռս
անապական և հալուէ ա-
նուշահոտ, նուէր անապա
կան Թաղմանն և անուշա-
հոտ շնորհաց հոգւոյն որ
անտի բուրելոց էր ընդ տիե
զերս։ յօհ։ Սա դարձեալ
նշանակէ թէ՝ որպէս օրէն է
մեզ ընծայել քն սբ 'ի պա
Գւլ իզ

տիւ թաղման նորա վարս
անապականս լցեալս անու-
շահոտութեն կցորդութեն
մահու նր 'ի սպանանել
զանդամս երկրաւորս և
մեռելութի գործել ան-
տիցն։ Արդ զպատասաւո
րութի պատշաճ թաղմանն
իբրև հաստուցին տրունա
կան մարմնոյն յովսէփ և
նիկոդիմոս օրինաւոր սպա
սուք, եդին զնա 'ի վիմատաշ
նոր գերեզմանի։ Մերձ
եկեալ կացեալ և ծնօթք
տն տեսանել զթաղումն նր
որք 'ի ժամու չարչարանաց
նր առ երկիւղի իբուցեալ
կացեալ հայէին։
Իսկ 'ի վաղորդեան աւուրն
'ի լուսանալ շաբաթուն,
սկսան տագնապիլ 'ի խոր
հուրդս իւրեանց քահա
նայապետքն կասկածանօք
այնմ զոր սպանին։ Ա ոյ
կացեալ առաջի պիղատոսի
խնդրեն զինուորս՝ պահա
պանս կացուցանել գերեզ
մանին։ Նոա առ այս և
դատաւորն զկամս նոցա·
ունիք ասէ զդասս զօրա-
յծր կա



կանանցն. երթայք զգու-
շացարուք որպ և կամիք.
զի մի՛ լիցի գողացեալ ոպ
և կարծէք: Նքա գնացեալ
նց կարգեցին զդասս զօ-
րականացն և կնքեցին մա
տանեաւ զվէմն զոր եդին
կափարիչ դրան գերեզմա-
նին: Մատ 27. 62:

Արդ զայս ամ թէպէտ
առ չարութն գործեն,
սակայն վերին մատակարա
րութբն ուղղեալ լինի.
զի մի՛ միայն դասք առաքե
լոցն լինիցին վկայ յարու
թեն, այլ և՛ ի թշնամեաց
լիցին պատմօղք յարութն
նր առ ամենեան: Վն որոյ
թէ լուաւ ևեթ կացեալ էին
և ոչ զօք կացուցեալ պա-
հապան գերեզմանին, ու-
նէին նոքա համարձակ խօ
սիլ զբանն գողանալոյ ա-
շակերտացն: Բայց սակայն
որով փութացան արգե-
լուլ զնա 'ի գերեզմանէն
զի մի՛ գողացեալ լիցի, նո
վին հաստատեցին առանց
կարծեաց առ ամենեսեան
զյարութիւն նորա:

Արդ եկաց 'ի գերեզմա-
նի անդ զօրն շաբաթու և
հանգեաւ 'ի գործոց իւրոց:
Քանզի յայս հայն խոր-
հուրդ՝ 'ի սկզբան անդ
գրեցն մովսէսի. յաւուրն
եօթներորդի ասէ հան-
գեաւ յամ գործոց իւրոց
զոր սկսաւ առնել ած:
Վն զի անդ՝ ասաց և է-
ղեն, հրամայեաց և հաս-
տատեցան. յորում ոչ աշ-
խատութի ինչ էր և ո՛չ պէտք
հանգստեան անկարօտ բը-
նութեն: Իսկ յերկրորդի
ստ արարչութն և վերըս-
տին ստեղծանելոյ, կարի՛
մեծաւ աշխատութբ և տա
ժանելի կրիւք մարմնոյն
էլից զայս տնօրէնութի:
Ուստի և հանգչիլն այ յա
մենայն գործոց իւրոց զոր
սկսաւ առնել՝ ասա ունի
հաստատագոյն զելս խոր-
հրդոյն: Հանդարտեցին
և կանայքն 'ի նմին աւուր
ըստ օրինացն զգուշութն.
թէպէտ և ջերմ էին 'ի տա-
նել նմա զպասաւորութին
ամ ուրեք:

*Գլուխ Ընթերցուածին

ԻԳ



սկ յանցանել շաբաթուն, 'ի վերա ղորդէն աւուրն միաշաբաթուն, փութացան կանայքն գալ 'ի գերեզմանն. և սկսան հոգալ վասն վիմին ծանրութեան թէ զիա՞րդ մարթիցէ և կար՝ բառնալ զնա 'ի դրոյ անտի վ̃ն կնքոյն և մեծութեան: Ապա ըստ մատթէոսի շարժումն մեծ եղև: Ըստորում 'ի ժամու արձակելոյ ոգւոյն և մեռանելոյն, նոյնպէս և 'ի ժամու առնելոյն և յարութեան: Երևեցան և հրեշտակք 'ի նմանութի լուսոյ. զորս տեսեալ դասուց զինուորացն թմրեցան յերկիւղէ նց̃: և փոքր ինչ ուշաբերեալ՝ փախստեայ անկանէին 'ի քաղաք անդր. և խօսէին ըստուգութ̃ վ̃ն յարութեան և տեսլեան հրեշտակացն և շարժմանն որ եղև:

Գլ՛ ԻԴ

Իսկ նոքա և աստ չարանան գողանալ զյարութին. յորմէ զանգիտել պարտ էր և ատրջանալ և ապաշաւել զառաջին գործ անբարշտութեան որով յանդըգնեցան սպանանել զառաջնորդն կենաց, նոքա դըժ̃ ժպրհին լըբութ̃ ըստ առաջին կարգին գնել արծաթոյ և ծածկել զյարութին ըստ որում և զարիւնն:

Իսկ կանանցն 'ի տարակոյս անկեալ թէ զիա՞րդ ունիցին խնդրել զմարմինն. վասն որոյ և հրեշտակն զի լուծցէ զայս, մատեաւ և 'ի բաց էառ զվէմն 'ի դրոյ անտի: Սակայն առ այս քննելի է, թէ որո՞վ ունին առ միմեանս միաբանութի բանք աւետարանչացն: Վասն զի երեքին նոքա միաբանաբար ասեն զկանայսն եկեալս 'ի գերեզմանն. իսկ յօհաննէս առանձին միայնակ զմագդաղենացին ասէ եկեալ. և զայլս 'ի կանանց անտի ո՛չ յաւելու յիշել: Արդ զայս որպէս

օրէնն է դատել՝ առաջի դի
ցուք։ Յօհաննէս քանզի
՚ի վերջին գրեաց. և զա
ռաջնոցն զոր գրեցին ե
տես. և յորժամ եկն ՚ի գը
րել, փութացաւ միայն ըզ
պակասն նոցա լնուլ։
Ա՟որոյ և ասա աւետարա
նիչք երեքեան զկանանցն
զգալն միայն ասացին որ
միաբանութեան նց էր։
Իսկ յօհաննէս ընտրեաց
զայն ինչ ասել զոր նոքա
ոչ գրեցին։ Ո՟րդ քանզի
միաբանեալ էին նոքա գալ
՚ի գերեզմանն, և զոր օրի
նակ ՚ի միում ժամու գային
՚ի գերեզմանն պետրոս և
յօհաննէս, և յառաջեալ
յօհաննէս վաղագոյն ժա
մանեաց ՚ի գերեզմանն.
նոյնպէս և մագդաղենացին
զի ջերմ էր և արիագոյն
քան զայլսն, փութացաւ
նախ ժամանել ՚ի գերեզ
մանն։ Ե՟ւ եկեալ ետես
զվէմն բարձեալ և զմար
մինն ոչ անդէն. և ՚ի հրեշ
տակաց զոք ոչ ետես։ Ե՟ւ
՚ի նմին ոչ եկաց մինչև ՚ի

Կ՛լ իդ

գալն այլոց ևս կանանցն.
այլ գնաց առ աշակերտսն
թերևս ՚ի նոցանէ ուսցի
զերացն պատահումն։
Ե՟ւ իբրև նոքա ինչ ոչ գի
տէին, պատմեաց նց եթէ
՚ի գերեզմանի անդ ոչ է։
Ա՟պա գան և այլ կանայքն.
և յայտնեալ նց հրեշտա
կացն զանձինս, խօսէին ը՟
նս վս յարութեանն. և
առաքեն զնս քարոզ առա
քելոցն, զի պատուէր տա
ցեն նց գնալ ՚ի գալիլեա։
Ո՟րդ զայս տեսիլ հրեշ
տակաց՝ մատթէոս զմինն
միայն ասէ որ նստէր ՚ի վե՟
վէմին. որոյ տեսիլն իբրև
զփայլակն էր. Իսկ մարկոս
զայն ևս յաւելու ասել՝
որ նստէր ընդաջմէ կողմա
նէ զգեցեալ պատմուճան
սպիտակ յորմէ զարհու
րեցան։ Ն՟այց ղուկաս զեր
կուսն ևս յաւելու ա
սել։
4 Ե՟ւ ահա —է արք եր
կու հասին առ նս ՚ի հան
դերձս լուսաւորս. և նք
զահի հարան ՚ի տեսանելն

յղ ըղ

զնոսա, և խոնարհեցուցին զաչս իւրեանց ընդ երկիր հայիլ։ Ապա բառնան ՚ի նոցանէ զերկիւղն և արկանեն ըզ հրէիւքն. զի այնուհետև թշնամեացն որա է երկիւղն որ սպանանողք եղեն և ոչ բարեկամացն որ խնդրեն զնա։ Խօսին ընդ նոսա վասն յարութեան. և յուշ առնեն զոր լուան նոքա ՚ի նմանէ վասն չարչարանացն և մահուն՝ անդէն առնմին և յարութեան։ Զի ոչ եթէ բռնութեամբ տիրեաց ՚ի վերայ նորա, այլ ինքն մատնեաց զանձն մահու։ Նորին աղագաւ և կանխաւ ասաց, զի յելերցն՝ կարծիք մի՛ զօրասցի տիրել։ Արդ լուեալ կանանցն այնոցիկ ՚ի հրեշտակաց անտի՝ գնացին առ աշակերտսն։ Եւ ՚ի ճանապարհի անդ զի ստուգեսցէ առ նոսա զասացեալսն, Պատահեաց նոցա և ասէ ողջ էք. և նոքա մատուցեալ անկան առ ոտս նորա։ Իսկ յայնժամ նովին բանիւք զոր լուան ՚ի հրեշտակաց անտի՝ խօսի ընդ նոսա։ Երթայք ասէ ասացէք եղբարցն իմոց զի երթիցեն ՚ի գալիլեա և անդ տեսցեն զիս։ Եւ գընացեալ կանանցն այնոցիկ՝ պատմեցին զայս ամենայն՝ մետասան առաքելոցն և այլոցն ամենեցուն որ էին ընդ նոսա յեօթանասնից անտի. որք իբրև լուան թէ ըմբռնեցաւ ՚ի հրէիցն, եկեալ ժողովեցան առ մետասանսն։ Նա քանզի և ինքն իսկ յայնժամ ՚ի ժամանակի մատնութեանն կամեցաւ մեկնել զնոսա յինքենէ զի մի՛ յունելն զնա զինուորացն՝ խռովութիւն ինչ լինիցի։ Զի թէ մետասանքն միայն ՚ի սուր մտաբերեցին և պետրոս գործով եցոյց, որպիսի ինչ ամբոխ և խռովութիւն հանդերձեալ էր լինել եթէ և եօթանասունքն ընդ նոսա լեալ էին։ Նորին աղագաւ ինքն իսկ մեկուսացոյց զանձն իւր և ետ ՚ի ձեռս նոցա։ քանզի վասն նորա գրեցաւ, մի՛ աղա

զակեսցէ և մի՛ վիճեսցէ.
և մի՛ ոք լուիցէ զբարբառ
նոր: Ես 42. 2: Յղբս որոյ
և առաջին հերովդէի և պի
ղատոսի անհեալ՝ ոչ կամե
ցան ընդդիմաբան լինիլ
այնոցիկ որ հակառակ նր
վկայէին. մինչև զարմանալ
դատաւորին: Արդ այսմ
ամ օրինակաւ զանձն ան
պարտ եցոյց. վս այնորիկ
և զբազմութի աշակերտացն
որոշեաց յանձնէ խուռնէ.
զի մի՛ ՚ի հակառակիլ նց՝
իբրև զխռովարար ոք ցու
ցեալ լիցի: Բայց այժմ՝
թուի թէ եկեալ ժողովե
ցան նոքա՝ և այն ծանօթքն
որ ՚ի բացեայ կացեալ տե
սանէին զնա: և վս նց է
ասացեալն, և այլոցն ամե
նեցուն: Ո ի թէպէտ և
մետասանքն միայն գրե
ցան, սակայն նա բազմաց
երևեցաւ: զոր և առաքե
լոյ ցուցեալ է: Երևեցաւ
ասէ աւելի քան զհինգհա
րիւր եղբարց: I կոր 14. 6:
10 Եւ էին անդ մարիամ
մագդաղենացի և յով
Պ՛՛ Իդ

հաննա և այլք ընդ նոսա
որք պատմեցին զայս առա
քելոցն:
Ամ անետրնիչքն յառաջ
կարգեն զմագդաղենա
ցին. ոչ պատուոյ սակս,
այլ վասն յառաջանալոյն
քան զամենեսեան զնս:
Եւ երևեցան շաղփաղփ
բանք նց. և ոչ հաւա
տացին նոցա: Ղուկ:
Վ ասն զի յառաջ ժամա
նեալ մագդաղենացին՝ ոչ
՚ի հրեշտակաց զոք ետես
և ոչ զյս: Իսկ այլ կա
նայքն եկեալ պատմեցին
նց վս հրեշտակացն տես
լեան և զոր խօսեցան ը
նս. և ոչ թէ բանք սոսկ,
այլ և զնոյն ինքն զնա տե
սին յարուցեալ ՚ի մեռելոց:
Եւ այսու տարակուսեալ
աշակերտացն՝ ոչ հաւատա
ցին բանիցն զոր խօսեցան
նոքա երկբայութեամբ:
Բայց պետրոս յարուցեալ
գնաց ՚ի գերեզմանն:
Յօհաննէս և զհետ անձն
ընդ նմին կարգէ: Իսկ սա
զպետրոս միայն: Եւ չէին

 սո

տօքա երկբանութի՟ք որպ՟
բազմօք յայտէ։ Սա ետես ա
սէ զկտաւսն լոկ զի կային՝
և գնաց ընդ միտս զարմա
ցեալ Թէ զինչ եղև։
Սա՟ ոչ վասն մարմնոյն Թէ
զինչ՝ և անգիտացել զար
մանայ, այլ վ՟ զի յիշեաց
զա՟մ զասացեալսն զոր կան
խա՟ խօսեցա՟ ընդ նոսա
վ՟ չարչարմացն՝ մահուն՝
և յարութեն. և ընդ այս
որ ինչ եղեն զարմացա՟.
քանզի բազում անգամ
յայտնեաց նոցա զայս ա՟մ
և նոքա 'ի միտ ոչ առին։
Եւր ու է բանն ծածկեալ
'ի նոցանէ զի մի՛ գիտասցեն
Ղուկ 9. 45։ Արդ եկեալ
'ի գերեզմանն և ոչ անդէն
գտեալ զմարմինն՝ բացան
յանկարծակի աչք հ՟գւյն
և յիշեաց զառաջասա՟ցսն
իբրև 'ի քնոյ զարթու՟ցլ.
և 'ի հիացման մեծի եղեալ՝
զարմանայր ընդ ելս իրացն
կատարման խորհրդոյն։
Զայս տեսու՟ի առաջնոր
դեն քննողաց բանին՝ և
յօհաննու ասելն, եմուտ

Պւ՟իդ

'ի գերեզմանն. ետես և
հաւատաց. զի չև ևս գի
տէին զգիրս Թէ պարտ էր
նմա 'ի մեռելոց յառնել։
Արդ յարեաւ նա 'ի միա
շաբաթոջ աւուրն. ըստ ո
րում մարգարէին օրինա
կեաց զայս յառաջագոյն
և զեկոյց կանխաւ. և որք
նախ քան զմեզ այսոցիկ ե
ղեն քննիչք։ Վ՟ զի ա՟ց
ըստ նմանութե՟ յօնանու
երիս աւ՟ս և երիս գիշերս
լինիլ 'ի սիրտ երկրի, լուծ
մունս դնեն վ՟ արդարա
ցուցանելոյ զասա՟ցլսն տ՟ն։
Սա՟ է մի 'ի նոցանէ որ և
ինձ Թուի յաջողակ լինել
որով լուծանի խնդիր խոր
հրդոյն. այն զի ինքն նախ
պատարագեաց զմարմինն
իւր, յորում կատարեցա՟
խորհուրդ մահուանն։
Ապ՟ եբեկ զմարմինն իւր
և բաշխեաց յառա՟քլսն և
ասէ, առէք կերայք զդա։
Սա՟ եհեղ զարիւն իւր
և ետ ըմպել նմ՟. և Թա
ղեցաւ նա 'ի սիրտ հողե
ղինացն. և կատարեցաւ

յղ՟ խոր

խորհուրդ Թաղմանն իւրոյ·
առ որ յարութին ճշմար
տեալ է։ Պարծել զինչ ար
գելու զմեզ առ այս՝ ասել
երբեք լինիլ ընդ տիւա և
ընդ գիւղերս որ կարի յայտ
նապէս ունի զցոյցն։
Իսկ եթէ ընդդէմ ոք դի
ցէ զմարգարէին, այսմիկ
ունիմք ասել, թէ ոչ 'ի
Թիւս է ակնարկումն տրու
նական բանիցն, այլ միայն
'ի լինելն 'ի սիրտ երկրի·
ըստ որում և կլեալ մար
գարէն յորովայն կէտին։
Արդ եկեալ 'ի գերեզմանն՝
պետրոսի և յօհաննու, և
մտեալ պետրոս 'ի գերեզ
մանն տեսանէ՛ անդէն մը
նացեալ զկտաւսն և զվար
շամակն ուրոյն 'ի մի կողմ
ծալեալ և եդեալ նշան
յարութեան իւրոյ։ Որ
տեսել ծանեաւ եթէ յա
րուցեալ է։ Թերևս խօ
սի ընդ յօհաննու վասն սո
րին թէպէտ և ոչ գրեցաւ։
Աւստի և յօհաննէս մը
տեալ ետես և հաւատաց։
Այլ 'ի գնալն պետրոսի առ

Գլ ԻԴ

ընկերսն՝ 'ի նմին ժամու
երևեցաւ նմա յս։ Ըստ
առաքելոյ, երևեցաւ ասէ
նախ կեփայի և ապա երկո
տասանիցն։ Այլ անդէն
մերձ առ գերեզմանաւն
մարիամ մագդաղենացին
և լայր։ Վն զի այլոց կա
նանցն տեսեալ զնա յա
րուցեալ 'ի մեռելոց, սթա
փեալք 'ի տրտմութենէ անտի՝
կային առանց բանսինչ ըղ
մտաւ ածելոյ։ Իսկ սորա
ոչ զոք ընաւ տեսեալ՝ կայր
անդէն առ գերեզմանաւն
սրգով պաշարեալ և լայր։
Ապա կամեցեալ տն լու
ծանել զտրտմութիւն կը
նոջն, խօսի ընդ նա նախ
հրեշտակօք· ըստ որում և
ընդ այլ կանայսն։ ապա և
ինքն իսկ յայտնէ զանձն·
և արգելու զյարձակումն
կնոջն տարաժամ և անխոր
հուրդ մերձենալոյն առ նա
Այլ առաքէ զնա գնալ
պատմել աշակերտացն զոր
խօսեցան ընդ նմա։
Այլ ինքն ուղեկցի այնո
ցիկ որ գնային յէմմաւուս։

յղէ քան

Քանզի այսպէս կարգեաց
եդ զայս սոյն այս աւետա
րանիչ յաւսելն։

13 Եւ ահա երկու ՚ի նո
ցանէ երթային ՚ի
նմին աւուր ՚ի գիւղ մի որ
հեռի էր յերուսաղէմէ
հարիւր և վաթսուն ասպա
րիզաւ. և էր անուն նորա
էմմաուս։

Յորոց արդեօք ՚ի նցնէ
են սոքա. ոչ յառաքե
լոց անտի մետասանից,
այլ ՚ի սիրելեաց և ՚ի բա
րեկամաց անտի։ Գնային
աստ ՚ի գիւղն յայն որ հե
ռի էր յերուսաղէմէ։

Եւ ոչ վայրապար դնէ ըզ
չափ ճանպրհին՝ երկայն
ութ ճկ ասպարիզաւ լեալ.
այլ զի յայտ արասցէ թէ
զայնքան երկայնութիւն
ճանապարհին գնալով ը
նոսա՝ խօսեցան զամ մար
գարէից բանսն. և ոչ հա
րևանցի ինչ տեսութիւն։
Ըստ որում և յօհաննէս
ըզբեթանիա հնգետասան
ասաց ասպարիզօք մն մերձ
գոլոյն յէմ և բազմաց ՚ի

քաղաքէ անտի լինելոյ.
որք տեսօղք եղեն սքան
չելեացն որ ցուցաւ յա
րութեն ղազարու և լցին
զերուսաղէմ։ և զի մօտ էր՝
եկին բազումք տեսանել։
Եւ յայտ և աստ մն յամե
լոյն առ նոսա՝ դնէ զեր
կայնութ ճանապարհին։
Քանզի ՚ի նմին աւուր ՚ի
միաշաբաթօջն՝ յուջնում
աւուր յարութեան՝ ճա
նապարհակից եղև նց ՚ի
սկզբան ելից նց յեէմէ.
մերձեցաւ և գնայր ընդ
նմա։ Նշանակէ և զանուն
գեղջն. զի որք անգիտա
նան յետ այնորիկ՝ աստի
ունիցին անմոռաց ուսանել
կալ ՚ի վր տեղւոյն։

14 Եւ նոքա խօսէին ը
միմեանս վս ամ անցիցն
անցելոց։ Երդ՝ խօսէին
ում օրէնն է մարդոյ յորժամ
հակառակաբար ունիցին
զկարծիսն. քանզի զայս նը
շանակէ ասելն, և եղև ՚ի
խօսիլն նոցա և ՚ի վիճելն
և ինքն իսկ մերձեցաւ և
երթայր ընդ նմա։ Յորժէ

պատշաճ է իմանալ զմինն հաստատագոյն լինել ՚ի հաւատսն՝ և միւսն տկարագոյն։ Աւստի և որ թերին էր խօսէր զամ ինչ ընդունայն լեալ զառաջինսն վասն գայթակղութեան խաչին և զոր ետես զանչափ անարգանսն զոր և ոչ մի ոք կրեաց ՚ի մարդկանէ։

Իսկ ընկերն թերևս խօսէր վասն սքանչելեացն և պէս պէս զօրութեացն զոր տեսին ՚ի նմանէ կատարեալ. և որ ՚ի ժամ խաչին եղեն նշանք ահագինք և մեծամեծք. ոչ թէ վայրապար սոքա ամենեքին ոչ եղեն. և ունայն յերկիր ոչ անկանիցին. այլ կալ մնալ ակնունել յարութեանն։ զի որ զբազումս յարոյց, առ իւր անձն զիարդ ունի տկարանալ։ Ի դէպ էր և հակառակադրին ասել առ այս, եթէ գոյր յարութիւն և զօրութիւն նմա վճարել զայս, զինչ պէտք էին ամենայն այսոցիկ զոր համբերեր նա։ Նա մի՛ ոք կարի

տկարութեան առն տացէ զայս. քանզի և այժմ բազումք զնոյն ախտանան։ զի յետ այսքան աստուածավայելուչ խորհրդոյ յայտնութեան և պայծառ քարոզութեան որ ելից զտիեզերս, տակաւին և ս գայթակղին զմարմնովն և զմահուամբն և որ նոցունց են մասինս։ Այս միտս եկեալ և նա՝ որ այն ինչ աչօք ետես զբիւր նեղութիւնս և նախատինս որով անարգեցաւ։ Այլ և տէրն զի մի՛ խոպար աշտասցի կարճամիտն, կամեցաւ խրատել զնա։ Նաև և ոչ էին բանքն այնքան առ թերահաւատութեան որչափ առ տրտմութեան. նորին աղաղակաւ յայտնէ՛ զանձն իւր։ Որդ՝ թէպէտ և գնայր ընդ նոսա՝ սակայն առագաստեաց զաչս նոցա զի մի՛ ծանիցեն զնա։ Եւ մինչ ՚ի բանս հակառակութեան անկեալ կային նոքա վարանեալ, խօսի ընդ նոսա և ասէ,

17 Զինչ են բանքդ

վ՟ն որոյ վիճիք ը՟ միմեանս
մինչդեռ գնայքդ՝ և
տրտմեալ էք:
Ընդխտացել զբանն հարցանէ, զի 'ի նոցունց լուել զպատճառս խրացն, այնուհետև ունիցի պատշաճագոյնս մերձ գնել և զլուծումն խորհրդոյն: Զի՞նչ իցեն հակառակութիւնդ ասէ զի՞ վիճիք մինչ գնայքդ: Նայինքն զի և ո՛չ ճանապարհդ արգել զձեզ առ մեծի տրտմութեանդ որով ախտացեալ էք: Պատասխանի ետ մի ոմն 'ի նոցանէ որում անուն էր կղէոպաս և ասէ, դու միայն կաս յերուսաղէմ, որ ոչ գիտացեր թէ զինչ գործեցաւ 'ի նմա
յաւուրս յայսոսիկ:
Կղէոպաս այս եղբայրէր յովսեփայ արդարոյ որ անուանեցաւ հայր տն մերոյ. և 'ի բանից անտի զոր խօսեցաւ յայտ է թէ սա կայր 'ի հաստատուն քն զինկերն Յաղագս որոյ ձեռնէրեց լինի 'ի պատասխանիսն և ոչ թողու յինկերն, զի մի

երկբայաբար ինչ խօսեցյլ և զնա 'ի կարծիս հակառակութե արկցէ: վ՟ն որոյ ասէ, դու միայն ես յէմ որ ոչ գիտացեր: քն զի մերձ էին յեէմ և ոչ հեռագոյն:
Իսկ թէ կարծիս ինչ ունիլ թէ յայլմէ տեղեաց եկեալ յարեցաւ 'ի նս այլով ճանապարհաւ: Նայե՟լ վ՟ն զի 'ի քաղաքէ անտի ը՟ նս էլ, զոր կարծէր 'ի քղքացեաց անտի գոլ, և վկայ և տեսօղ ամի զոր խօսէին վ՟ն սքանչելեացն և չարչարանացն որում համբերն նա: Յաղագս որոյ ասէ, դու միայն ոչ գիտացեր թէ զինչ գործեցն յաւուրս յայսոսիկ: Նայինքն զի և 'ի հեռաբնակ վայրս լուան վ՟ն համբաւոյն յի նշանացն. որ ընդ բնաւն տարածեալ էր թէ նա իցէ քն:
Զի ոչ թէ գոյին ոք էր 'ի մարդկանէ վ՟ն հանդիսի ժողովոյն 'ի վր նր 'ի մեծ տօնին. զի ոչ եթէ գաղտ ուրեք սպանաւ. և զխարդ դու 'ի նմին քաղաքի գոլով


յղմ

անդիտանաս զեղեալսն։
Իսկ յո՟ տակաւին եւ ան
դիտացեալ զերսն՝ հարցա
նէ թէ՝ զի՞նչ։ Ապա սկը
սանի ճշմարտասէր գոլով
զհրաշափառագոյնսն եւըզ
զարմանալիսն կարգել ըզ
բանսն։
19 Օյսէ տէ զնազարե
ցւոյ որ եղեւ այր մրգրէ
հզօր արդեամբ եւբանիւք
առաջի այ՟ եւ ամենայն ժո
ղովրդեանն։
Կցորդի՛ յայս՝ եւ որ վասն
առաջնոյն այնոցիկ վկայու
թեան։ Այլ որ զհակառա
կութիւն կրէր՝ մարգարէ
զնա ասէր գոլ. սակայն մե
ծացուցանէր ըզպատիւն
քան զա՟մ մարգարէից՝ յա
սելն, հզօր արդեամբք նը
շանացն զոր ոչ ոք 'ի մար
գարէից անտի գործեաց։
Այլ բանիւք, զի ոչ էր ու
սուցանել նր՟ իբրեւ զմար
գարէիցն ուք իբրեւ զպատ
գամաւորս ։յայ առեալ
խօսէին առ մարդիկ. այլ
նա իշխանութբ՟ ուսուցա
նէր անձամբ խօսեցեալ



ընդ նմ՟ զօրաւոր բանիւք
եւ լցեալ իմաստութբ՟։
Այլ՟ այսպիսի գոլով՝ նոյն
էր որդ՟ երեւելիքն եւ ծա
ծուկքն զոր ամենատես
ակնն այ՟ տեսանէր՝ եւ ժո
ղովրդեանն. զի ոչ ինչ էր
'ի նմա թաքուն կամ խա
բէութբ՟. քանզի զայս ունի
իմաստս ասելն, առաջի այ՟
եւ ամենայն ժողովրդեանն։
Սորդ զայս ասացեալ՝ ամ
բաստան լինին եւ վն՟ ան
զգամութե իշխանացն. զի
այսպիսի գոլով՝ պատուոյ
եւ փառաց եւ մեծի հնազան
դութե էր արժանաւոր.
եւ ոչ այնքան թշնամանաց
եւ անարգ մահու զոր հա
տուցին նմա յանդգնու
թեամբ։
20 Որպ՟ քահանայապետքն
մեր եւ իշխանք մատնեցին
զնա ատեան 'ի դտստան մահու
եւ հանին զնա 'ի խաչ։
Որքան յանձնեցին ըզ
գովութիւնս ոն՝ այնքան բազ
մացուցին ըզբամբասանս
քահանայապետիցն եւ զիշ
խանացն. զի որոց պարտ էր

ուղղութեց լինիլ վերակա_
ցու և առաջնորդ՝ և ոչ
բնաւ՛ արեան հաղորդիլ
և կարի՛ փոքու ՚ի մարդկա
նէ և որ արժանապարտն է
մահու։ սակայն նք յայն_
քան ժպրհութիւն եղեն
անկեալք, զի զսբն և զար
դարն մատնեցին՚ի դատաստա
տան մահու։ Զոր պիղա
տոս ՚ի հեթանոսաց գոլով՝
՚ի դատելն՝ անպարտ մա_
հու ասաց լինիլ զնա և կա
մեր արձակել։ Իսկ քա_
հանայապետքն առ յոյժ չա
րութեանն և նախանձուն՝
ոչ ներեին արձակել, այլ
մատնեին զնա մահու. և ոչ
վայրապար մահու, այլ ա_
նարգ մահու ՚ի վր փայտի
կախել ընդ չարագործս.
զի յամենայնի կատարես_
ցեն զմեղս իւրեանց։
Արդ ասացեալ զիշխանաց
ժողովրդեանն՝ յաւելուն
և զանձանց ևս զոր վս նո
րուն էին կարծիք։
21 Մեք աղէ ակնունէաք
թէ նա՛ է որ փրկելոց իցէ
զիսրայէլ։
Գլ" իդ

Զայս ասացին՝ քանզի
լուան ՚ի մրգրէից անտի՝
և կայր ՚ի մէջ ժողովրդեանն
ասելն եթէ քս փրկիչ նց
յայտնելոց է։ Եւ տեսել
զնա որք առանց նախան_
ձու էին և ակնունէին փր
կութեն՝ հաւատացին թէ
նա՛ է և եկն փրկել՝ վասն
զարմանալի նշանացն և
յովհաննու վկայութեն։
Սակայն զայս խորհուրդ
անգիտացան՝ եթէ մահ_
ուամբ լուծանէ զմահ.
և տկարութբ յաղթէ, և
վիրօք բժշկէ զվէրս, և
անարգանօք ածէ ՚ի փառս,
և դատապարտութբ պատա
ռէ զդատակնիք մահու,
և արեամբ ուխտին արձա
կէ զարգելեալսն, զաք. 9. 11
և աղքատութբ ճոխացու_
ցանէ զաղքատացեալ բնու
թիս. և ոգւոց է նա ազա
տիչ ՚ի ծառայութենէ մա
հու. և կանգնիչ է ՚ի գլոր
մանէ մեղացն։ Այլ այնպ
կարծէին թէ ըստ մարմնոյ
թագաւորեսցէ. որ արդա
րութբ տիրէ, և զօրանայ
Իս դծ իրա

խրախուսմունք նուաճել զա֊
պըստամբս․ և աղաչիցէ
նց ՚ի ծառայութիւն հեթա֊
նոսաց․ Արդ․ մինչ նոքա
այսոցիկ ակնունէին աղա֊
չէին, և ապա տեսին կա֊
պանօք ըմբռնեալ և ՚ի դա֊
տաստան մահու քարշեալ
և այնքան նախատանօք ձա֊
ղեալ, անկան լուծան որ
կարացեալք ՚ի հաւատս։
Այս հայր խորհուրդ և
սիմէոնի ասելն մօր նորա
մարիամու, եթէ ընդ քո
իսկ անձնդ անցցէ սուր
զի յայտնեսցին ՚ի բազում
սրտից խորհուրդք։
Արդ՝ թէպէտ ՚ի յուսոյն
վրիպեալք այսչափ ախտա֊
ցան, սակայն ոչ բնաւին ան֊
կան ՚ի բաց․ վասն որոյ տալկա֊
ւին ես յաւելուն զհաւա֊
տոց բանս յասելն։
Զանդերձ այսու ամի֊
այս երրորդ օր է յորմէհե֊
տէ այն գործեցաւ։
Զայս ասացին վասն զի
յիշէին զբանս նր զոր ա֊
սաց նց վս անարգանացն
և չարչարանացն և մահուն․
Ղ․Կ Իդ

և թէ՝ յերկիր աւուր յարի֊
ցէ․ և ակնունէին թէ կա֊
տարեսցին ասացեալքն․
Եւ զայս միտս ոչ միայն
երկից աւուրց ասելն նշա֊
նակէ, այլ և յաջորդն ամ
զայս ընծայեն իմաստս
քննողացն բանին․
22 Բանզի յասելն, Կա֊
նայք ոմանք ՚ի մէնջ զար֊
մացուցին զմեզ․ որք կան֊
խեալ ընդ առաւօտն չոքան
՚ի գերեզմանն և ոչ գտին
զմարմին նր․ եկին և ասեն
թէ տեսիլ ևս հրեշտակաց
տեսին որք ասէին զնմանէ
թէ կենդանի է։ Թէպէտ
և զպատշաճ կարծիս երկ֊
գիտութի վասն նորա նոքա
ոչ ունէին, սակայն որչափ
հասու էին՝ չզլանան ինչ
բնաւ ՚ի ստուգութէ անտի
երբեք դժկամակք․ այլ բա֊
րեմտութբ հաւատոյ պատ֊
միչք լինին առաջին սքան֊
չելեացն և արդարութն նր,
և զանիրաւ յանդգնութիս
հրէիցն, և որ ՚ի վերայ գե֊
րեզմանին նշանք, և զյա֊
րութեն բան որչափ լուանին։
Ի․Օ    նա    վս

Վ՟յ և այսքան աստացեալ
բանիւքս՝ թուի թէ և ըղ
նա՛ ընդ որում խօսէին՝ կա
մին ձգել ՚ի հաւատս. կար
ծելով թէ ՚ի թշնամեաց
անտի ն՟ր իցէ. ո՟պ զի մի՛
խօսեսցի ըղձմանէ բանս
հայհոյութ՟ե։ Նաև ինքեանք
թէպ՟տ ՚ի հրէից անտի էին
ազգաւ, սակայն որոշեն
զանձինս ՚ի նոցանէ իբրև
զաշակերտս՝ յաւելն, կա
նայք ոմանք ՚ի մէնջ զարմա
ցուցին զմեզ։ քանզի ընդ
առաքելոցն էին և ոչքա ՚ի
դաս կանանցն և ՚ի խօսիլն
ընդ նոսա։ Եւ ո՛չ այսչափ
միայն, այլ և յառաքելոց
անտի համարին զանձինս
որք յար ը՟ նմա շրջէին։
Վ՟ս որոյ ասեն, գնացին
ոմանք ՚ի մէնջ ՚ի գերեզ
մանն և գտին նոյնպ՟ս ո՟պ
և կանայքն ասացին, բայց
զնա ոչ տեսին։ Ա՟յա այն
իսկ է՝ յորժամ պետրոս և
յօհաննէս գնացին և լոկ
միայն զկտաւսն տեսին։
Իսկ այն զի ասեն՝ բայց
զնա ոչ տեսին, յայն ունի

զակնարկումն, զի կանայքն
և զնա տեսին ըստ մատ
թէոսի որ ասէ, և ահա՛ պա
տահեաց նոցա յ՟ս և ասէ
ողջ էք. և նոքա մատու
ցեալ կալան զոտս ն՟ր։
Արդ յորժամ սոքա յորս
հասու եղեն՝ արդարութ՟ե
խօսեցան ընդ նմա, ապա
սկսանի այնուհետև ինքն
տալ վկայութ՟ի անձին իւրոյ։
և նախ սաստէ ՚ի ն՟ս. յայտ
արարեալ թէ և՛ս բարձ
րագոյն պարտ է զնմանէ
իմանալ։
25 Վ՟յ ասէ, ո՛վ անմիտք
և հեղգամիտք։
Պարսաւէ զթանձրամիտն
լինիլ ն՟ց և հեղգագոյնս
յուսանիլն, զի միտս ն՟բս
ստասցին. և զհեղգութ՟ի
՚ի բաց եդեալ՝ ուսցին որ
ինչ ՚ի մր՟գրեան գրեալ է
վ՟ս նորա։ Զի անմիտս
ասել զնոսա զայն ունի.
քանզի բազում անգամ
լուեալ ՚ի նմանէ ՚ի միտ ոչ
առին։ Եւ հեղգամիտս,
զի և ոչ ընդ մր՟գրեիցն կա
մեցան հայիլ ընդ բանսն

և անտի ուսանիլ զոր ինչ
պարտ էր մ՟ն ն՟ր գիտել։
Այլ արդ՝ այսու փոխադրէ
զն՟ն յայնպիսեաց կարծեաց՝
մի՛ ինչ աշխարհական և
երկրային մ՟ն ն՟ր իմանալ.
թէպէտ և փ՟ոռագոյնք
իցեն։ քանզի որ ինչ նո-
րայն է՝ ա՟ծ ավայելուչք և
երկնայինք են։ Այլ թէ՝
ն՟ց յայն տեսու՟ն պարտ է
մերանալ. և զա՟մ կարծիս
թանձրագոյնս իբրև ըղ-
ձասիչ ճշմարտութեանն
՚ի բաց ընկենուլ։

Ո՛վ անմիտք ասէ և հեղ-
գասիրտք, ՚ի հաւատալ ա՟մի
զոր խօսեցան մ՟րգ՟րէքն,
ո՛չ զնոյնս պարտ էր չարչա-
րիլ ք՟ի և մտանել ՚ի
փառս իւր։

Որչափ կարևոր և պատ-
շաճ զչարչարանսն համա-
րի, մինչ զի և հոգւոյն ա՟յ
փոյթ եղև աղդել ՚ի մար-
գարէսն զի խօսեսցին, և
՚ի գիրս դրոշմեալս հաստա-
տեսցեն զա՟մ տնօրինա-
կանս ն՟ր։ Այլ արդ եթէ
այս ա՟մ գրեալ էր յօրէնս,



և իրաւունք ա՟յէ զի բանք
ն՟ր մի՛ վայրապար լինիցին,
այլ ՚ի կատարումն եկեալ
արդարասցին։ Վասն որոյ
զնոյնս պարտ էր ասէ չար-
չարիլ ք՟ի և մտանել ՚ի
փառս իւր։ Զի ցուցցէ
թէ ՚ի պէտս անարգանացն
և չարչարանացն եղև գա-
լուստ ն՟ր. և ո՛չ թագաւո-
րու՟ն առնալ յերկրի և
իշխել բազմաց։ Այլ յոր-
ժամ զորտմականսն եդ՝
զոր օրինօք կրեաց հատու-
ցանել զպարտիսն առաջին
մեղուցեալ մարդոյն՝ և նո-
րա՟ն զա՟մցն որ ընդ նորին
դատաստանօքն անկան,
ապա և զմեծ վայելչու՟թ՟ի
փառաց ն՟ր որ կարի ուրա-
խութ՟են էր՝ ՚ի նոյն յարե-
յասեղն, մտանել ՚ի փառս
իւր։ Ո՛չ ստացական և
ո՛չ չարչարանացն պար-
գևք. այլ իւր ն՟ր սեպհա-
կան։ Որպէս յայնմ, հա՛յր փա-
ռաւորեա՛ զիս առ ՚ի քէն
փառօքն զոր ունէի նախ
քան զլինելն աշխարհի առ
՚ի քէն։ յո՟վ 17. 5։

Որդ այսու բանիւքս յե
րեւելեացս աստ՝ի բաց տա
նի և յաներևոյթս ձգէ
զմիտս նց՝ այնպիսեօք տե
սութեք նկատել զփառս
նր. զի մի՝ մարդկօրէն ինչ
և երկրայինս ախտացեալս
վն չարչարանաց նր. այլ
՝ի փառաւորագունից ան
տի զուարթացեալք սթա
փեացին ՝ի տրտմականացն
որով զհակառակութ ՝ի վե
ձեւն կրէին։ Որդ թէպէտ
և ձգեաց զմիտս նոցա ՝ի
բանս մրգրէիցն և եցոյց
եթէ ըստ գրոց ամ ինչ
էանց ընդ նա, սակայն գի
տէր թէ ոչ էին նոքա բա
ւական ՝ի մրգրէից անտի
ընտրել զվկյութիս վասն
ամենայնի այնոցիկ։ Եւ զի
դիւրաւ ընծայեցուսցէ
նց զամ, նորին աղագաւ
սկսանի բանալ նց զգիրս
մարգարէիցն։ Նմանս և
զմիտս նց զի կարողասցին
՝ի միտ առնուլ զոր խօսե
ցան վն նր մարգարէքն։
յաղագս որոյ աւէ,
27 Սկսեալ ՝ի մովսիսէ և
Ղ՟կ՟ իդ

յամ մարգարէից մեկնէր
նոցա որ ինչ գրեալ էր
զնմանէ։
Ասուի թէ ոչ վն չարչա
րանացն և յարութեն և
փառացն միայն խօսեցաւ
՝ի մրգրէից անտի առեալ,
այլ և ՝ի սկզբանն անդ ՝ի ծա
նելոյն մինչև ՝ի կատարումն
վերանալոյ նր՝ առ ամ որ
նորինականն զոր տեսին
նոքա՝ մերձ եդ զվկյութիս
մարգարէիցն և զարթոյց
զմիտս նց իբրև ՝ի քնոյ։
Եւ յայտնիք են վկայու
թիք մարգարէիցն վն ամի
զոր խօսեցան զնմանէ. և
ամն ոչ պարտն էր դնել
առաջի նց. և մեզ երկրոր
դել զայնոսիկ օրէն ոչ է։
Այլ որք ՝ի բազմութիւն
փութան և վայելչականս
վարկցին կարդել, առ նը
մին ունին անկարօտս.
վն զի ՝ի բազմաց ընտրեալ
դասեցան ամենեքեան
նոքա։
28 Եւ իբրև մերձեցան՝ի
գիւղն յոր երթային, և
նա պատճառէր հեռագոյն
նդ
Եւ

Եւ ուրեք երթալ:
Պատճառս առաջի դնէ մեկնիլ 'ի նմանէ զի յայտնեսցէ զսէրն նոցա որով հաստատեցան առ նա:
Զի թէպէտ և զայն թէ քս՟ էր ոչ գիտէին, բայց սէրն վս՟ քի՟ էր. քանզի զնա աւետարանիչ էր. և վս՟ նր՟ յարութեանն և այլոց հրաշափառագունից նորա էին բանքն: Յզփ՟ս որոյ առ սէրն քի՟ կարի՛ հեշտալի էր նոցա լսել զայսքան ասացեալս զնմանէ. զի այնքա՟ քաղցրացան բանքն 'ի լսելիս նց՟, մինչ զի ոչ կամէին թէ բնաւ դադարեսցէ 'ի խօսելոյ ընդ նոսա վասն այսպիսի իրաց:
Եւ՟ արդարև այս են կիրք բնութես յորժամ հանդիպի յատելութէ կամ 'ի սիրոյ լինիլ. զի 'ի լսել զբանս բարիս՝ յոյժ ախորժելի են բարեկամաց. իսկ որք 'ի թշնամութենէ հանդիպին լինիլ՝ կարի՛ դժպատեհ. յորմէ ախորժելի է 'ի բաց դառնալն: զոր յայտնապ

Պւլ՛իդ

կրեցին առաջնորդք ժողովրդեանն առ նոյն ինքն տրն մեր, և յետ այնորիկ առ քարոզս մծուն նորա:
Ըստ առաքելոյն, որով ամբաստան լինի ընդ նոցանէ յասելն, որք և զտր՟ յս՟ ըսպանին՝ և զմարգարէսն և զմեզ հալածեցին, և այ՟ մարդկան փրկութե հակառակ եղեն: 1 Թես. 2. 15:
Արդ այսպ՟ հակառակօքն յօրանեան երկոքեան սոքա:
Ուստի և աշ՟ հեշտալի էր լսել զայս. յորմէ զօտարթացեալ կամէին յար ընդ նմա լինիլ և լսել զնոյն բանս: Այ՟ բռնաբարէին զնա և ասէին,
29 Առ մեզ ագիր, զի ընդ երեկս է և տարաժամեալ է օրս:
Զայս արարին և հրեշտակքն 'ի սոդոմ. զի յայտնեսցեն զօտարսիրութի առ դարոյն ղովտայ: ասեն, 'ի քաղաքամիջի աստ ագցուք: և բռնադատեաց զնս այրն ղովտ մինչև հաւանեցոյց զնս մտանել 'ի տուն իւր:

ցնն 19.2։ Ըստ նմին և աստ
տրն հրաժարէ ՚ի նոցանէ
զի յայտնեսցի սէր արանցն
արդարոց առնա և ՚ի բ·ման
զոր խօսի ընդ նմ։ Նորին
աղագաւ և նոքա բանա
դատեն. և նա հաւանի։
29 Եմուտ ա՟է ագանիլ
ընդ նմ։ Այլ եղև ՚ի բազ
մին նր ընդ նմ, առեալ
զհացն՝ օրհնեաց՝ եբեկ և
ետ նց։ Այլ նոցա բացան
աչք և ծանեան զնա. և
նա եղև ՚ի նոցանէ ան
երևոյթ։
Ելից զցանկութիւն նց
որք սիրով բանադատեցին
զնա և եմուտ ընդ նոսա։
Նոքա պատիւ արարեալ
նմա վս բանիցն զոր լուան
՚ի նմանէ՝ տան ՚ի ձեռս նր
զհացն օրհնել և բեկանել։
Իսկ նա այսչափ հաճեալ
զմիտս նց, և ապա զի ոչ էր
օրէն յարաժամ լինիլ ընդ
նոսա՝ եղև ՚ի նոցանէ ան
երևոյթ։ Վասն զի տնօ
րինականացն կատարելոյ՝
թէպէտ և վս ստուգութե
յարութեն երևէր նոցա,
Պըլ ինդ

սակայն մծաբար որքան
բաւէին՝ տալ ճանաչել
և գիտել թէ նա իցէ. զի
վկայ լիցին առ ամենեսեն
մահուն նորա զոր կրեաց
մարդկաբար և յարութեն
զոր յարեաւ մծապէս։
Այլ արդ այսչափ եղեալ
ը՟ նմ խօսեցաւ ծածկեալ
զինքն ՚ի նոցանէ. և յորժմ
ծանեայց զինքն, յայնժամ
յափշտակեաց զանձն իւր
յաչաց նց։ Միենոյն տնօ
րինականքն նր այսպիսիք
են. զի որք մծ գիտացին
զնա որպէս սիմէոն և յով
հաննէս՝ ըստ բաղձանացն
փոքր ինչ վայրկեան արժա
նացան տեսանել զնա.
սակայն հանապազորդել
առ նա ոչ զօրէին։ բայց
որք իբրև զմարդ տեսա
նէին զնա, համարձակ մեր
ձենային առ նա։ Նորին
աղագաւ ասաց, եկեսցեն
աւուրք ցանկանալոյ ձեզ
մի յաւուրցն որդւոյ մար
դոյ տեսանել։ ղու 17.22։
Արդ ՚ի կատարիլ տնօրի
նականացն՝ այնուհետև
նց մծ

ած ցուցաւ ամենեցուն.
և նորին աղագաւ երևել
փոքր ինչ ծանուցանէր
զանձն. ըստ որում և մար
գարէիցն: և դրձ՟լ ամփո
փեալ անյայտութբ՟ ծած
կէր զանձն ՚ի տեսանելեացն:
որպ՟ և աստ ՚ի յայտնել նց՟
թէ ո՞վ իցէ՝ առժամայն
ծածկեցաւ:
32 Եւ ասեն ցմիմեանս,
ո՞չ իսկ և սիրտք մեր ջերմ
լէին ՚ի մեզ մինչ խօսէր ը՟
մեզ զճանապարհայն. և ո՞պ
բանայր մեզ գիրս:
Այս կերպ՝ բազմաց պա
տահի բնութեան՝ ազ
դումն ունել հեշտալեաց
ինչ կամ տրտմական կրից
յառաջիկայսն խառնեալ:
Եւ զինչ այն թէ՝ ջրմլէին
սիրտք նց՟: Ուր զի այն-
պիսի ոք խօսէր ընդ նոսա
որ կարի՛ յոյժ բաղձալին էր
նց՟ և վս՟ որոյ բանքն իսկ
էին. և նա ինքն անգիտելի
նց՟ խօսէր ընդ նս՟. յորոյ
բանից և ջմլէին սիրտք նց՟
Եւ յորժամ էր ընդ նս՟՝
ո՞չ յայտնէին զայս առ մի-

միանս. այլ միայն նր՟ բա-
նիցն ուշ ունէին: Իսկ ՚ի
մեկնիլն ՚ի նոցանէ՝ խոստո
վանէին զկիրս որով խան
դաղատէին սիրտք նց՟ ՚ի
բանից անտի նր՟ զոր խօսէր
ընդ նս՟ ՚ի բանալ զգիրս:
Վս՟րոյ և ո՛չ բերեն ան-
դէն ագանիլ յորում էին,
այլ յարուցեալ նոյն ժա-
մայն դարձան յէմ՟. և
գան գտանեն ժողովեալ
զմետասանսն և զայլսն որ
էին ընդ նս՟: Արդ սոքա
վս՟ մեծի խնդութեանն
ո՛չ կալան յոյժ մնալ ՚ի նը
մին. այլ փութացան տալ
աւետիս առաքելոցն. և ՚ի
գտանելն զնոսա զոր կար
ծէին տալ՝ ընկալան. վս՟ զի
յառաջէն ասեն, արդարև
յարեաւ տր՟ և երևեցաւ
սիմոնի: Եւ նք՟ առնուն
՚ի պատմել զայն ինչ որ ՚ի
ճանապարհի անդ խօսեցաւ
ը՟ նս՟ ՚ի բանալ նց՟ զբանս
մրգրէիցն. զոր կանխեցին
վս՟ տր՟: և զայն զի ՚ի հա
ղորդիլն ընդ նս՟ հացին՝
ծանեան զնա:

